


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

Նոյեմբեր 11 Երևան 1967

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11 ՆՈՅԵՄԲԵՐ . 1967

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

## Содержание





# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՄԵԾԱԳՈՒՅՆԸ

Սովետական հասարակարգը բոլորեց իր կեսդարյա գոյությունը: 50 տարի առաջ, երբ լեգենդար «Ավրորայի» համազարկերը ավետեցին նոր, սոցիալիստական դարաշրջանի արշալույսը, աշխարհի այն ժամանակվա կառավարողները չէին էլ պատկերացնում, որ սոցիալիզմի նորածիլ բողբոջը կարող է աճել, հասակ առնել և խոր արմատներ գցել երկրագնդի վիթխարի տարածություններում: Նոր հասարակարգի թշնամիները Հոկտեմբերյան հեղափոխությունը համարում էին պայօրինի կավակ և արին ամեն ինչ նրան խեղդամահ անելու համար:

Բայց խորտակվեցին նրանց ջանքերը: Կյանքը ցույց տվեց, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ոչ միայն պատմական մի վրիպում չէր կամ ռուսական մի «էքսպերիմենտ», այլ հանդիսացավ այն *մայրուղին*, որով ընթանում են արդեն շատ ժողովուրդներ և առաջ կընթանա համայն մարդկությունը:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից դեռևս շատ առաջ, պրոլետարիատի մեծ առաջնորդներ՝ Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը բացահայտելով կապիտալիզմի սուր հակասությունները, ապացուցեցին շահագործողական կարգերի կործանման և սոցիալիստական հասարակարգի հաղթանակի անխուսափելիությունը, ցույց տվին պրոլետարիատի համաշխարհային-պատմական դերը սոցիալիզմի համար մղվող պայքարում: Գիտական սոցիալիզմի տեսությունը հզոր լուսարձակի նման լուսավորեց բանվոր դասակարգի պայքարի ուղին, գաղափարապես զինեց նրան: Գիտական սոցիալիզմը դարձավ առաջավոր պրոլետարների հավատո հանգանակը, նրանց խոր, անխախտ համոզմունքը:

Ահա թե սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիության մասին իրենց առաջին, անլեգալ ձեռագիր «Բանվոր» թերթում, 1901 թվականի հունվարին ինչ էին գրում Ռուսաստանի բանվոր դասակարգի մարտնչող ջոկատներից մեկը ներկայացնող հայ բանվորները:

«Նա, բանվոր ժողովուրդը համոզված է, որ այս դարում պետք է իրագործվի նրա սրտի անկեղծ փափագը, նրա փրկությունը, նրա ապատությունը,

մի խոսքով նրա իդեալը... Այս XX դարում նա կհասնի վերջնական հաղթանակի, ոչնչացնելով մասնավոր սեփականատիրությունը, հանրայնացնելով մեքենաները, գործարանները, շինությունները: «...դա երազ չէ, այլ անհրաժեշտություն, կարիք, որ պետք է այս դարում իրականանա: Դա մեր բանվորների ցանկություններն են և ձգտումները: Թող խղճուկ հոգու տեր մարդիկ և կարճամիտ պարապիտները համարեն այդ ֆանտազիա և անհնարին բան: Կյանքն ունի իր ընթացքը և առանց կանգ առնելու ընթանում է այդ ուղիով»:

XX դարում սոցիալիզմի անպայման հաղթանակի վերաբերյալ բանվորների այս հաստատ համոզմունքն ուներ ռեալ հող, բխում էր դասակարգային պայքարի այն իրադրությունից, որ առանձնակի սրությամբ դրսևորվում էր ցարական Ռուսաստանում:

Այստեղ XX դարի սկզբին իրապես ստեղծվեցին սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ պայմաններ և սուբյեկտիվ նախադրյալներ: Ռուսաստանը դարձավ համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը, այստեղ կազմավորվեց բոլշևիկների հետևողական հեղափոխական կուսակցությունը, որը հանճարեղ Լենինի ղեկավարությամբ պրոլետարիատին մարտի տարավ իշխանությունը նվաճելու համար:

Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանի պրոլետարիատի, նրա ավանգարդի՝ բոլշևիկյան կուսակցության մեծագույն սխրագործությունն էր: Շահագործողների դարավոր իշխանությունը տապալելու համար պրոլետարիատի հետ միասին ոտքի ելան աշխատավորական մեծ զանգվածներ: Այդ տեսակետից հոկտեմբերյան հեղափոխությունը լինելով իր բովանդակությամբ պրոլետարական, խորապես ժողովրդական հեղափոխություն էր: Բոլշևիկների կուսակցությունը մեծ Լենինի գլխավորությամբ պատմության մեջ առաջին անգամ մշակեց և կիրառեց այնպիսի հանճարեղ ստրատեգիա և տակտիկա, որն ապահովեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում և տիպար հանդիսացավ մյուս երկրների մարքսիստական-լենինյան կուսակցությունների համար:

«Բոլշևիկյան կուսակցությունը,—ասված է ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— հենվելով բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վրա, կարողացավ միավորել և միասնական նպատակի ուղղել հեղափոխական տարբեր հոսանքները՝ բանվոր դասակարգի սոցիալիստական շարժումը բուրժուազիայի տապալման համար, գյուղացիության հեղափոխական պայքարը ընդդեմ կալվածատերերի, ազգային-ազատագրական շարժումը հանուն ժողովուրդների իրավահավասարության, խաղաղության և իմպերիալիստական արյունահեղ պատերազմը դադարեցնելու համաժողովրդական պահանջը: Դրա շնորհիվ Հոկտեմբերյան հեղափոխությունը հիմնական սոցիալիստական խնդիրների հետ մեկտեղ արմատապես լուծեց դեմոկրատական զարգացման անհետաձգելի խնդիրները, դրանով իսկ ցուցադրվեց ժողովրդի ամենալայն համադեմոկրատական շարժման հետ բանվոր դասակարգի սոցիալիստական շարժումը համախմբելու, դեմոկրատիայի համար պայքարի հետ սոցիալիզմի համար մղվող պայքարը միացնելու ոչ միայն հնարավորությունը, այլև անհրաժեշտությունը»:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով պատմության մեջ առաջին անգամ վերջ տրվեց շահագործողների տիրապետությանը աշխարհի ամենամեծ երկրներից մեկում, իշխանությունն անցավ բանվորների ու գյուղացիների ձեռքը, հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծվեց պետության նոր տիպ, աշխարհում ամենադեմոկրատական, ամե-



նաարդարացի սովետական պետությունը: Հոկտեմբերյան հեղափոխության նշանակությունը դուրս եկավ մեր երկրի սահմաններից: Նա հիմնովին փոխեց մարդկության պատմության ընթացքը, համաշխարհային մասշտաբով սկիզբ դրեց կապիտալիստական սիստեմի խորտակմանը և նոր, սոցիալիստական սիստեմի հաղթանակին, ժողովուրդների սոցիալական ու ազգային-ազատագրությանը:

Այժմ, 50 տարուց հետո, երբ մենք նայում ենք աշխարհի քարտեզին, ավելի ակնառու է դառնում Հոկտեմբերյան հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունը: Ինչքա՜ն է փոխվել աշխարհի քաղաքական-սոցիալական պատկերը, ինչքա՜ն ժողովուրդներ են ազատագրվել արդեն կապիտալիզմի լծից, ազգային-գաղութային շահագործումից և բռնել ինքնուրույն զարգացման ուղին:

Ահա թե ինչու սովետական ողջ ժողովրդի հետ միասին սոցիալիստական երկրների աշխատավորները, աշխարհի բոլոր հեղափոխական և առաջադիմական ուժերը բացառիկ ոգևորությամբ ու ցնծությամբ նշում են Հոկտեմբերի պանծալի 50-ամյակը, որպես իրենց ամենահարազատ, ամենաթանկագին տոնը: Հոկտեմբերի 50-ամյակը կոմունիզմի հաղթանակի, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության վեհ գաղափարների հաղթանակի տոնն է:

Սովետական ժողովուրդը օրինական հպարտության զգացումով այսօր ամփոփում է կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ 50 տարվա ընթացքում իր անցած ուղու մեծ ու փառահեղ արդյունքները: Սովետական ժողովրդի հեղափոխական, վերափոխիչ գործունեության գլխավոր արդյունքն այն է, որ իրագործված է մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը: Դա համաշխարհային-պատմական այնպիսի մեծ նվաճում է, որ ամրապնդում է բոլոր նրանց հավատը իրենց վաղվա հաղթանակի նկատմամբ, ովքեր պայքարում են իմպերիալիզմի դեմ հանուն սոցիալական վերափոխումների:

Հաղթահարելով արտաքին ու ներքին շատ դժվարություններ, աշխատավորների հերոսական ջանքերով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ՍՍՀՄ-ում սեղմ ժամկետներում իրագործվեցին սոցիալ-տնտեսական խոշոր վերափոխություններ՝ սոցիալիստական ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում, կուլտուրական հեղափոխություն, որոնք մեր երկիրը դարձրին տնտեսապես ու կուլտուրապես առաջավոր տերություն, կանգնեցրին ժամանակակից քաղաքակրթության բարձրագույն դիրքերում: Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ մեր երկրում ընդմիշտ վերացվեց մարդու կողմից մարդու շահագործումը, հաստատվեց հասարակության բարոյա-քաղաքական այնպիսի միասնություն, ժողովուրդների այնպիսի բարեկամություն, որոնք դիմացան պատմության ահեղ փորձություններին: Ո՛չ կապիտալիստական 14 պետությունների զինված ինտերվենցիան 1918—1920 թթ., ո՛չ նրանց դավերը խաղաղ տարիներին, ո՛չ մինչ ատամները զինված ֆաշիստական հորդաների հարձակումը 1941—1945 թթ. չկարողացան սասանել սովետական հասարակարգի հիմքերը, ետ խլել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումները: Հոկտեմբերյան հեղափոխությամբ ծնված սովետական կարգերը ցույց տվին իրենց կենսունակությունը բոլոր ասպարեզներում: Նրանք մեր ժողովրդին բերին ո՛չ միայն քաղաքական ազատություն, վերացրին շահագործումը և ամեն տեսակ ճնշումները, այլև բերին նրանց նյութական բարեկե-

ցություն, կուլտուրական վերելք, նրա մտավոր ու հոգեկան ուժերի չտեսնված ծաղկում:

Սոցիալիզմը արմատապես փոխեց արտադրության նպատակը: Նյութական ու հոգևոր կուլտուրայի բոլոր նվաճումները ծառայում են աշխատավոր մարդկանց: Կապիտալիզմի այնպիսի անխուսափելի ուղեկիցներ, ինչպիսիք են գործազրկությունը, մասսաների աճող աղքատությունը, քաղցը վաղուց վերացված են մեր երկրում: Սովետական մարդիկ ազատված են վաղվա օրվա նկատմամբ տածվող սարսափից, որը ճնշում, ահաբեկում է միլիոնավոր մարդկանց կապիտալի երկրներում: Փոխված է աշխատանքի բնույթը ՍՍՀՄ-ում: Ազատագրված աշխատանքը իրոք ապահովում է անհատի իսկական ազատությունը, որն անհնար է եղել անցյալ հասարակարգերում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը բարեհաջող լուծեց մի այնպիսի կնճռոտ և մարդկությանը տանջող հարց, ինչպիսին է ազգային հարցը: Հեղափոխությունն ազատություն բերեց Ռուսաստանի՝ նախկինում ճնշված բոլոր ազգերին և ժողովուրդներին, նրանց տվեց պետականություն, ազգային վերածննդի հնարավորություն: Սոցիալիստական շինարարության պրոցեսում իրագործվեց ազգային հարցի լենինյան ծրագիրը, հաստատվեց մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների սոցիալիստական եղբայրությունը, նրանց բազմակողմանի համագործակցությունը:

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որն ապահովում է սոցիալիստական ազգերի անկախությունը և բազմակողմանի զարգացումը, նրանց համագործակցությունը, աշխարհի բոլոր ժողովուրդների վաղվա եղբայրության ու դաշինքի տիպար է հանդիսանում:

ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ, կարճ ժամանակամիջոցում հաղթահարեցին իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը: Հանրապետություններում բուռն թափով զարգացան արտադրողական ուժերը, ստեղծվեց արդյունաբերություն, զարգացավ սոցիալիստական գյուղատնտեսությունը, աճեցին բազմահազար կադրեր տնտեսության բոլոր ճյուղերի համար, ծաղկեց սովետական ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Սոցիալիզմն ապահովեց մեր երկրի բոլոր ժողովուրդների փաստական հավասարություն՝ քաղաքական, տնտեսական, կուլտուրական տեսակետներից: Տնտեսական ու կուլտուրական համագործակցությունը, փոխադարձ օգնությունը, առանձնապես ռուս մեծ ժողովրդի կողմից հանրապետություններին ցույց տրված մեծ օգնությունը, լավագույն պայմաններ ստեղծեցին արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի արագ, պլանաչափ զարգացման համար բոլոր հանրապետություններում:

Սովետական պետության սոցիալիստական շինարարության փորձը ցույց տվեց, որ այն ժողովուրդները, որոնք հեղափոխությունից առաջ գտնվում էին ֆեոդալական և նույնիսկ նահապետական-տոհմատիրական հասարակարգի փուլում, սովետական հանրապետությունների միության սիստեմում անցան սոցիալիզմի փուլը, շրջանցելով կապիտալիզմը:

Թե ինչպիսի ազատարար, կենսատու նշանակություն ունեցավ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը ճնշված ժողովուրդների համար, դրա վառ օրինակ կարող է ծառայել Սովետական Հայաստանը, բազմադարյան պատմություն ունեցող հայ ժողովուրդը: Հոկտեմբերյան հեղափոխության, սովետական իշխանության հաղթանակի շնորհիվ հայ ժողովուրդը կարողացավ



փրկվել ֆիզիկական ոչնչացումից, որի առաջ նա կանգնած էր դեպքերի բերումով, կերտել նոր, սոցիալիստական, իսկական հայրենիք, հասնել ազգային վերածնության, նյութական ու կուլտուրական բարձր մակարդակի:

Նախկինում տնտեսապես հետամնաց, Ռուսաստանի ագրարային ծայրամասը ներկայացնող Հայաստանը դարձել է ժամանակակից բարձր զարգացած սոցիալիստական հանրապետություն: Հատկանշական է, որ այսօր Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի մակարդակը գերազանցում է 120 անգամ: Սովետական Հայաստանի էկոնոմիկան ու կուլտուրան այնքան են առաջադիմել, որ նրանք այժմ կարող են համեմատվել այնպիսի հին, բարձր զարգացած կապիտալիստական երկրների հետ, ինչպիսիք են ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան և այլն: Այդ համեմատությունները շատ ուղղություններով խոսում են ի նպաստ Հայաստանի, ցույց տալիս սոցիալիստական սիստեմի առավելությունը, լենինյան ազգային քաղաքականության կենսագործման բարերար արդյունքները: Բավական է նշել, որ Սովետական Հայաստանի արդյունաբերության արտադրանքի բազմաթիվ տեսակներ, դրանց թվում ժամանակակից տեխնիկայի մակարդակին պատշաճ մեքենաներ ու սարքեր, արտահանվում են սոցիալիստական և կապիտալիստական տասնյակ երկրներ:

Ժողովրդական տնտեսության բուռն զարգացման հետ միասին Հայաստանում տեղի ունեցավ կուլտուրայի մեծ վերելք: Այժմ Հայաստանի բնակչությունը ոչ միայն համատարած գրագետ է, այլև նրա կեսից ավելին ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն: Բարձր տեմպերով աճում է բարձրագույն կրթություն ստացողների թիվը: Եթե 1921 թվականին բարձրագույն կրթություն էին ստանում 400 հոգի, 1950 թվականին՝ 15000, 1960 թվականին՝ 20000, ապա այժմ՝ 48000 հոգի: Ընթացիկ հնգամյակի վերջում հանրապետության բուհերի ուսանողների թիվը կհասնի 50 հազարի: Բուռն ծաղկում ապրեցին Հայաստանում գիտությունը, արվեստն ու գրականությունը: Արվեստի ու գիտության շատ նվաճումներ համաշխարհային ճանաչման են արժանացել:

Սովետական Հայաստանը հայ ժողովրդի դարերով տենչած իսկական հայրենիքն է, ուր առկա են նրա զարգացման ու առաջադիմության բոլոր պայմանները, ուր ամենքի համար լայն հնարավորություններ կան լիակատար կերպով դրսևորելու իրենց ունակությունները էկոնոմիկայի ու հոգևոր կուլտուրայի ցանկացած ասպարեզում:

Ոչ միայն սովետական Հայաստանի, այլև աշխարհի շատ երկրներում ապրող հայ ժողովրդի հատվածների հսկայական մեծամասնությունը Սովետական Հայաստանի մեջ են տեսնում իրենց ազգային գոյության ապագան, գիտակցում և հիանում նրա նվաճումներով, իրավացիորեն դրանք համարելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության արգասիքը: Հոկտեմբերը հնարավորություն տվեց աշխարհով մեկ սփռված հայ ժողովրդի զավակներին համախմբվել իրենց հարազատ, ճնշողներից ձերբազատված սովետական հայրենիքում, ակտիվորեն մասնակցել նրա վերաշինման ու զարգացման գործին:

Ահա թե ինչու այսօր ամբողջ հայ ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ փառաբանում է Հոկտեմբերյան մեծ հեղափոխության, սովետական հասարակարգի փառապանծ 50-ամյակը, վառ կերպով դրսևորելով իր հավատարմությունը Հոկտեմբերի ազատարար գաղափարներին, իր նվիրվածությունը կոմունիզմի դրոշին:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում մեծագույն խթան հանդիսացան համաշխարհային հեղափոխական պրոցեսի, ազգային ազատագրական շարժումների զարգացմանը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում կատարվեցին սոցիալիստական հեղափոխություններ: Դուրս գալով կապիտալիզմի սիստեմից, այդ երկրները բռնեցին սոցիալիզմի ուղին: Կազմվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որի առաջանալը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո պատմական մեծագույն իրադարձություն է: Այդ լիովին ապացուցեց, որ սոցիալիստական հեղափոխությունները պատմականորեն անխուսափելի և անհրաժեշտ պրոցես են:

Այժմ համաշխարհային զարգացման ընթացքը որոշում են սոցիալիստական սիստեմը, իմպերիալիզմի դեմ սոցիալիզմի համար մարտնչող ուժերը:

Հոկտեմբերյան հեղափոխությունից սկսված աշխարհի հեղափոխական նորացման գործն անհաղթահարելի ուժով առաջ է գնում: Ներկայումս սոցիալիստական սիստեմը ընդգրկում է երկրագնդի տարածության մեկ քառորդը, որի վրա բնակվում է մարդկության 35 տոկոսը:

Մեծ հոկտեմբերը ուժգին հարված հասցրեց իմպերիալիզմի գաղութային տիրապետությանը: Լայն թափ ստացավ ազգային-ազատագրական շարժումը, որի համար հուսալի հենարան և օրինակ հանդիսացավ սովետական բազմազգ պետությունը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմպերիալիզմի ընդհանուր թուլացման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման, բանվորական ու դեմոկրատական շարժման հզոր վերելքի պայմաններում հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական հեղափոխությունների հարվածների տակ քայքայվեց ժողովուրդների ճնշման գաղութային ամոթալի սիստեմը: Կազմվեցին ավելի քան 70 անկախ ազգային պետություններ: Մեկ և կես միլիարդ մարդ ազատվեց գաղութային ստրկությունից և ձեռք բերեց ազգային անկախություն: Եթե 1919 թվականին երկրագնդի տարածության 72 տոկոսը գաղութային, կիսագաղութային ու դոմինիոն երկրներ էին, իսկ նրանց բնակչությունը աշխարհի բնակչության 69 տոկոսից ավելին էր կազմում, ապա մեր օրերում աշխարհի ամբողջ տարածության արդեն 4 տոկոսն է, որ գտնվում է դեռևս գաղութային կախման վիճակում, իսկ այդ երկրների բնակչությունը երկրագնդի ամբողջ բնակչության 1,1 տոկոսն է կազմում միայն:

Սովետական Միությունը, սոցիալիստական սիստեմի երկրները ամեն կերպ օգնում են գաղութային լծից ազատագրված ժողովուրդներին՝ ամրապնդելու իրենց անկախությունը իմպերիալիզմի ոտնձգություններից և ընթանալու հասարակական առաջադեմ ուղիով: Բնորոշ է, որ գաղութային ճնշումից ազատագրված մի շարք երկրների հեղափոխական դեմոկրատական ուժերը, կապվելով միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման հետ, իրենց երկրների զարգացումը տանում են ոչ-կապիտալիստական ուղիով, իրագործում են սոցիալական կարևոր վերափոխություններ:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո է՛լ ավելի ամրապնդվեցին ու հզորացան սոցիալիզմի համար պայքարող ուժերը ամբողջ աշխարհում: Միջազգային բանվոր դասակարգը, սոցիալիզմի առաջամարտիկը, ունենալով այնպիսի հզոր հենարան, ինչպիսին է Սովետական Միությունը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ավելի ու ավելի ուժգին հարված են հասցնում կապիտալիզմին, ավելի ու ավելի ազդեցիկ դեր են կատարում արդի



դարաշրջանի կարևորագույն պրոբլեմների լուծման գործում: Բանվոր դասակարգի գլխավորությամբ գնալով աճում և ամրապնդվում են հակամոնոպոլիստական միասնական ճակատը, բանվոր դասակարգի քաղաքական և տնտեսական պայքարի ղեկավար կազմակերպությունները:

Հոկտեմբերյան հեղափոխությունը և Լենինի նախաձեռնությամբ հիմնված *III* կոմունիստական ինտերնացիոնալը հսկայական դեր խաղացին կոմունիստական կուսակցությունների ստեղծման գործում. դրանից հետո կոմունիստական շարժումը վերածվեց իրավի համաշխարհային շարժման: Բոլոր երկրներում, որտեղ կա բանվոր դասակարգ, այժմ գոյություն ունեն կոմունիստական կուսակցություններ: Սովետական երկրի զարգացման 50-ամյա արդյունքները, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարի համաշխարհային փորձը ցույց են տալիս, որ առանց մարքսիստական-լենինյան տեսությամբ զինված կոմունիստական կուսակցության անհնարին կլիներ հեղափոխության հաղթանակը և սոցիալիզմի կառուցումը: Համաշխարհային կոմունիստական շարժումը հզոր ուժ է դարձել և մեծ հաջողությունների է հասել շնորհիվ իր շարքերի ինտերնացիոնալ միասնության, որը կոփվել ու ամրապնդվել է իմպերիալիզմի, ռևիզիոնիզմի և աղանդավորության, բուրժուական նացիոնալիզմի դեմ մղած պայքարում: Միջազգային կոմունիստական շարժման ամենահրատապ խնդիրն այսօր էլ նրա միասնության ապահովումն է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն անդուլ և հետևողականորեն պաշտպանում է միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդման գործը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գաղափարները օրեցօր ավելի շատ ու շատ աշխատավորներ են գրավում դեպի իրենց, քանի որ այդ գաղափարներն արտահայտում են աշխատավոր մարդկության բուռն ձգտումները, նրանց շահերն ու տենչանքները: Աշխատավոր մասսաները, բանվոր դասակարգն իրենց ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների գլխավորությամբ ավելի ու ավելի խոր ու ակտիվ կերպով են ներգործում միջազգային քաղաքական հարցերի լուծման վրա, սանձահարում իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին, հերոսաբար պաշտպանում խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի գործը, թույլ չտալով իմպերիալիստներին մարդկությանը ներքաշելու համաշխարհային պատերազմի հորձանուտի մեջ, հանգցնելու ԱՄՆ-ի կողմից սանձազերծած պատերազմը Վիետնամում և այլ երկրներում:

Սովետական հասարակությունը Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակը նշում է կոմունիստական հասարակարգի կառուցման աշխատանքի բուռն ծավալման պայմաններում: Կոմունիզմի կառուցումը մեր ժողովրդի ամենավեհ պատմական խնդիրն է: Հանուն դրա նա կատարեց հեղափոխություն, անձնազոհաբար կռվեց ներքին և արտաքին թշնամիների դեմ: Սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում ստեղծեց բոլոր նախադրյալները ձեռնամուխ լինելու կոմունիստական հասարակարգի կառուցմանը:

Կոմունիստական շինարարության հիմնական ուղղությունները սահմանված են ՍՄԿԿ ծրագրում, որն ընդունվեց XXII համագումարում: Այդ ուղղություններն են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը, նոր մարդու դաստիարակումը:

Կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդի ֆիզիկական ու հոգևոր բոլոր ուժերը գործադրում է կոմունիստական հասարակարգի կառուց-

ման գիտականորեն մշակված ծրագրի կենսագործման վրա: Կուսակցությունը մոբիլիզացնելով աշխատավորների ջանքերը, լուծում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հիմնական գլխավոր խնդիրները՝ ստեղծելու համապատասխան նյութատեխնիկական բազա, կգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, զարգացնելու գիտությունն ու տեխնիկան, ապահովելու նյութական ու հոգևոր բարիքների առատությունը, անընդհատ բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը, վերացնելու քաղաքի ու գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունները, կատարելագործելու սոցիալիզմի դեմոկրատական սկզբունքները, դաստիարակելու աշխատավորներին կոմունիստական բարձր գիտակցականության ոգով, ավելի ամրապնդելու ՍՍՀՄ պաշտպանական հզորությունը: Չի կարող լինել որևէ կասկած, որ սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության իմաստ ղեկավարությամբ կկենսագործի կոմունիզմի կառուցման մարքս-լենինյան ծրագիրը:

Սովետական երկիրը թևակոխում է իր զարգացման հաջորդ 50-ամյակը՝ հաստատակամորեն կանգնած ժամանակակից քաղաքակրթության ամենաբարձր պատվանդանին: Նա հզոր է և վստահ իր ապագայով: Հոկտեմբերյան հեղափոխության վառած ջահը լուսավորում է նրա ուղին: Նոր սերունդներն առաջ կտանեն այդ ջահը, որպեսզի այն լուսավորի աշխարհի բոլոր ժողովուրդների դեպի սոցիալիզմ տանող ուղիները:

Մեր երկրում հաղթանակած սոցիալիզմի վեհ գաղափարների անմիջական ազդեցության ներքո աշխարհի բոլոր կողմերում արմատավորվեցին Լենինի ղեկավարած աշխարհաշեն գործի կենարար սկզբունքները: Ասիայում թե Եվրոպայում, Լատինական Ամերիկայում թե ԱՄՆ-ում կամ Ավստրալիայում, ամենուր ստվարանում ու կոփվում են հոկտեմբերի գործին նվիրված կեղեքվող միլիոնավոր կանգվածների շարքերը:

Հոկտեմբերը կյանքի կոչելով աշխարհի բոլոր ճնշվածներին, մեկընդմիշտ ապացուցեց, որ միայն սոցիալիզմն է ի վիճակի անարգել առաջ մղելու մարդկային ստեղծարար ձիրքն ու տաղանդը, ժողովրդի անսպառ էներգիան ի սպաս դնելու հանուն իր իսկ բարօրությանը:

Փառապանծ Հոկտեմբերի այս 50-ամյակը սովետական ժողովրդին, միջազգային պրոլետարիատին, առաջավոր մարդկությանը բերեց մեծագույն հաղթանակներ: Նոր հիսնամյակը կդառնա է՛լ ավելի մեծ ու պայծառ հաղթանակների ժամանակաշրջան, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների, կոմունիզմի գործի նոր հաղթանակների ժամանակաշրջան:



# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՐԿԱԹՅԱ ՕՐԵՆՔՈՎ

ՌԱՖԻԿ ՄՈՎՍԻՍՅԱՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՍԻՐՏՆ ու ՈԳԻՆ

### 1. ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐԸ, ՀԱԿԱՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՐԸ

*Փետրվարյան հեղափոխության հաղթությամբ դասակարգային ուժերի նոր տեղաշարժեր առաջացան Ռուսաստանում: Կոմունիստական կուսակցության հրատապ խնդիրներից էին տեղաշարժերի, հակահեղափոխության և հեղափոխության ուժերի ճիշտ գնահատումը, նրանց նկատմամբ գիտականորեն հիմնավորված տակտիկայի ու քաղաքականության մշակումը: Կուսակցությունը Լենինի գլխավորությամբ մեծագույն հաջողությամբ և զարմանալի արագությամբ լուծեց այդ հարցը: Փետրվարից հետո ամբողջ երկրում հեղափոխության հետագա ծավալման և խորացման դեմ իրենց ուժերը կոնսոլիդացրին երեք հոսանքներ. ազնվական-կալվածատիրական, լիբերալ-բուրժուական՝ օկտյաբրիստների ու կադետների գլխավորությամբ և մանր-բուրժուական դեմոկրատիան՝ մենշևիկների և էսեռների գլխավորությամբ:*

*Քաղաքական այդ կուսակցությունները, կատարված հեղափոխությունն իր բնույթով և շարժիչ ուժերով համարելով բուրժուական և ավարտված, լիովին օրինաչափ էին համարում իշխանության անցումը բուրժուազիայի ձեռքը: Նրանց քաղաքականության էությունը համաձայնողականությունն էր հակահեղափոխական բուրժուազիայի նկատմամբ, նրանց հետ իշխանության բաժանման ձգտումը: Օգտվելով գյուղացիության և բանվոր դասակարգի ոչ-գիտակից շրջանների վրա ունեցած հսկայական ազդեցությունից, նրանք այդ դասակարգերից պահանջում էին պաշտպանել և օժանդակել ժամանակավոր*

կառավարությանը։ Մանրբուրժուական դեմոկրատիան հակահեղափոխական բուրժուազիայի վերաբերմամբ դարձավ այնպիսի «նորին մեծության օպոզիցիա», ինչպիսին միապետության հանդեպ կադետներն էին։

Ռուսական հեղափոխությունն ուներ նաև իր արտաքին կատաղի թշնամին։ Դա միջազգային բուրժուազիան էր և ամենից առաջ անգլո-ֆրանսիական մոնոպոլիստական կապիտալը, որը միջոցներ և ջանքեր չէր խնայում՝ աջակցելու ռուսական բուրժուազիային, վերջինիս իշխանությունն ամրապնդելու, հեղափոխության հետագա խորացումն ու տարածումը կասեցնելու, Ռուսաստանի մասնակցությունը պատերազմին մինչև հաղթական վախճանն ապահովելու համար։

Ելնելով հակահեղափոխության ու ռեակցիայի ուժերի դասակարգային նպատակների և քաղաքականության այդ բացահայտումից, բոլշևիկյան կուսակցությունը մշակեց միակ ճիշտ տակտիկա նրանց նկատմամբ, որը ժողովրդական լայն մասսաներին սոցիալիստական հեղափոխության համար պայքարի հանելու գլխավոր երաշխիքներից մեկն էր։

Կուսակցության առաջ կանգնած տակտիկական գլխավոր հարցերից մեկը՝ ժամանակավոր կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքն էր։ Այդ հարցում սկզբնական շրջանում ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն ու կուսակցության ղեկավար գործիչներն էին կանգնած ճիշտ դիրքի վրա։ Որոշ կոմիտեներ և կուսակցության գործիչներ առաջ քաշեցին ժամանակավոր կառավարության նկատմամբ «մասսաների վերահսկողություն» սահմանելու լոզունգը։ Դա ոչ միայն սխալ, այլև վտանգավոր էր, որովհետև այդ նշանակում էր համաձայնվել իշխանությունը բուրժուազիայի ձեռքին մնալու հետ և մասսաների մեջ տարածել այն պատրանքը, թե ժամանակավոր կառավարությունը կարող է գործել հօգուտ հեղափոխության։

Սխալ և վտանգավոր էր նաև կուսակցության այն անդամների տեսակետը, որոնք առաջարկում էին անհապաղ տապալել ժամանակավոր կառավարությունը։ Պատասխանելով այդպիսի հարցադրումներին, իր Երկիշխանության մասին հոդվածում (ապրիլի 9-ին) Լենինը գրել է. «1) Նրան պետք է տապալել, որովհետև նա օլիգարխիական է, բուրժուական և ոչ համաժողովրդական, նա չի կարող տալ ո՛չ խաղաղություն, ո՛չ հաց և ոչ էլ լիակատար ազատություն. 2) Նրան այժմ չի կարելի տապալել, որովհետև նա պահպանվում է ուղղակի և անուղղակի, ձևական և փաստական համաձայնությամբ՝ բանվորների դեպուտատների սովետների և, ամենից առաջ, գլխավոր սովետի, Պիտերի սովետի հետ. 3) Նրան ընդհանրապես սովորական եղանակով չի կարելի «տապալել», որովհետև նա հիմնվում է երկրորդ կառավարության՝ բանվորների դեպուտատների սովետի՝ բուրժուազիային ցույց տված «օժանդակության» վրա, իսկ այդ կառավարությունը միակ հնարավոր հեղափոխական կառավարությունն է, որն ուղղակի արտահայտում է բանվորների և գյուղացիների մեծամասնության գիտակցությունն ու կամքը» (Երկեր, հատ. 24, էջ 27)։

Միակ ճիշտ տակտիկան, որը հետագայում ընդունվեց և ճանաչվեց ամբողջ կուսակցության կողմից, դեռ մարտի 6-ին Ռուսաստան մեկնող բոլշևիկներին ուղարկված հեռագրում ձևակերպել էր Լենինը։ Այդ հեռագրում ասված էր. «Մեր տակտիկան է՝ լիակատար անվստահություն, ոչ մի աջակցություն նոր կառավարությանը, հատկապես կասկածում ենք Կերենսկու վրա, պրոլետարիատի զինումը միակ երաշխիքն է, Պետրոգրադի դումայի անհա-



պաղ ընտրություն, ոչ մի մերձեցում մյուս կուսակցությունների հետ» (Երկեր, հատ. 23, էջ 392)։ Լենինը տակտիկական այդ դրույթը հետագայում ավելի խորացրեց ու հիմնավորեց իր հռչակավոր Ապրիլյան թեզիսներում և այլ աշխատություններում։ Այն լիակատար պաշտպանություն ու հավանություն ստացավ ապրիլին տեղի ունեցած Պետրոգրադի համաքաղաքային կոնֆերանսի և կուսակցության ապրիլյան կոնֆերանսի բանաձևերում։ Լենինը ամենախիստ քննադատության էր ենթարկում ժամանակավոր կառավարությանն աջակցելու մենշևիկյան տակտիկան, այն համարելով դավաճանություն խաղաղության և ազատության գործին։

Բայց ժամանակավոր կառավարության նկատմամբ անվստահության և չաջակցելու տակտիկան պասիվ, սպասողական տակտիկա չէր։ Լենինը պահանջում էր ժողովրդական լայն մասսաների առաջ բացահայտել ժամանակավոր կառավարության հակաժողովրդական քաղաքականության էությունը, մասսաներին զինել և նախապատրաստել նոր գրոհի բուրժուազիայի դեմ՝ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերածելու համար։

Ինչ վերաբերում է մենշևիկներին և էսեռներին, ապա կուսակցության խնդիրն էր՝ համբերատար բացահայտել նրանց համաձայնողական քաղաքականության դավաճանական բնույթը և ժողովրդական լայն մասսաներին աստիճանաբար ազատել նրանց ազդեցությունից։ Լենինն անթույլատրելի և վտանգավոր էր համարում մենշևիկների հետ որևէ համաձայնություն ու միավորում։

* * *

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակով շահագրգռված հիմնական ուժը բանվոր դասակարգն էր։ Պատերազմի տարիներին նրա սոցիալական կազմի մեջ զգալի փոփոխություններ և տեղաշարժեր էին կատարվել։ Պակասել էր կադրային պրոլետարիատի քանակը, նրա շարքերը համալրվել էին քաղաքային և գյուղական մանրբուրժուական տարրերով։ Դրա հետևանքով բանվոր դասակարգի որոշ խավերի դասակարգային գիտակցությունը ցածր էր, նրանք չէին կարողանում քաղաքական հարցերում հաճախ ճիշտ կողմնորոշվել, հավատում էին համաձայնողական կուսակցություններին և պաշտպանում նրանց քաղաքականությունը։ Կուսակցության անհետաձգելի խնդիրներից մեկը դարձավ բանվոր դասակարգի այդ մասի գիտակցության բարձրացումը, նրանց համաձայնողական կուսակցությունների ազդեցությունից ազատելը։ Դա վճռական նշանակություն ուներ, որովհետև սոցիալիստական հեղափոխության հիմնական շարժիչ ուժը բանվոր դասակարգն էր և եթե նրա շարքերը մնային ջլատված, անհնարին կլիներ անցում կատարել հեղափոխության երկրորդ էտապին։

Բայց Ռուսաստանի նման ագրարային երկրում, ուր մանրգյուղացիական բնակչությունը հսկայական մեծամասնություն էր կազմում, բանվոր դասակարգը, առանց դաշնակիցներին, մասնավորապես գյուղացիությանը և քաղաքային չքավորությանը իր հետևից տանելու, չէր կարող կատարել սոցիալիստական հեղափոխություն։ Բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակ բանվոր դասակարգի դաշնակիցը ամբողջ գյուղացիությունն էր։ Սոցիալիստական հեղափոխության ժամանակ ամբողջ գյուղացիությունը չէր կարող նրա դաշնակիցը լինել։ Կուլակությունը իր դասակարգային բնույ-

թին համաձայն անցել էր հակահեղափոխության լագերը: Միջակ գյուղացիությունը տատանվում էր բուրժուազիայի և պրոլետարիատի միջև, հետևաբար նրա հետ ևս չէր կարելի դաշնակցել, անհրաժեշտ էր նրան չեզոքացնել: Միայն չքավոր գյուղացիությունը և գյուղական պրոլետարիատն էր շահագրգռված սոցիալիստական հեղափոխության հաղթանակով և հետևաբար նա կարող էր լինել բանվոր դասակարգի հուսալի դաշնակիցը:

Հաշվի առնելով գյուղում կատարված դասակարգային այդ տեղաշարժերը, կուսակցությունը լոզունգ տվեց՝ ամուր դաշնակցել չքավոր գյուղացիության հետ, չեզոքացնել միջակին, պայքարել կուլակության դեմ: Լենինը անսահման մեծ նշանակություն էր տալիս դաշինքի հարցին: «Նայած այն հանգամանքին, — գրել է նա, — թե քաղաքային պրոլետարիատին կհաջողվի՞ արդյոք իր հետևից տանել գյուղական պրոլետարիատին և միացնել նրան գյուղի կիսապրոլետար մասսային, թե՞ այդ մասսան կգնա գյուղացիական բուրժուազիայի հետևից, որը ձգտում է Գուչկովի, Միլյուկովի, կապիտալիստների, կալվածատերերի հետ դաշնակցելուն և ընդհանրապես դեպի հակահեղափոխությունը,—նայած այդ հանգամանքին կորոշվի ռուսական հեղափոխության բախտն ու ելքը, քանի որ Եվրոպայում սկսվող պրոլետարական հեղափոխությունն իր անմիջական հզոր ազդեցությունը չի գործի մեր երկրի վրա» (Երկեր, հատ. 24, էջ 355):

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հաջողությունը կախված էր նաև ճնշված ազգերի նկատմամբ ճիշտ քաղաքականություն վարելուց: Այդ պատճառով էլ կուսակցությունը հռչակելով ազգերի ինքնորոշման իրավունքը, աշխատեց ցարիզմի կողմից ճնշված բոլոր ժողովուրդներին հեղափոխական ակտիվ պայքարի մեջ ներգրավել:

Ռուսական պրոլետարիատի մյուս դաշնակիցը միջազգային պրոլետարիատն էր, որն աստիճանաբար ազատվելով սոցիալ-շովինիստների ազդեցությունից և ծավալելով հեղափոխական պայքարը սեփական բուրժուազիայի դեմ, դրանով իսկ իր ինտերնացիոնալ պարտքն էր կատարում ռուսական հեղափոխության հանդեպ:

Հեղափոխության հետագա ծավալման գործում Լենինը մեծ նշանակություն էր տալիս սովետներին: Չնայած սովետները գտնվում էին համաձայնողական կուսակցությունների ազդեցության տակ, այնուամենայնիվ, նրանք բանվոր դասակարգի և գյուղացիության դիկտատուրայի օրգաններն էին, բանվորական կառավարության սաղմը, բնակչության բացարձակ մեծամասնության շահերի ներկայացուցիչը: Հենց այդ պատճառով էլ կուսակցության գլխավոր խնդիրներից մեկը դարձավ աշխատանքը սովետների ներսում, սովետները մանրբուրժուական կուսակցությունների ազդեցությունից ու գերիշխանությունից ազատելը:

## 2. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԽԱՂԱՂ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿՈՒՐՍԸ

Սոցիալիստական հեղափոխության շարժիչ ուժերը որոշելու հետ միասին, Լենինի Ապրիլյան թեզիսներում և կուսակցության VII (ապրիլյան) կոնֆերանսի որոշումներում հստակ մատնանշվեցին նաև բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու ուղիներն ու եղանակները, բանվոր դասակարգի և նրա ավանգարդի գործունեության դասակարգային հիմնավորված պլանը:



Երկիշխանությունը չէր կարող հարատևել, վերջիվերջո նրանցից մեկը իր տեղը պետք է զիջեր մյուսին: Ռուսաստանում կատարված դասակարգային տեղաշարժերն ու նրանց ուժերի հարաբերակցությունը ցույց էր տալիս, որ առկա էին օբյեկտիվ բոլոր նախադրյալները երկիշխանությունը վերացնելու հօգուտ պրոլետարիատի միիշխանության: Անդրադառնալով այդ խնդրին, Լենինը գրել է. «Ռուսաստանում ընթացիկ մոմենտի առանձնահատկությունը անցումն է հեղափոխության առաջին էտապից, որը պրոլետարիատի բավականաչափ գիտակից և կազմակերպված չլինելու պատճառով իշխանությունը տվեց բուրժուազիային, դեպի նրա երկրորդ էտապը, որն իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և գյուղացիության ամենաչքավոր խավերի ձեռքը (Երկեր, հ. 24, էջ 4):

Իսկ ինչպե՞ս կարող է կատարվել այդ անցումը. Վլադիմիր Իլյիչը գտնում էր, որ այդ պետք է կատարել ոչ թե զինված նոր ապստամբությամբ ժամանակավոր կառավարությունը տապալելու, այլ սովետները փաստական իշխանությամբ օժտելու, նրա դերը երկրի կառավարման գործում բարձրացնելու, ժամանակավոր կառավարությանը ոչ մի աջակցություն ցույց չտալու, նրա իմպերիալիստական բնույթն ու քաղաքականությունը մերկացնելու, պետական հին ապարատը աստիճանաբար ոչնչացնելու և նրա տեղը ժողովրդի շահերը պաշտպանող պետական նոր ապարատ ստեղծելու միջոցով: Այդ կնշանակեր երկիշխանությունը վերացնել հօգուտ սովետների միիշխանության, այսինքն՝ ամբողջ իշխանությունը հանձնել սովետներին: Լիբերալ բուրժուազիան անզոր էր դրան լուրջ կերպով դիմադրելու, որովհետև նա իր փաստական իշխանությունը պահպանում էր սովետների օժանդակությամբ, որը բնակչության ինը տասներորդի շահերի արտահայտիչն էր: Բացի այդ, բուրժուազիան այդ չէր կարող կատարել այն պարզ պատճառով, որովհետև նա դեռ չէր կարողացել ամրացնել իր դիկտատուրան, նա դեռ այնքան ուժ չուներ, որ բռնությամբ իր ձեռքում կենտրոնացներ ամբողջ իշխանությունը:

Ամբողջ իշխանությունը սովետներին հանձնելը դեռևս պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը չէր, այլ բանվորա-գյուղացիական հեղափոխական դիկտատուրայի հաստատում, ընդ որում, այդ դիկտատուրայում ղեկավար դերը պիտի անցներ մենշևիկներին ու էսեռներին, որովհետև նրանք էին սովետներում մեծամասնություն կազմում: Բայց արդյոք դա չէ՞ր հակասում մենշևիկների ու էսեռների նկատմամբ կուսակցության քաղաքականությանը: Այստեղ ոչ մի հակասություն չկար: Ամբողջ իշխանությունը, թեկուզ էսեռա-մենշևիկյան, սովետներին հանձնելն այն առավելությունն ուներ, որ, նախ, բուրժուազիան քաղաքական իշխանությունից կզրկվեր համեմատաբար անցավագին կերպով: Երկրորդ, էսեռներն ու մենշևիկները կամ հարկադրված պետք է լինեին փոխել իրենց քաղաքականությունը կամ, հակաժողովրդական քաղաքականությունը շարունակելու դեպքում, պետք է վարկաբեկվեին մասսաների առաջ, կորցնեին նրանց վրա ունեցած իրենց ազդեցությունը, հետևաբար և սովետները:

Իշխանության խաղաղ անցումը սովետներին կարող էր տեղի ունենալ բացառապես ժողովրդական լայն մասսաների հեղափոխական պայքարի, նրանց ճնշման տակ և ոչ այլ կերպ: Այստեղից էլ բխում էին գործնական այն միջոցները, տնտեսական ու քաղաքական այն լոզունգների որոշումը, որոնց միջոցով կարելի կլիներ նրանց համախմբել և ակտիվ պայքարի հանել պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար: Թեզիսներում

Լենինն այդպիսի լոզունգներ էր համարում՝ բոլոր բանկերի միաձուլումը մեկ համազգային բանկի մեջ, արտադրության և բաշխման վրա սովետների վերահսկողության սահմանումը, կալվածատերերի հողերի բռնագրավումը և երկրի բոլոր հողերի ու ընդերքի հարստությունների ազգայնացումը, պատերազմին վերջ տալը և դեմոկրատական հաշտության կնքումը, բոլոր ազգերին ինքնորոշման իրավունք տալը, աշխատավորական բոլոր շերտերի տնտեսական դրության բարելավումը, լիակատար դեմոկրատական ազատություններ տալը և այլն։ Այսպիսին էր բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը խաղաղ ճանապարհով սոցիալիստականի վերաճելու լենինյան պլանի էությունը։

Սոցիալիստական հեղափոխության խաղաղ զարգացման լենինյան պլանը, ինչպես պետք էր սպասել, կատաղի մոլուցքով դիմավորեցին հակահեղափոխության բոլոր ուժերը։ Նրանք խաչակրաց արշավանք սկսեցին Լենինի և նրա կողմնակիցների դեմ, մասսաներին խաբելու համար կանգ չառնելով բոլշևիկների և նրա առաջնորդի նկատմամբ հրեշավոր զրպարտություններ տարածելու, նրանց դավաճանության և լրտեսության մեջ մեղադրելու առաջ։

Սոցիալիստական հեղափոխության լենինյան պլանի ու տեսության դեմ հանդես եկան նաև կուսակցության որոշ ղեկավար գործիչներ։ Սակայն, ամբողջությամբ վերցրած կուսակցությունը կանգնեց Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հնարավորության վերաբերյալ լենինյան տեսակետի վրա և ջանքեր չխնայեց այն կենսագործելու համար։

* * *

Ունենալով սոցիալիստական հեղափոխության ճիշտ ստրատեգիա և տակտիկա, բոլշևիկների կուսակցությունը, նրա բոլոր կազմակերպությունները վիթխարի աշխատանք ծավալեցին հեղափոխության լենինյան պլանը կենսագործելու համար։ Կուսակցության գերագույն խնդիրը դարձավ մասսաների նվաճումը, սոցիալիստական հեղափոխության բոլոր շարժիչ ուժերի համախմբումը՝ քաղաքական միասնական բանակի մեջ։ Այդ նպատակով կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները մեծ աշխատանք ծավալեցին բանվորական, գյուղացիական, զինվորական և մասսայական այլ կազմակերպություններում և ամենից առաջ սովետներում, որոնց թիվը ամառվա սկզբներին արդեն 400-ի էր հասել։

Ժողովրդական լայն մասսաներին նվաճելու գործում հսկայական նշանակություն ունեցավ իմպերիալիստական պատերազմը շարունակելու ժամանակավոր կառավարության քաղաքականության սիստեմատիկ մերկացումը բոլշևիկների կողմից։ Այդ գործում առանձնապես մեծ դեր կատարեցին Պետրոգրադի բանվորների ու կայազորի զինվորների և երկրի մի շարք այլ վայրերում ժողովրդական լայն մասսաների հակապատերազմյան ապրիլյան ցույցերը, որոնք երկրում ստեղծեցին քաղաքական լուրջ ճգնաժամ։ Բուրժուազիան իր այդ առաջին ճգնաժամից դուրս գալու համար մայիսի 5-ին համաձայնություն կնքեց մենշևիկների և էսեռների հետ ու ստեղծեց կոալիցիոն կառավարություն, բայց դա նրան չփրկեց, որովհետև դրանով ճգնաժամի պատճառները չվերացվեցին։

Մայիսին ամբողջ երկրում ծավալվեցին բանվորական գործադուլներ՝ տնտեսական պահանջներով։ Շատ վայրերում, հակառակ կապիտալիստների



դիմադրությանը, սեփական նախաձեռնությամբ բանվորները մտցնում էին ութժամյա բանվորական օր։ Հզոր թափ ստացան ագրարային շարժումները երկրի 43 նահանգներում։ Շատ տեղերում, հետևելով բոլշևիկների խորհուրդներին, գյուղացիները բռնագրավում էին կալվածատիրական հողերը։ Բոլշևիկները մեծ աշխատանք ծավալեցին նաև բանակում, զորքերին իրենց կողմը նվաճելու համար։

Մասսաների ձախացման վառ ապացույցներից մեկը Պետրոգրադի բանվորների հունիսի 18-ի ցույցն էր, երբ 500 հազար ցուցարարների բացարձակ մեծամասնությունը փողոց դուրս եկավ «Ամբողջ իշխանությունը սովետներին» բոլշևիկյան լոզունգով։

Դա ժամանակավոր կառավարության երկրորդ լուրջ ճգնաժամն էր։ Երրորդ ճգնաժամը սկսվեց ռազմաճակատում հարձակման անհաջողությունների առնչությամբ կազմակերպված հուլիսյան ցույցով։ Բայց այս անգամ ժամանակավոր կառավարությունը, համաձայնողական կուսակցությունների աջակցությամբ, ճգնաժամը լուծեց զենքի միջոցով, արյան մեջ խեղդեց հուլիսյան ցույցը, որի ճնշմամբ երկիշխանությունը վերացավ հօգուտ բուրժուազիայի միիշխանության, հաստատվեց բուրժուազիայի լիակատար դիկտատուրան։

## 3. ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ԿՈՒՐՍԸ

Ընդհանրացնելով փետրվարից հուլիս ընկած ժամանակաշրջանում երկրում տեղի ունեցած իրադարձությունները, կարելի է հետևյալ եզրահանգումներին գալ։

Անցած 4 ամսում բանվոր դասակարգի, գյուղացիության և զինվորների գիտակցության մեջ լուրջ տեղաշարժեր կատարվեցին դեպի բոլշևիզմը, նրանց մի մասը սեփական փորձով համոզվելով բուրժուազիայի և նրա դաշնակիցների քաղաքականության հակաժողովրդական էության մեջ, սկսեց ձախանալ, ավելի ու ավելի ակտիվ կերպով դրսևորելով իր վրդովմունքն ու դժգոհությունը ժամանակավոր կառավարության դեմ։ Այսուամենայնիվ, ժողովրդի մեծամասնությունը մնաց մենշևիկների և էսեռների ազդեցության տակ։ Պայքարը հեղափոխության քաղաքական բանակ ստեղծելու համար դեռ չէր ավարտվել։ Այս էր առաջին լուրջ դասը։

Երկրորդ, որքան ձախանում էին աշխատավորական մասսաները, այնքան աջանում և կոնսոլիդացնում էին իրենց ուժերը նաև հակահեղափոխական դասակարգերն ու կուսակցությունները։ Մենշևիկների ու էսեռների էվոլյուցիան դեպի աջ հասցրեց նրան, որ նրանք հուլիսյան օրերին համաձայնողական կուսակցություններից դարձան իմպերիալիստական բուրժուազիայի բացահայտ գործակալները, դրանով իսկ ապահովելով երկիշխանության ավարտումը հօգուտ բուրժուազիայի։

Երրորդ, սովետները կորցրին ռեալ ամեն մի ուժ և դարձան ժամանակավոր կառավարության կցորդը։ Մի հարվածով վերացվեցին հեղափոխության առաջին էտապում ձեռք բերված դեմոկրատական ազատությունները։ Կատաղի հալածանք սկսվեց բոլշևիկների կուսակցության ակտիվ գործիչների, նրա մամուլի ու կազմակերպությունների դեմ։ Կուսակցությունը հարկադրված եղավ իր առաջնորդին՝ Լենինին թաքցնել ընդհատակում։

Այդ ամենի հետևանքով հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորությունը բացառվեց, կուսակցությունը կանգնեց նոր տակտիկայի մշակ-







ման անհրաժեշտության առաջ։ Տալով հուլիսյան դեպքերի դասակարգային վերլուծությունը, Լենինն իր Քաղաքական դրությունը և Լոզունգների առթիվ հոդվածներում ուրվագծեց նոր պայմաններում կուսակցության նոր տակտիկայի սկզբունքները, որոնք հավանության արժանացան և հաստատվեցին ՌԿ (բ) Կ VI համագումարում։

VI համագումարը ժամանակավորապես հանեց «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը և կուսակցությանն ու բանվոր դասակարգին կոչ արեց նախապատրաստվել զինված ապստամբության միջոցով իշխանությունը գրավելուն։ Նա հեղափոխության խաղաղ զարգացման տակտիկան փոխարինեց զինված ապստամբության տակտիկայով։ Կուսակցության տակտիկայի փոփոխումը օրակարգից չէր հանում մասսաների նվաճման, հեղափոխության քաղաքական բանակի ստեղծման և ամրապնդման անհրաժեշտությունը, ընդհակառակը, այն ավելի հրատապ էր դարձնում, որովհետև միայն մասսաների հեղափոխական նոր վերելքի պայմաններում կարելի էր տապալել բուրժուազիայի իշխանությունը և հաստատել պրոլետարիատի դիկտատուրա։

Հուլիսյան իրադարձություններով դասակարգային և կուսակցական պայքարը մտավ զարգացման նոր փուլ՝ ուժերի նոր հարաբերակցությամբ, նոր խնդիրներով և պայքարի նոր մեթոդներով։

Հաստատելով իր միիշխանությունը, բուրժուազիան կատաղի հարձակման անցավ ամենից առաջ բանվոր դասակարգի դեմ։ Փակվեցին բազմաթիվ գործարաններ, հսկայական չափերի հասավ գործազրկությունն ու սպեկուլյացիան։ Բուրժուազիան իր հույսը դրել էր «սովի ոսկրոտ ձեռքով» հեղափոխությունը խեղդելու վրա։ Հակահեղափոխությունը հարձակման անցավ նաև գյուղացիության դեմ։ Զենքի միջոցով սկսեցին ճնշել գյուղացիական շարժումներն ու ելույթները։ Բանակում ստեղծվեցին դաշտային դատարաններ և մտցվեց մահապատիժ նրանց համար, ովքեր չէին կատարի հրամանները կամ հանդես կգային կառավարության քաղաքականության դեմ։

Ռեակցիայի հարձակումն իր գագաթնակետին հասավ օգոստոսին, երբ բուրժուազիան կազմակերպելով գեներալ Կոռնիլովի դավադրությունը, փորձեց հաստատել ռազմական դիկտատուրա և դրանով վերջնականապես խեղդել հասունացող հեղափոխությունը։ Բայց, ինչպես ասում են, մահակը երկու ծայր ունի։ Ռեակցիայի հարձակումն ավելի ուժեղացրեց բանվորների, գյուղացիների և զինվորների դժգոհությունը, ծայրահեղորեն սրելով դասակարգային պայքարը երկրում։ Ժողովրդական լայն մասսաները բոլշևիկների ագիտացիայի և պրոպագանդայի շնորհիվ ու սեփական փորձով համոզվելով բուրժուական կառավարության հակաժողովրդական էության մեջ, իմանալով ճշմարտությունը նրա քաղաքականության նկատմամբ, չտեսնված արագությամբ շրջադարձ էին կատարում դեպի հեղափոխությունը, համախմբվում բոլշևիզմի դրոշի ներքո։ Այդ շրջադարձն իր առաջին լուրջ դրսևորումը գտավ կոռնիլովյան դավադրությունը ճնշելիս։

Բոլշևիկների կոչով Պետրոգրադի բանվորները զենքը ձեռքին դուրս եկան Կոռնիլովի դեմ և ջախջախեցին նրա զորքերին։

Կոռնիլովյան դավադրության ճնշումը երկրում առաջ բերեց դասակարգային նոր տեղաշարժեր և նրանց ուժերի նոր հարաբերակցություն, բայց այս անգամ արդեն հօգուտ հեղափոխության։ Սովետները նորից դառնում էին ապստամբության, բանվորների իշխանության օրգաններ։ Հաշվի առնե-



լով այդ շրջադարձը, կուսակցությունը նորից առաջ քաշեց «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը։ Բայց դա իր բովանդակությամբ արդեն նոր լոզունգ էր։ Դա զինված ապստամբության միջոցով բուրժուական կառավարությունը տապալելու և պրոլետարիատի դիկտատուրա ստեղծելու լոզունգ էր։

Դասակարգային նոր տեղաշարժերը դրսևորվեցին, այնուհետև, աշխատավորական տարբեր խավերի դասակարգային պայքարի ձևերի ու եղանակների մեջ։ Բանվորներն իրենց ձեռքն էին վերցնում արտադրության կառավարումը և ըստ էության դառնում նրա փաստական տերը։ Գյուղացիական շարժումներն ավելի էին ծավալվում և ամենուրեք վերածվում ապստամբության։ Զինվորները վռնդում էին ռեակցիոն հրամանատարներին և նրանց տեղն ընտրում իրենց համախոհներին։ Ճնշված ազգերի ազգային-ազատագրական պայքարն ավելի ու ավելի էր հարում ընդհանուր հեղափոխական շարժմանը, կազմելով նրա հետ մեկ միասնական ճակատ։ Ժողովրդի մեծամասնությունը բոլշևիկների կողմն էր։ Հեղափոխության քաղաքական բանակն ստեղծվել էր արդեն։

Այդ բոլորի շնորհիվ սեպտեմբերին երկրում ստեղծվեց համազգային ճգնաժամ։ Առկա դարձան հեղափոխական իրադրության օբյեկտիվ և սուբյեկտիվ բոլոր նախադրյալները։ Շահագործող դասակարգերն այլևս չէին կարողանում հին մեթոդներով կառավարել, իսկ շահագործվողները՝ հին մեթոդներով կառավարվել։ Բանվոր դասակարգի և նրա դաշնակիցների կողմից իշխանության գրավումը օրակարգի խնդիր էր դարձել։

## 4. ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Համազգային ճգնաժամը օրակարգի անմիջական հարց դարձրեց զինված ապստամբության նախապատրաստումն ու իրականացումը։ Նրա հաջողությունն այժմ կախված էր բանվոր դասակարգի ավանգարդից, կուսակցության Կենտկոմի և մյուս կոմիտեների քաղաքական և կազմակերպչական աշխատանքից, ապստամբությունը նախապատրաստելու և հաղթական վախճանին հասցնելու նրանց կարողությունից։ Պատմությունը մեծ միսիա էր դրել բոլշևիկների վրա։ Կկարողանայի՞ն նրանք հաջողությամբ կատարել այդ։ Դրանից էր կախված Ռուսաստանի բախտը։

Գտնվելով ընդհատակում, Լենինը ոչ միայն ուշի-ուշով հետևում էր երկրում կատարվող իրադարձություններին, այլև ընդհատակից ղեկավարում և ուղղություն էր տալիս Կենտկոմի գործունեությանը։ Սեպտեմբերի 12—14-ին Լենինը գրեց «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը» ու «Մարքսիզմը և ապստամբությունը» ծրագրային նամակները, որոնցում Կենտկոմի, Պետրոգրադի ու Մոսկվայի և մյուս կոմիտեների առաջ խնդիր դրեց ապստամբությանը վերաբերվել որպես արվեստի, ձեռնամուխ լինել նրա անմիջական նախապատրաստմանը։ Սեպտեմբերի 15-ին Կենտկոմը քննեց Լենինի նամակները, հավանություն տվեց նրանցում մշակված ապստամբության պլանին և հանձնարարեց բոլոր կոմիտեներին և Կենտկոմին կից ռազմական կազմակերպությանն արագ կերպով ստեղծել կարմիր գվարդիայի նոր ջոկատներ, ամենուրեք զինել բանվորներին, գործնականորեն նախապատրաստել զինված ապստամբությունը։ Զինված ապստամբության լենինյան պլանի դեմ Կենտկոմում կատաղի պայքար ծավալեց Կամենևը, առաջարկելով անգամ ոչնչացնել նշված նամակները։

Ապստամբության անմիջական ղեկավարումը Լենինի կողմից ապահովելու նպատակով Կենտկոմը հոկտեմբերի 3-ին որոշեց նրան փոխադրել Պետրոգրադ։ Հոկտեմբերի 7-ին նա ժամանեց մայրաքաղաք։ Հոկտեմբերի 10-ին Կենտկոմը քննարկեց Լենինի զեկուցումը ընթացիկ մոմենտի մասին և որոշում ընդունեց ապստամբության մասին։ Զինված ապստամբության նախապատրաստման աշխատանքները ղեկավարելու համար ընտրվեց Կենտկոմի քաղաքական բյուրո՝ Լենինի գլխավորությամբ։ Մայրաքաղաքում զինված ապստամբության կազմակերպումն ու ղեկավարումը հանձնարարվեց Պետրոգրադի սովետին կից ռազմա-հեղափոխական կոմիտեին։ Ապստամբությունը նախապատրաստելու որոշման դեմ հանդես եկան միայն Կամենևն ու Զինովևը, իսկ Տրոցկին առաջարկեց հետաձգել այն մինչև սովետների II համագումարի հրավիրումը։ Դրանք ապստամբությունը վիժեցնելու դավաճանական փորձեր էին։ Կուսակցական բոլոր խոշոր կոմիտեները հավանություն տվեցին զինված ապստամբության վերաբերյալ Կենտկոմի դիրքորոշմանը և արագ կազմակերպում էին ապստամբության կարմիրգվարդիական ջոկատները։ Այդ օրերում կարմիր գվարդիայում արդեն ընդգրկվել էին մոտ 200 հազար բանվոր։

Հոկտեմբերի 16-ին կայացավ Կենտկոմի ընդլայնված նիստը, որը կրկին հաստատեց զինված ապստամբության մասին բանաձևը և միաժամանակ ընտրեց զինված ապստամբության ղեկավարման ռազմա-հեղափոխական կենտրոն։

Ջախջախվելով Կենտկոմում, Լ. Կամենևը և Գ. Զինովևը կուսակցության և բանվոր դասակարգի հանդեպ կատարեցին հրեշավոր դավաճանություն։ Նրանք կիսամենշևիկյան «Новая жизнь» թերթում թշնամուն մատնեցին զինված ապստամբության նախապատրաստման մասին Կենտկոմի որոշումը։

Նախազգուշացված լինելով դավաճանների կողմից, ժամանակավոր կառավարությունը շտապ միջոցներ ձեռնարկեց ապստամբությունը ճնշելու համար։ Ռազմաճակատից Պետրոգրադ կանչվեցին կառավարությանը հավատարիմ զորամասեր, մայրաքաղաքի բոլոր շրջաններում ստեղծվեցին հեծյալ ջոկատներ։

Հոկտեմբերի 21-ին Լենինը Կենտկոմի անդամներին մի նամակ ուղարկեց, որով պահանջեց անհապաղ սկսել զինված ապստամբությունը։ Նրանում ասված էր. «Ես այս տողերը գրում եմ 24-ի երեկոյան, դրությունը ծայրաստիճան կրիտիկական է։ Պարզից էլ պարզ է, որ այժմ արդեն, հիրավի, ապստամբությունն ուշացնելը մահվան է հավասար (Երկեր, հատ. 26, էջ 278)։

Սկսվեց զինված ապստամբությունը։ Հոկտեմբերի 25-ի լուսաբացին ապստամբների գրոհի տակ ընկավ Ձմեռային պալատը, տապալվեց ժամանակավոր կառավարությունը։ Նույն օրը երեկոյան հավաքվեց սովետների II համագումարը, որը հռչակեց երկրում ամբողջ իշխանությունը սովետներին անցնելու մասին իր պատմական որոշումը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը մենք պարտական ենք Լենինի կոփած կոմունիստական կուսակցությանը, որը պատմական այդ վիթխարի եղելության սիրտն ու ոգին է, աննկուն կազմակերպիչն ու ղեկավարը։ Երկարամյա դաժան մարտերում փորձված բոլշևիկյան կազմակերպությունները էին, որ կարողացան աշխարհը սոցիալիստորեն վերակառուցելու վեհ նպատակների համար ոտքի հանել ո՛չ միայն



հեղափոխական պրոլետարիատին, այլև կեղեքված աշխատավոր գյուղացիությանը, նավաստիներին ու զինվորներին։ Ճշտորեն կիրառելով ապստամբության արվեստի լենինյան սկզբունքները, Ռուսաստանի հեղափոխական ուժերին հաջողվեց տապալել ժամանակավոր կառավարությունը և հաստատել բանվորա-գյուղացիական իշխանություն։

Մարդկությանը հայտնի և ոչ մի հեղափոխության ընթացքում չի եղել միլիոնավոր զանգվածների այնպիսի կազմակերպվածություն, նրանց կամքի միասնություն, գործելակերպի ճկունություն և անվեհերություն, որպիսին դրսևորվեց մեծ Հոկտեմբերի հաղթության համար մղվող ճակատամարտերում։ Եվ այդ ամենը շնորհիվ ընդհատակի ծանր պայմաններում բոլշևիկների թափած գերմարդկային ջանքերի, բազմաթիվ զոհերի գնով հեղափոխական փորձի ճշգրիտ մշակման և հեղափոխության լենինյան ստրատեգիայի ու տակտիկայի անշեղ իրագործման։ Դրանով իսկ մեկընդմիշտ հերքվեց օպորտունիզմի որդեգրած ինքնահոսի վնասակար պրակտիկան և ապացուցվեց, որ մարդկությունը կարող է ազատագրվել կապիտալիստական սպանդից միայն հետևողական հեղափոխական կուսակցության համառ ու անկաշառ պայքարի դեպքում։

Ահա թե ինչու, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը կոմունիստներին կարգեց ճնշված մարդկության ազատագրման նավավար. նավավար, որը պատմության մեջ առաջինը գտավ և աննախընթաց վարպետությամբ կիրառեց հեղափոխության արքիմեդյան լծակը՝ մարքսիզմ-լենինիզմը։

Հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Սկսվեց կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի ստեղծման դարաշրջանը։



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇՈՎ

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը մեր փառապանծ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկն է՝ իր հեղափոխական պայքարի սահեղծարար, հարուստ գործունեությամբ միշտ հավատարիմ մեծ Լենինի անմահ գաղափարներին։

Հայաստանի կոմունիստական կուսակցության զարգացումը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի արդյունք է։ Նրա՝ որպես ինքնուրույն կուսակցության ծագումն ու ձևավորումը օրգանապես կապված են սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ։ Չէ՛ որ Սովետական Հայաստանն ինքը Հոկտեմբերի հաղթանակի արգասիքն է։ Սակայն դա դեռ չի նշանակում, որ մինչև հեղափոխության հաղթանակը Հայաստանում բոլշևիկյան կազմակերպություններ չեն եղել։

Սոցիալ-դեմոկրատական, լենինյան իսկրայական, այնուհետև բոլշևիկյան կազմակերպությունները Հայաստանում, որպես ՌՍԴ(բ)Կ և ապա իբրև բոլշևիկյան հոսանքի մի ջոկատ, գործել են սկսել դեռևս XIX դարի վերջից։ Գոյավորման առաջին օրերից նրանք հանդիսացել են Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների անբաժան մասը, նրանց հետ միասին հեղափոխական գործունեություն ծավալել մի ընդհանուր՝ Կովկասյան երկրամասային կենտրոնի ղեկավարությամբ։

Հայաստանի բոլշևիկյան կոմունիստական կազմակերպությունները մոտ 60 տարվա փառահեղ պատմական ուղի են անցել. մեծ Հոկտեմբերի 50-ամյակի նախօրեին շատ բան է արվում նրանց փառապանծ գործունեությունը ներկայացնելու, հանրագումարի բերելու առումով։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպություններն իրենց ողջ գործունեության ընթացքում մշտական կապ են պահպանել Վ. Ի. Լենինի հետ Կովկասյան կենտրոնի, հավատարիմ լենինյաններ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի և Կենտրոնական կոմիտեի օրգանների միջոցով ղեկավար ցուցումներ ստացել նրանից։ Այդ ցուցումներն անշեղ կատարել են Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, անցնելով դասակարգային պայքարի և ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների բովով։



Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը մեծ զարկ տվեց ողջ Անդրկովկասի, ինչպես և Հայաստանի կոմունիստական շարժման խորացմանն ու ծավալմանը։ Երկար տարիների համառ և արյունոտ մարտերում է կոփվել Հայաստանի կոմկուսը, որը 1920 թ. վերջնականապես և կազմակերպորեն ձևավորվեց իբրև ՌԿ(բ)Կ առանձին ջոկատ։

Հանրահայտ է, որ մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանի աշխատավորությունը՝ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, սուր մարտեր է մղել հանուն սոցիալական և ազգային ազատագրության։ Գործադուլները Երևանում, Ալավերդում, Ալեքսանդրապոլում, Ղաթարում (Ղափան), Ղարսում, գյուղացիական չդադարող շարժումները Հայաստանի գավառներում և, վերջապես, 1920 թվականի Մայիսյան զինված ապստամբությունը ակնառու կերպով վկայեցին բոլշևիկյան կազմակերպությունների կենսունակությունը, նրանց մղած պայքարի արդարացիությունը և մոտալուտ հաղթանակի անխուսափելիությունը։

Մինչև Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմակերպման ձևավորումը, տարբեր ժամանակներում բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավար կորիզի մեջ գործել են լենինյան գաղափարներին զինվորագրված անձնվեր հեղափոխականներ Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը, Բոգդան Կնունյանցը, Մելիք Մելիքյանը, Անաստաս Միկոյանը, Ասքանազ Մռավյանը, Ստեփան Ալավերդյանը, Աղասի Խանջյանը, Սարգիս Կասյանը, Սահակ Տեր-Գաբրիելյանը, Բագրատ Ղարիբջանյանը, Պյոտր Արվելաձեն, Լավրենտի Քարթվելիշվիլին (Յա. Լավրենտև), Հովհաննես Սարուխանյանը, Արշավիր Մելիքյանը և ուրիշներ, որոնք երիցս արժանի են ջերմ մեծարման. Նրանց փառավոր գործունեությունը հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի բազմիցս պատշաճ դրվատվել է հայ կոմկուսի և մեր մամուլի օրգանների, գիտական և հրատարակչական հաստատությունների, ռադիոյի ու հեռուստատեսության կողմից։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի ազդեցությամբ և հեղափոխական շարժման լայն թափի շնորհիվ, Հայաստանի տերիտորիայում գոյություն ունեցող բոլշևիկյան կազմակերպությունները ձևավորվեցին մի միասնական կազմակերպության մեջ, որպես Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցություն, որը դարձավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ջոկատներից մեկը։

Հայաստանի կոմունիստները ելնում էին ո՛չ միայն ստեղծված կոնկրետ իրադրությունից, այլև Վ. Ի. Լենինի պատմական այն ցուցումից, որ «Միայն կոմունիստական կուսակցությունը, եթե նա իսկապես հեղափոխական դասակարգի ավանգարդն է, եթե նա իր մեջ է առնում նրա բոլոր լավագույն ներկայացուցիչներին, եթե նա բաղկացած է լիովին գիտակից և անձնվեր կոմունիստներից, որոնք համառ հեղափոխական պայքարի փորձով լուսավորված և կոփված են, եթե այդ կուսակցությունը կարող է իրեն անխզելիորեն կապել իր դասակարգի ամբողջ կյանքի հետ, իսկ նրա միջոցով՝ շահագործվողների ամբողջ մասսայի հետ և ներշնչել այդ դասակարգին ու այդ մասսային լիակատար վստահություն,— միայն այդպիսի կուսակցությունն է ունակ ղեկավարելու պրոլետարիատին ամենաանողոք, վճռական, վերջին

պայքարում՝ ընդդեմ կապիտալիզմի բոլոր ուժերի» (Երկեր հ. 31, էջ 219—220)։

Հեղափոխական շարժումների հասունացմամբ մեծանում էր բոլշևիկյան կազմակերպությունների հեղինակությունը Հայաստանի աշխատավորության շրջանում և դա հատկապես նրանից հետո, երբ կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշմամբ Հայաստան եկան Հոկտեմբերյան հեղափոխության բոցերում թրծված մի շարք ականավոր բոլշևիկ գործիչներ։

Հայաստանի հեղափոխական շարժման գագաթնակետը 1920 թվականի Մայիսյան զինված ապստամբությունն էր, որը հայ ժողովրդի բազմադարյան պատմության հերոսական էջն է, մեծ Հոկտեմբերի անմիջական արձագանքը։ Ապստամբության օրերին Հայաստանի մի շարք քաղաքներում ու գավառներում կարճ ժամանակամիջոցում հաստատվեց սովետական իշխանություն և կոմունիստները համոզվեցին, որ աշխատավորությունը պատրաստ է ընթանալու Հոկտեմբերի դրոշով։ Մայիսյան զինված ապստամբությունը Հայաստանում այն վճռական փորձն էր սովետական իշխանության հաստատման ճանապարհին, որն ապացուցեց դաշնակցության ավանտյուրիստական տիրապետության անզորությունն ու նրա անկման անխուսափելիությունը։

Հայաստանի կոմունիստական կուսակցության (բոլշևիկների) Կենտրոնական կոմիտեն 1920 թվականի հոկտեմբերի 8-ին հրապարակում է «Հայաստանի բանվորներին և գյուղացիներին» ուղղված կրակոտ կոչը, որտեղ ասված է. «Մենք դիմում ենք Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաներին, նրանց հեղափոխական կորովին ու դասակարգային գիտակցությանը՝ կազմակերպվելու կոմունիստական կուսակցության դրոշի շուրջը, հավաքելու ցրված հեղափոխական ուժերը, որպեսզի ձեռք-ձեռքի տված խորհրդային Ռուսաստանի պրոլետարիատի հետ միահամուռ ուժերով խորտակեն միջազգային իմպերիալիզմի հայկական դաշնակցական հատվածի լուծը» («Կոմունիստ», № 117, 8 հոկտեմբերի, 1920 թ., Բաքու)։

Հայկոմկուսի այդ նպատակով վարած պայքարը հաջողությամբ պսակվեց։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին մեր կուսակցության ղեկավարությամբ Հայաստանի բանվորներն ու գյուղացիներն ապստամբեցին դաշնակցական անարգ տիրապետության դեմ և հաստատեցին սովետական իշխանություն։ Հայաստանի աշխատավորների ամենաբաղձալի օրն էր այդ. նրանք վերջնականապես ազատագրվեցին հին կարգերի մղձավանջից և նոր կյանքի սկիզբը դրին։ Հայաստանի կոմունիստական կուսակցության գործունեության մեջ սկսվեց միանգամայն նոր շրջան—աշխատավորների ազատ, ստեղծագործ աշխատանքի հմուտ ղեկավարման շրջան։ Լենինի անմահ գաղափարներով զինված մեր կուսակցությունը կանգնեց հայ ժողովրդի բախտի ղեկի մոտ։

Սովետական Հայաստանի աշխատավորության մոտ կեսդարյա պատմությունն օրգանապես կապված է Հայաստանի կոմկուսի հետ։ Նա է ղեկավարել, ուղղություն տվել բոլոր կազմակերպություններին, բուռն թափ հաղորդել աշխատանքային այն պաթոսին, որով համակվել է մեր ժողովուրդը՝ ծայրաստիճան քայքայված տնտեսության վերականգնման, հետամնաց երկրի զարգացման, սոցիալիզմի կառուցման համար մղած պայքարում։

Այն ամենը, ինչ 1920 թվականին չկար Հայաստանում և ստեղծվել, կառուցվել, կազմակերպվել է մինչև օրս, այն վիթխարի փոփոխությունները, որոնք կատարվել են մեր հանրապետությունում սովետական իշխանության օրոք, արգասիք են Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրո-



նական կոմիտեի հմուտ ղեկավարության, որը հետևողականորեն կենսագործել և կենսագործում է ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի ցուցումները, մեր կուսակցության քաղաքականությունը։

Այժմ, Հոկտեմբերյան հեղափոխության այս կեսդարյա հոբելյանական օրերին, անհրաժեշտ է համառոտակի հանրագումարի բերել այն քրտնաջան, ամենօրյա աշխատանքի արդյունքները, որ կատարել է Հայաստանի կոմունիստական կուսակցությունը Հոկտեմբերի դրոշի ներքո՝ ի բարօրություն հանրապետության աշխատավորների։ Սովետական պետության կազմակերպիչ և առաջնորդ Վ. Ի. Լենինին մշտապես մտահոգում էր Անդրկովկասի, ընդ որում և հայ ժողովրդի բախտը, նրա ապագան։ 1921 թվականի ապրիլին Իլյիչն ընդունեց Ալ. Մյասնիկյանին և «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին» հանրահայտ նամակում շարադրեց Կովկասում սոցիալիզմի հիմքի կառուցման վերաբերյալ իր ցուցումները։

Լենինը պահանջում էր ժողովրդական տնտեսության վերականգնումն սկսել գյուղատնտեսությունից. «Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքները։ Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Երկեր, հ. 32, էջ 404)։

Այդ պատմական ցուցումներով էր առաջնորդվում Հայաստանի կոմունիստական կուսակցության առաջին, անդրանիկ համագումարը, որը կայացավ 1922 թվականի հունվարին. այն ներկայացնում էր կուսակցության ընդամենը 6012 անդամ-թեկնածուի։ Համագումարի աշխատանքներին մասնակցում էր հավատարիմ լենինյան, հայ ժողովրդի լավագույն բարեկամ Սերգո Օրջոնիկիձեն։ Քաղաքական մի շարք հարցերից բացի հանգամանորեն քննարկվեց հողային քաղաքականության հարցը։

Առաջին համագումարում Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի կազմում ընտրվեցին կուսակցական ու պետական ականավոր գործիչներ՝ Ալ. Մյասնիկյանը, Ս. Լուկաշինը, Աշ. Հովհաննիսյանը, Աս. Մռավյանը, Ս. Համբարձումյանը, Շ. Ամիրխանյանը, Գ. Հանեսօղլյանը և ուրիշներ։

Համագումարի ծրագրային որոշումներից հետո կուսակցության Կենտրոնական կոմիտեն կոնկրետ միջոցներ ձեռնարկեց մոբիլիզացնելու աշխատավորների ուժերը՝ վերականգնելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը՝ գյուղատնտեսությունը, արդյունաբերությունը, տրանսպորտը և այլն։

Լենինյան ազգային քաղաքականության կենսագործման առաջին կարևորագույն քայլը Անդրֆեդերացիայի ձևավորումն էր և միաժամանակ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության մեջ Հայաստանի միավորումը։ Այդ ուղղությամբ քաղաքական ու կազմակերպական որոշ աշխատանքից հետո, 1922 թվականին կազմակերպվեց Անդրկովկասյան ֆեդերացիան, որի մեջ միավորվեցին եղբայրական երեք ժողովուրդների տնտեսական, քաղաքական, ռազմական ուժերը՝ հանուն սոցիալիզմի կառուցման։ Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնության շնորհիվ Անդրկովկասյան հանրապետությունների միացյալ աշխատանքն ու պայքարը մեծ թափ հաղորդեցին երկրամասի սոցիալիստական շինարարությանը։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության վերականգնման արդյունքներն ամփոփվեցին ՀԿԿ IV համագումարում՝ 1925 թվականի նոյեմ-

բերին, որտեղ նշվեց, որ Լենինականում ծավալվում է տեքստիլ կոմբինատի շինարարությունը, Երևանում և Սարդարապատում կառուցվել են բամբակազտիչ գործարաններ, պրակտիկ աշխատանքներ են սկսվել Ղափանի պղնձահանքերի վերականգնման ուղղությամբ, շահագործման է հանձնվել Շիրակի ջրանցքը և այլն:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը ձեռնարկեց հանրապետության սոցիալիստական ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման և կուլտուրական հեղափոխության ծավալման վիթխարի աշխատանքներին: Փաստորեն ամեն ինչ պետք էր նորից սկսել: Անհրաժեշտ էր լուրջ, բազմակողմանի ուսումնասիրել երկրի արտադրողական ուժերի կարողությունները, նրա արդյունաբերական հետագա զարգացման հեռանկարները, գիտականորեն պլանավորել ժողովրդական տնտեսությունն այնպես, որ կարճ ժամանակամիջոցում վերափոխվեր հանրապետության էկոնոմիկան, զգալի չափով բարելավվեր աշխատավորության դրությունը: Ինչպես ամբողջ Միությունը, այնպես էլ մեր հանրապետությունը ձեռնամուխ եղավ հնգամյակների կատարմանը: 1929 թվականի հունվարին Հայաստանի ԿԿ VI համագումարը հավանություն տվեց Ժողկոմխորհի նախագահ Սահակ Տեր-Գաբրիելյանի զեկուցմանը՝ Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյակի մասին:

Հնգամյակի տարիները Հայաստանի աշխատավորության հերոսական պատմության ամենափայլուն էջերից են, նրանց աշխատանքային սխրանքների, նոր կյանք կռելու, սոցիալիզմ կառուցելու տարիներ, Հայաստանի կոմունիստների համար՝ մասսաների ստեղծագործական պաթոսի հրահրման, բուռն կորովի, նրանց ոգեշնչման տարիներ:

Ընթանալով Լենինի կանխագծած սոցիալիստական ինդուստրացման ուղիով՝ Հայաստանի կոմունիստները գլխավորեցին հանրապետության բանվոր դասակարգի ստվար ջոկատի եռանդն ու կորովը՝ կարճ ժամանակամիջոցում լուծելու ինդուստրացման խնդիրները: Ընդամենը երեք տարում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին արդյունաբերական մոտ 22 ձեռնարկություն, որոնց թվում՝ Երևանի կարբիդի, փայտամշակման գործարանները, առաջին հիդրոկայանը, Ձորագէսի և Լենինականի հիդրոէլեկտրակայանները: Այսպես օրըստօրե, տարեցտարի կառուցվում ու շահագործման էին հանձնըվում արդյունաբերական նորանոր փոքր ու մեծ ձեռնարկություններ, որի շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում մեր հանրապետությունում ստեղծվեցին ինդուստրիայի բոլորովին նոր ճյուղեր՝ էներգետիկայի, քիմիայի, լեռնաքիմիական , մեքենաշինության, հաստոցաշինության, էլեկտրոնիկայի, ռադիոէլեկտրոնիկայի, շինանյութերի և այլն: Հիմնովին կերպարանափոխվեց հանրապետության էկոնոմիկան:

ՍՄԿԿ կանխագծած ծրագրով Հայաստանի կոմկուսը ձեռնամուխ եղավ մանր, փոշիացած անհատական գյուղացիական տնտեսությունները սոցիալիզմի ուղիով զարգացնելու՝ գյուղատնտեսության կոլեկտիվացման բացառիկ կարևորություն ունեցող դժվարին գործին: Հանրահայտ է, որ հայ գյուղացու հողի մշակման հիմնական գործիքները գութանն ու արորն էին: Համատարած կոլեկտիվացման շնորհիվ գյուղացու հիմնական արտադրագործիքը դարձան տրակտորը, կոմբայնը, ավտոմեքենան, սկսվեց արտադրական պրոցեսների մեքենայացումը, էլեկտրականությունն աստիճանաբար մուտք գործեց գյուղ: Այդ բոլորը կատարվեց տրոցկիզմի, աջ թեքման և հակալենինյան այլ հո-



սանքների դեմ մղվող դասակարգային սուր պայքարի պայմաններում, որի շնորհիվ կուլակությունը որպես դասակարգ վերացվեց: Գյուղի սոցիալիստական վերակառուցմամբ արմատապես փոխվեցին հայ գյուղացու կերպարը, նրա կենցաղը, գործունեության եղանակը: Դուրս գալով իր երբեմնի փակ տնտեսության սահմաններից՝ սոցիալիզմի կառուցման տարիներին նա դարձավ նոր կյանքի կերտման ակտիվ գործիչը:

1936 թվականին սոցիալիզմի վերջնական հաղթանակը հավաստող նոր սահմանադրությամբ, Սովետական Հայաստանը՝ որպես ինքնուրույն հանրապետություն, մտավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության մեջ, որպես հավասարը՝ հավասարների հետ:

Սոցիալիզմի կառուցման հնգամյակներում մեր հանրապետությունում ևս կատարվեց իսկական կուլտուրական հեղափոխություն: Հանրապետության բնակչության գերակշռող մասը, որ խարխափում էր տգիտության ու խավարի մեջ, այդ տարիներին դարձավ գրագետ. բոլոր գյուղերում կառուցվեցին կամ բացվեցին դպրոցներ, անգրագիտության վերացման խմբակներ: Հայաստանի կոմկուսը մոբիլիզացնելով ամբողջ ինտելիգենցիայի ուժը, համառ ու քրտնաջան աշխատանքով փայլուն արդյունքների հասավ գիտության, արվեստի, կուլտուրայի բոլոր ասպարեզներում:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին հանրապետության աշխատավորները, այդ թվում և տասնյակ հազարավոր կոմունիստներ ու կոմերիտականներ մասնակցեցին ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մահու և կենաց կռվին: «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» լոզունգը դարձավ հանրապետության կուսակցական ու սովետական աշխատանքի կարևորագույն և առաջնահերթ խնդիրը: Հայաստանի կոմկուսը ձեռնարկեց բոլոր միջոցները ՍՄԿԿ Կենտկոմի հայրենապաշտպան առաջադրանքները ժամանակին և անթերի կատարելու համար: Կոմունիստներն ու կոմերիտականներն առաջինն էին կամավոր գրվում՝ ռազմաճակատ մեկնելու, հայրենիքը կրծքով պաշտպանելու:

Միայն 1941—1943 թվականներին Հայկոմկուսի 36849 անդամներից ավելի քան 20 հազարը մտան սովետական բանակի շարքերը և մասնակցեցին հայրենիքի ազատության համար մղվող հերոսամարտերին:

ՀԿ(բ)Կ Կենտկոմը, քաղաքային և շրջանային կոմիտեները գլխավորում էին հանրապետությունում ծավալված ռազմաճակատին ցույց տրվող համաժողովրդական օգնությունը: Միայն պատերազմի սկզբի մի քանի ամիսներում աշխատավորության կամավոր նվիրատվությունները ռազմաճակատին հասան 40 840 000 ռուբլու (կանխիկ դրամով և փոխառության պարտատոմսերով):

Հայաստանի արդյունաբերությունը կարճ ժամանակամիջոցում իրացրեց և սկսեց մասսայաբար թողարկել ռազմական արտադրանք: Բանվոր դասակարգը, գյուղացիությունը և ինտելիգենցիան կոմկուսի ղեկավարությամբ ապահովեցին թիկունքի անխափան աշխատանքը և ռազմաճակատի մարտական առաջադրանքների անթերի կատարումը: Հայ ժողովուրդը սովետական եղբայրական ժողովուրդների հետ ուս-ուսի, մեկ միասնական կամքով համախմբվեց ֆաշիզմի դեմ մղվող կռվում. Նրա զավակները սովետական բոլոր ժողովուրդների զավակների հետ միասին, թե՛ սովետական բանակի կազմում, թե՛ պարտիզանական ջոկատներում քաջաբար կռվեցին թշնամու դեմ, ցուցաբերելով անձնազոհության աննախադեպ օրինակներ: Ավելի քան

70 հազար հայ ռազմիկներ, այդ թվում՝ տասնյակ հազար կոմունիստներ արժանացան կառավարական պարգևների, 103 հոգու շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում. մեր ժողովուրդը պատերազմի տարիներին տվեց 60 գեներալ, երկու մարշալ և նավատորմի մեկ ծովակալ։

Պատերազմի ավարտից հետո ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ ժողկոմսովետը 1945 թվականի իրենց հեռագրում ասում են. «Հայրենական պատերազմի տարիներին հայ ժողովուրդը պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ։ Հայ ռազմիկները Սովետական Միության մյուս ժողովուրդների զավակների հետ միասին անձնվիրաբար պաշտպանում էին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը։ Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան անդուլ կերպով աշխատում էին թշնամու դեմ հաղթանակ նվաճելու համար»։

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո, ինչպես Սովետական Միության բոլոր ժողովուրդները, այնպես և հայ ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծագործական աշխատանքին։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը նոր թափ հաղորդեց հետպատերազմյան սոցիալիստական շինարարության մեծ գործին։ Հարկ է նշել, որ պատերազմի տարիներին ևս կոփվելով, ձեռք բերելով աշխատանքային կազմակերպական գործունեության հսկայական փորձ, ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն, քաղաքային, շրջանային կոմիտեները և սկզբնական կուսակազմակերպությունները հետպատերազմյան տարիներին այնպիսի վիթխարի աշխատանք կատարեցին, որ նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ չտեսնված չափերով փոխվեց հանրապետության տնտեսական, քաղաքական, կուլտուրական դեմքը։

Միայն հետպատերազմյան չորրորդ հնգամյակի տարիներին կառուցվեցին և շահագործման հանձնվեցին նորագույն տեխնիկայով հագեցված ավելի քան 50 նոր ձեռնարկություն։ Բեկում ստեղծվեց նաև գյուղատնտեսության մեջ, որն օրըստօրե զինվում էր գյուղատնտեսական նոր տեխնիկայով։ Հայաստանի բանվոր դասակարգի, գյուղացիության առաջավորները մասնակցեցին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ցուցահանդեսին։

Ընդառաջելով սփյուռքահայության հոծ զանգվածների հայրենիք վերադառնալու բուռն տենչին, Հայաստանի կառավարությունը ձեռնարկեց հայրենադարձությունը։ Սովետական կառավարությունը՝ մշտապես մտահոգված հայ ժողովրդի բախտով, խոշոր միջոցներ տրամադրեց հայրենադարձության կազմակերպմանը և հայրենադարձներին նյութապես օգնելուն։ 1947—1948 թվականներին մոտ 100 000 տարագիր հայեր վերադարձան հարազատ հայրենիք։

Հայաստանի կոմկուսը բոլոր միջոցները ձեռնարկեց հայրենադարձությունը կազմակերպված անցկացնելու, հայրենադարձներին հարազատ քաղաքացիներ դարձնելու համար։ Կարճ ժամանակամիջոցում նրանք լծվեցին հանրօգուտ աշխատանքի, ցույց տալով բարեխղճության, պարտաճանաչության լավագույն օրինակներ։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը հետպատերազմյան հնգամյակներում մշակեց ու կենսագործեց այնպիսի խոշոր ծրագրեր, որոնք հսկայական թափով առաջ տարան էկոնոմիկան, գիտությունը և կուլտուրան։

Այժմ հանրապետության արդյունաբերությունը մեկ օրում ավելի շատ արտադրանք է թողարկում, քան նախասովետական Հայաստանի արդյունա-



բերությունը մի ամբողջ տարում։ Մեր հանրապետությունում գործում են մոտ 600 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց արտադրանքը 120 անգամ գերազանցում է 1913 թվականի մակարդակը։ Այժմ, 1913 թվականի համեմատությամբ, արտադրվում է ավելի քան 700 անգամ շատ էլեկտրաէներգիա։ Հայաստանի գործարաններն ու ֆաբրիկաներն արտադրում են էլեկտրոնային մաթեմատիկական հաշվիչ մեքենաներ, մետաղահատ հաստոցներ, կոմպրեսորներ, ճշգրիտ սարքավորումներ, շարժական էլեկտրակայաններ, լայն սպառման ու սննդի արդյունաբերության բազմատեսակ ապրանքներ։

Սովետական Հայաստանն արդեն դարձել է միջազգային ցուցահանդեսների մշտական մասնակիցը՝ Լայպցիգում, Զագրեբում, Բուդապեշտում, Դամասկոսում, Պլովդիվում, այժմ էլ՝ Մոնրեալում։ Համաշխարհային շուկայում գնալով աճում է մեր հանրապետության արդյունաբերական ապրանքների պահանջարկը. 150 տեսակ ապրանք է արտահանվում աշխարհի 70 երկիր, այդ թվում՝ Անգլիա, Ֆրանսիա, Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետություն, Իտալիա, Շվեդիա, Ճապոնիա և այլն։

Պատմական այս կարճ ժամանակահատվածում մեր հանրապետությունում վեր խոյացան բազմաթիվ նոր քաղաքներ, արդյունաբերական կենտրոններ՝ Կիրովականը, Քաջարանը, Արթիկը, Հոկտեմբերյանը, Սպիտակը, Ստեփանավանը, Իջևանը, Չարենցավանը, Աբովյանը, Հրազդանը, Սևանը և այլն։ Անճանաչելիորեն զարգացել, ծաղկել, աճել է հանրապետության մայրաքաղաքը. Երևանն այժմ համարվում է աշխարհի գեղեցիկ քաղաքներից մեկը։

Այն հիրավի հայ ժողովրդի պարծանքն է։ Սովորաբար այդպիսի քաղաքները դարերով են կառուցվում, իսկ Հայաստանի աշխատավորների ջանքերով Երևանը կառուցվեց մի քանի տասնամյակում։

Այս բոլորը կատարվել է մեր փառապանծ բանվոր դասակարգի ձեռքով, նրա հմտությամբ, դասակարգ, որն այժմ ունակ է թողարկելու ժամանակակից ամենաբարդ տեխնիկայով հագեցած սարքավորումներ ու արտադրանք, ընդհուպ մինչև տիեզերանավերի առանձին մասերը։

Հայաստանի գյուղատնտեսությունը ետ չի մնում արդյունաբերությունից։ Ղեկավարվելով մեծ Լենինի ցուցումներով, Հայաստանում պլանավորվեց ու կառուցվեց ջրանցքների, ջրամբարների մի ամբողջ սիստեմ, որը ոռոգելի դարձրեց ավելի քան 253 հազար հեկտար հող։ Եթե մեզ մոտ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը 1913 թվականին ընդունենք 100, ապա այժմ այն աճել է ավելի քան 416 տոկոսով։ Այժմ 500-ից ավելի կոլտնտեսություններում և 220 սովխոզներում մշակվում են՝ խաղող, հացահատիկ, ծխախոտ, կարտոֆիլ, բանջարաբոստանային կուլտուրաներ, արտադրվում են անասնապահական մթերքներ։ Ամենակարևորն ու ակնբախը հայ գյուղացու աշխատանքի, կենցաղի, կենսամակարդակի, կուլտուրայի մեջ տեղի ունեցած հսկայական փոփոխությունն է, որը նրան դարձրել է արդի կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցը։

Հայ գյուղացու համար պատմության գիրկն են անցել գոյության պահպանության, հաց հայթայթելու համար քարի ու բնության դեմ մաքառելը։ Լքելով իր գետնափոր տնակը, նա կառուցել է տուֆաշեն լուսավոր բնակարան, էլեկտրականությունն ու գազը մտել են նրա կենցաղի մեջ, նա օգտվում է ռադիոյից, հեռուստացույցից, հեռախոսից և կուլտուրական այլ բարիքներից։

Առավել ևս ակնառու են գիտության, արվեստի, կուլտուրայի բնագավա-

ռում ձեռք բերած մեր հաջողությունները։ Եթե նախասովետական Հայաստանում գիտությունների ակադեմիայի մասին երազել անգամ չէր կարելի, այժմ Հայաստանի գիտությունների ակադեմիան (որն ստեղծվել է մոտ քառորդ դար առաջ) միավորում է 30 գիտահետազոտական ինստիտուտներ, ուր աշխատում են 4185 մարդ, որոնցից 1350-ը գիտական աշխատողներ են։ Հայաստանի գիտնականների ներդրումը համաշխարհային գիտության գանձարանը հայտնի է ոչ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանում։ Ավելի քան 9 հազար գիտական աշխատողներ գիտահետազոտական աշխատանք են տանում ինստիտուտներում, լաբորատորիաներում, արտադրության մեջ։

Մեր հանրապետության այժմյան սովորողների թիվը հավասար է 1920 թվականի ողջ Հայաստանի բնակչության թվին։ Սովետական իշխանության տարիներին ստեղծված է 12 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնք ամեն տարի տալիս են ավելի քան 4 հազար բարձրորակ շրջանավարտներ։ Այժմ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում աշխատում են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 112 հազար մասնագետներ։

Ժամանակին ստեղծելով ազգային ինժեներա-տեխնիկական կադրեր, հանրապետությունը կարողացավ գործարկել բարդ իրացվող այնպիսի արդյունաբերական ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական, ճշգրիտ սարքավորումների արտադրությունը և այլն։

Հանրապետության բժիշկների թիվը հասնում է 6500-ի, ուսուցիչներինը՝ 27000-ի։ Հանրապետության բնակչությանն սպասարկում են ռադիո-հեռուստացուցային 630 հազար կետ, ինչպես և 30 առողջարաններ ու հանգստյան տներ։ Հայաստանում հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն, քրդերեն լույս են տեսնում 150 անուն թերթ և այլ պարբերականներ։

Սովետական իշխանության տարիներին վիթխարի գործ է կատարված անցյալի կուլտուրական ժառանգության քննադատական մշակման ու այն ժողովրդի սեփականությունը դարձնելու բնագավառում։ Պատմության, գրականության, արվեստի բոլոր ճյուղերի, գիտության, ճարտարապետության, կիրառական արվեստի մարզերում ստեղծված հայ աշխատավորության հոգևոր գանձերը վաղուց իրենց արժանի տեղն են գրավել մեր հարուստ կուլտուրայի համակարգում։ Ոչ միայն արևելահայ, այլև արևմտահայ մշակույթի բոլոր ականավոր գրողների ու ստեղծագործողների երկերը հրատարակված ու վերահրատարակված են մեծ տպաքանակով։

Հոկտեմբերյան հեղափոխության կենարար շնչով տոգորված սովետահայ պոեզիան ու արձակն ընթացան հանճարեղ Չարենցի հարթած ստեղծագործական հունով, որի սքանչելի արգասիքը մեր ծաղկած նոր գրականությունն է։ Գոհունակությամբ կարող ենք ասել, որ Սովետական Միության մեծ ընտանիքի կերտած կուլտուրայի համաշխարհային թատերաբեմում մեր հանրապետությունն իր ակնառու տեղն ունի։ Վարպետորեն արտացոլելով սովետական կյանքի ստեղծարար պաթոսն ու հերոիկան, Հայրենական պատերազմի դաշտում ու թիկունքում կատարած մեր ժողովրդի զավակների աննախընթաց սխրանքները, սովետական գրողներն ու արվեստագետները մեծ դեր խաղացին կոմունիզմ կառուցող ժողովրդի հոգևոր աշխարհի կատարելագործման մարզում։

Հոկտեմբերի հաղթանակից հետո էր, որ մեծապես ծաղկեց սովետահայ



արվեստը։ Դեռևս 1933 թվականին բացվեց Հայաստանի օպերայի և բալետի պետական թատրոնը, որը Սունդուկյանի անվան պետական դրամատիկական թատրոնի հետ միասին, հսկայական դեր խաղաց մեր արվեստի հետագա զարգացման գործում։

Սովետական իշխանության տարիներին էր, որ Սովետական Միության և աշխարհի բազմաթիվ ժողովուրդներին հայտնի դարձավ սոցիալիստական հայ ազգի ստեղծագործ հանճարը՝ հանձին մեր տաղանդավոր երաժիշտների, նկարիչների, արտիստների ու գիտնականների։ Այսօր ողջ աշխարհին հայտնի են վարպետ Սարյանի անմահ գործերը։

Հայաստանի ճարտարապետները սովետական իշխանության տարիներին բազմաթիվ հիանալի կոթողներ են տվել, որոնք հիացմունք են պատճառում յուրաքանչյուր մարդու։

Արևի լույսի պես պարզ է, որ տնտեսության, կուլտուրայի, շինարարության և առհասարակ հասարակական մեր կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերված հոյակապ նվաճումներով պարտական ենք Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթությանը, սովետական կարգերի ամրապնդմանն ու ՍՄԿԿ վարած լենինյան ազգային քաղաքականությանը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանը և մեր ժողովրդի հանդեպ ռուս ժողովրդի ցուցաբերած անշահախնդիր օգնությանը։

Բոլոր փոքր ու մեծ գործերը՝ ոռոգման սիստեմների ստեղծումը, գործարանների, ֆաբրիկաների, թատրոնների, դպրոցների, հիվանդանոցների, ակումբների, գրադարանների կառուցումը, ինստիտուտների հիմնադրումը, կոլտնտեսությունների ու սովխոզների կազմակերպումը, նրանց գործունեության ամենօրյա ղեկավարությունը, ժողովրդի բարեկեցության բարձրացման, դաստիարակության խնդիրները, գիտության, գրականության, արվեստի, կուլտուրայի բոլոր բնագավառները և բազմապիսի այլ հարցեր ամենայն մանրամասնությամբ ուսումնասիրել և պատշաճ մակարդակով ղեկավարել է Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, որն օրգանապես և անքակտելիորեն կապված է իր ժողովրդի հետ, արտահայտում է աշխատավորության արմատական շահերը։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը ևս աճել ու զարգացել է անցած տարիների ընթացքում։ Եթե 45 տարի առաջ, առաջին համագումարի ժամանակ հայ կոմկուսի շարքերում կային 6 հազար անդամ-թեկնածու, այժմ մեր կուսակցությունն ունի 115 հազար անդամ։ Սակայն միայն քանակական աճը չէ, որ վկայում է Հայաստանի կոմունիստական կուսակցության բարձր մակարդակի մասին, այլև նրա կազմում տեղի ունեցած որակական խոր փոփոխությունները։

Մեր կուսակցության կազմում այժմ կան 27416 բանվոր, 15124 կոլտնտեսական, 21742 ծառայող, 12230 ինժեներա-տեխնիկական աշխատող, 3150 գյուղատնտեսության մասնագետ, մոտ 4000 բժիշկ, 9674 ուսուցիչ, մոտ 30 000 բարձրագույն և թերի բարձրագույն կրթությամբ կոմունիստներ, գիտությունների 164 դոկտոր ու պրոֆեսոր, գիտության 1343 թեկնածուներ, 456 անդամ՝ նախահեղափոխական ստաժով։

Սույն թվերը ցույց են տալիս մեր կուսակցության մեջ ընդգրկված բազմաթիվ մասնագետների ոչ միայն քանակը, այլև այն, որ այս նվաճումը ևս ՀԿԿ կազմակերպությունների ու նրա ղեկավար մարմինների եռանդուն ու բեղմնավոր գործունեության արգասիքն է։

Այս պատկառելի կայմը լայն հնարավորություններ է ընձեռում Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմակերպություններին պատշաճ հմտությամբ վարելու կոմունիստական շինարարության վեհ գործը և լուծելու կոմունիզմի կառուցման ճանապարհին ծառացած ամենաբարդ խնդիրները։

Մեծ են Հայաստանի աշխատավորության հաջողությունները սովետական իշխանության տարիներին։ Սակայն ավելի մեծ ու խոստումնալից խնդիրներ են ծառանում մեր առջև, որոնք լուծման կարոտ են։ Շարունակելով տնտեսության անկանգ վերելքի կուրսը, Հայկոմկուսը գործադրում է բոլոր միջոցներն արտադրության տարբեր բնագավառներում հետևողականությամբ իրագործելու տնտեսական նոր ռեֆորմը։ Իսկ դա նշանակում է՝ տնտեսական շինարարության բոլոր օղակների գործունեության կատարյալ պլանայնություն և նրանց զարգացման անհամամասնությունների բացառում. ներդրվող ու ներդրված կապիտալ միջոցների շահավետ օգտագործում՝ աշխատողների անձնական շահագրգռվածության ապահովմամբ հանդերձ. գիտության ու տեխնիկայի նորագույն պահանջների համաձայն արտադրական պրոցեսների ու կառավարչական ապարատի անընդմեջ կատարելագործում և աշխատանքի արտադրողականության նշանակալի բարձրացում։

Պայքար աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսության շահութաբեր վարման, արտադրության կուլտուրայի զարգացման և ինքնարժեքի իջեցման, աշխատանքային պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, շինարարության պլանների կատարման, աշխատավորության բարօրության բարգավաճման և նրանց կուլտուր-կենցաղային պահանջմունքների բավարարման համար գլխավորն է կուսկազմակերպությունների գործունեության մեջ։ Լուծելով այս կարևորագույն խնդիրները, Հայաստանի կոմունիստները պատվով կկատարեն կոմունիզմի կառուցման պատմական պլանը և Սովետական Միության եղբայրական հանրապետությունների հետ միասին, ՍՄԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ, ավելի մեծ եռանդով ու կազմակերպվածությամբ առաջ կմղեն երկրի աշխատավորության կենսամակարդակի ու հոգևոր կուլտուրայի ծաղկման գործը։

Հայաստանի կոմունիստական կուսակցությունն անցել է փառահեղ ուղի, իր ճանապարհին հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, կոփելով իր շարքերը։ Այժմ ավելի ամրակուռ, ավելի փորձված, միասնական շարքերով՝ որպես Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջոկատներից մեկը, անշեղ ընթանում է իր հարազատ ժողովրդի ավանդարդում, պատվով կատարելով իր առջև դրված հոյակապ ու բարդ խնդիրները։






ՋՈՆ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ

Հիսուն տարի առաջ, երբ մոլեգնում էր ժողովրդասպան համաշխարհային պատերազմը, երբ միլիոնավոր մարդիկ կռվում ու զոհվում էին իրենք էլ չիմանալով թե ինչու, երբ նրանց արյան գնով կապիտալիստները հեքիաթային հարստություն էին դիզում, այն պահին, երբ թվում էր, թե վերջ չկա կործանարար արհավիրքին, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության համազարկերը մինչև հիմքերը ցնցեցին հին աշխարհը։ Հիրավի, Ջոն Ռիդի պատկերավոր խոսքերով՝ տասն օրը, որ ցնցեցին աշխարհը, համաշխարհային պատմության նոր դարաշրջանն ազդարարեցին։

Բոլոր ժամանակների մեծագույն հեղափոխականի՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի գլխավորած այդ հեղափոխությունը նշանավորեց սոցիալիստական հասարակության ընձալի սկիզբը։ Պատմական ոչ մի իրադարձություն չի կարող համեմատվել Հոկտեմբերյան հեղափոխության հետ համաշխարհային զարգացման ընթացքի վրա ունեցած իր վերափոխող ներգործությամբ։ Իսկ շնորհիվ 1917 թ. Հոկտեմբերյան հեղափոխության,— ասում է Ժակ Դյուկլոն,— սոցիալիզմը կյանքի կոչվելով, դարձավ միս ու արյուն։

Սառույցը ջարդված էր, ուղին բացված, ճանապարհը նշված՝ այսպես պատկերավոր է բնորոշել Վ. Ի. Լենինը Հոկտեմբերյան հեղափոխության միջազգային նշանակությունը։ Նա գտնում էր, որ մեր հեղափոխությունը խորապես ինտերնացիոնալիստական է, կրում է ոչ թե տեղական, ազգային առանձնահատուկ նշանակություն, այլ կիրառելի է միջազգային լայն մասշտաբով, ուսանելի աշխարհի բոլոր հեղափոխական ուժերի համար։ Դա մի օրինակ

էր, թե պրոլետարիատն ինչպես պետք է իրականացնի հին հասարակարգի գերեզմանափորի իր միսիան, վերափոխի այն, նվաճի ազգային և սոցիալական ազատագրություն։ Մեծ Հոկտեմբերը խթանեց բոլոր ճնշվածների պայքարը, համոզիչ օրինակ դարձավ աշխարհում մեծ փոփոխությունների համար։

Առաջին իսկ օրերից, երբ սովետական կառավարությունը հրապարակեց խաղաղության և Հողի մասին դեկրետները, երբ պարզ դարձան սոցիալիստական բազմազգ պետության կառուցման այն սկզբունքները, որոնք արձանագրված էին «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում», հռչակվեց միջազգային հարաբերությունների, էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզներում մեր կուսակցության որդեգրած քաղաքականությունը՝ լենինյան գաղափարները համակեցին միլիոնավոր մարդկանց հոգեկան աշխարհը։ Նրա ալիքները հասան երկրագնդի հեռավոր անկյունները։ 1918—1919 թթ. հեղափոխություններ տեղի ունեցան Գերմանիայում, Ավստրո-Հունգարիայում և այլուր։ Թեև դրանք չավարտվեցին հաղթանակով, սակայն կործանեցին դարեր շարունակ տիրապետած հաբսբուրգների և հոհենցոլերնների դինաստիաները։

Հզոր հարված հասցվեց իմպերիալիզմի ամբողջ սիստեմին, սկիզբ դրվեց գաղութային սիստեմի խորտակմանը։ Հնդկաստանում թե Չինաստանում, Ինդոնեզիայում թե Իրանում, ամենուրեք Արևելքում հակագաղութային շարժումը թևակոխեց իր զարգացման նոր փուլը, նորանոր միլիոններ ոտքի կանգնեցին՝ թոթափելու գաղութակալության շղթաները։

Հոկտեմբերյան հեղափոխությունն իր կնիքը դրեց անցած հիսուն տարիների հասարակական կյանքի համարյա բոլոր կողմերի ու պրոցեսների վրա։ Ամենաբուռն, մարդկության ճակատագրի տեսակետից ամենաբարդ և ամենահակասական այդ ժամանակաշրջանն ընթացավ Հոկտեմբերի նշանաբանով։

Աշխարհում տեղի ունեցած տեղաշարժերը, մեր ժամանակի հիմնական բովանդակությունը, գլխավոր ուղղությունները և առանձնահատկությունները պայմանավորված էին հենց այն տենդենցներով, որոնք կյանքի կոչվեցին մեր հեղափոխությամբ։

I

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները պատմության մեջ առաջինը ձեռնամուխ եղան սոցիալիզմի կառուցմանը։ Համաշխարհային կոմունիստական շարժումը, առաջադեմ մարդկությունը ստացան սոցիալիստական սկզբունքներով հասարակության գիտական կազմակերպման, հեղափոխության նվաճումների պաշտպանության հարստագույն փորձ։ Ամենից առաջ այդ է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության և ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման, մեր երկրի աշխատավորների համաշխարհային-պատմական հերոսության միջազգային նշանակությունը։ Կոմունիստների գլխավորած սովետական ժողովուրդը առաջինն ընթացավ տակավին անծանոթ ուղիով, նոր կյանքի կառուցման, հասարակական մեծագույն վերափոխությունների ճանապարհով։ Անհամեմատ դյուրին էր կապիտալի շահագործողական տիրապետության տապալումը, քան սոցիալիստական հասարակության կառուցման վիթխարի ու բարդ պրոցեսների պլանաչափ կառավարումը, հասարակական կյանքի բոլոր բնա-



գավառների արմատական վերափոխման ու զարգացման ապահովումը։

Միապետական կարգեր, մեծապետական շովինիզմ, պարտքերի մեջ խրված, կողոպտված աղքատ գյուղացիություն, հետամնաց արդյունաբերություն, իրավազուրկ պրոլետարիատ, ազգային խոր ներհակություններ, չդադարող ռազմական ընդհարումներ, ցարական դաժան բռնակալություն՝ այսպիսին էր անցյալում ռուսաստանյան դառն իրականությունը։ Ահա թե ինչ էին ժառանգել սոցիալիզմի կառուցման առաջին էնտուզիաստները։

«Հեղափոխության իրագործման, պատմության կողմից մեր առջև դրված վիթխարի խնդիրների լուծման գործում,— ասված է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոբելյանական թեզիսներում,— բանվոր դասակարգը, ամբողջ սովետական ժողովուրդը ցուցաբերեցին անսահման նվիրվածություն կոմունիզմի գաղափարներին, արիություն և անձնվիրություն, բարձր գիտակցականություն և կազմակերպվածություն»։

Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինն իր ամբողջ ուժն ու եռանդը, իր հանճարեղ մտքի թռիչքը գործադրեց Ռուսաստանում սոցիալիզմի կառուցման ուղիները գիտականորեն հիմնավորելու, գործնական աշխատանքի ծրագիր մշակելու համար։ Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը մի նոր, անգնահատելի ավանդ էր հեղափոխական տեսության գանձարանում։ Մեծ առաջնորդը սովետական իշխանության առաջին տարիներին անձամբ ղեկավարեց հետամնաց, հսկայական երկիրը վերափոխելու, այն հզոր սոցիալիստական տերության վերածելու ուղղությամբ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության գործունեությունը։ Երկրի ինդուստրացման, գյուղի սոցիալիստական վերակառուցման, մեծագույն կուլտուրական հեղափոխության լենինյան պլանի կենսագործումը հսկայական ազդեցություն ունեցան համաշխարհային զարգացման վրա։

Հեշտ և սահուն չի եղել մեր անցած ուղին։ Բազմաթիվ խոչընդոտներ և դժվարություններ են հաղթահարվել հիսունամյա մեր ճանապարհին։

Սովետական Միության ժողովուրդները մեծ զրկանքներ են կրել, զոհեր են տվել, մինչև որ հիսուն տարվա ընթացքում կառուցել են նոր հասարակարգի հոյակապ շենքը։ Ընդ որում, զարգացումը միշտ չէ, որ հարթ է ընթացել, կատարվել են սխալներ, տեղ են գտել մոլորություններ ու անհաջողություններ։ Փոքր չէ այն գինը, որ մեր ժողովուրդը վճարել է այդ ամենի համար։ Բայց այդ բարձր գինը նա վճարել է նաև մյուս երկրների աշխատավորների համար, որոնք սովորում են Սովետական Միության և նրա կոմունիստական կուսակցության մեծ նվաճումների փորձի վրա։

Ներկա դարում, կապի ու հաղորդակցության, հեռուստատեսության ու փոխադարձ շփման ժամանակակից միջոցները աշխարհի բոլոր անկյուններում հայտնի են դարձրել մեր երկրի աննախընթաց նվաճումները։ Այժմ և ոչ մի թշնամական հերյուրանք չի կարող նսեմացնել մեր երկրի վերընթաց շարժման ողջ հմայքը, նրա ձգողական ուժը։

Մեր շինարարության թափը վաղուց սթափեցրել է ամենաթերահավատներին անգամ։

Կոմունիստական կուսակցության, մեր երկրի աշխատավոր զանգվածների հիրավի առասպելական մաքառումները կարճ ժամանակում բարեփոխեցին երկրի տնտեսությունը։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին, մոտ 12 տարում, մեր հայրենիքում այնպիսի մեծ մասշտաբների

ինդուստրացում իրականացվեց, որի համար կապիտալիստական առաջավոր
պետություններին հարյուր տարի էր պետք եղել։

Վ. Ի. Լենինը բազմիցս անդրադարձել է այն մտքին, որ միջազգային
հեղափոխության վրա մեր ազդեցությունը կախված է մեր երկրում տնտե-
սական քաղաքականության հաջողությունից։ Ամբողջ աշխարհը ուշադրու-
թյամբ հետևում էր սոցիալիստական շինարարության առաջին փորձի իրա-
կանացման ընթացքին։ Ջափազանց մեծ և պատասխանատու էր պատմու-
թյան կողմից մեր կուսակցության ու ժողովրդի առջև դրված խնդիրների
համաշխարհային նշանակությունը։ Սակայն թույլ էր սոցիալիզմի կառուց-
ման նյութական, կուլտուրական հիմքը։ Հսկայական էր հեղափոխական պա-
թոսի, կուսակցության ծավալած վիթխարի գործունեության և տեխնիկա-
տնտեսական տեսակետից հետամնացության միջև եղած ճեղքվածքը։

Մեր երկիրն անցավ դասակարգային կատաղի մարտերի կրակների մի-
ջով, հաղթահարեց քաղաքական ու տնտեսական փորձությունները և այսօր-
վան հասավ է՛լ ավելի կոփված, ուժեղացած ու համախմբված։ Այժմ սո-
ցիալիզմի կառուցման կեսդարյա փորձը հաստատում է այն ճշմարտությու-
նը, թե մեր նվաճումները ինչպիսի հսկայական նշանակություն ունեն հա-
մաշխարհային սոցիալիստական հեղափոխության հետագա զարգացման,
կոմունիստական գաղափարների նորանոր հաղթանակների համար։

II

Հոկտեմբերյան հեղափոխության գաղափարների, մեր երկրում սոցիա-
լիզմի գործի ջերմ երկրպագուներ դարձան աշխարհի տարբեր ժողովուրդ-
ների կուլտուրայի ու գիտության ամենակարկառուն ներկայացուցիչները։
Անկեղծ համակրանքի, անհուն նվիրվածության բազմաթիվ օրինակներ են
արձանագրված վերջին հիսուն տարվա պատմության էջերում մեծ Հոկտեմ-
բերի գործի նկատմամբ։ «Թվում էր, թե ռուս ժողովրդի համար ելք չկար
ցարիզմի խավարից,— գրել է Անատոլ Ֆրանսը։— ...բայց Ռուսաստանը մի
երկիր է, ուր անհնարինն է իրականացվում։ Բոլշևիկներն այդ անհնարինն
իրագործում են մինչև վերջը»։ Ջին մեծ հեղափոխական-դեմոկրատ Սուն
Յաթ-սենը ռուսական հեղափոխությունը համարում էր «մարդկության մեծ
հույսի ծնունդը»։ Իտալական բանվորական շարժման առաջնորդ Անտոնի
Գրամշին չէր սխալվում, նշելով, թե «Ռուսաստանում է սկսվում ապագայի
պատմությունը, Ռուսաստանում է ծնվում նոր աշխարհի կյանքը»։

Մեր մոլորակի հյուսիսում թե՛ հարավում, արևմուտքում թե՛ արևելքում
բոլոր ժողովուրդների առաջադեմ զավակներն իրենց համարել և համարում
են մեծ Հոկտեմբերի գաղափարների հետևորդներ, դրանով իսկ հաստատե-
լով մեր հեղափոխության միջազգային բնույթը, նրա թողած անջնջելի ազ-
դեցությունը։ Եվ օրինաչափ է, որ մեր ժողովրդի կյանքում հաջողություն-
ների և ուրախությունների, դժվարությունների ու տխրության պահերին հո-
գով ու սրտով միշտ մեզ հետ են եղել աշխարհի լավագույն մարդիկ, սո-
ցիալիզմի գործին նվիրված ինտերնացիոնալիստ մարտիկները։

1930 թ. հեղափոխական գրողների միջազգային բյուրոն դիմեց համաշ-
խարհային գրականության ու արվեստի մի շարք դեմքերի հետևյալ հարցով.
«Ինչպիսի՞ն կլինի Ձեր դիրքը ՍՍՀՄ-ի դեմ իմպերիալիստական պետու-



թյունների կողմից պատերազմ հայտարարելու դեպքում»։ Ստացված պա-
տասխանները վկայում են այն խոր համակրանքը, որ տածում էին Հոկտեմ-
բերի հայրենիքի նկատմամբ համաշխարհային կուլտուրայի առաջադեմ գոր-
ծիչները։ Բեռնարդ Շոուն պատասխանել էր, թե Սովետական Միության դեմ
պատերազմի դեպքում իրեն կկախեին։ Ստեֆան Ցվեյգը՝ յուրաքանչյուր
բանական մարդու պարտքն էր համարում ամեն գնով խոչընդոտել Ռուսաս-
տանի վրա ռազմական հարձակումը։ Մատե Զալկան պատասխանել էր.
«Ես պարգևատրված եմ «Կարմիր դրոշի» շքանշանով քաղաքացիական պա-
տերազմում իմ գործունեության համար։ Ես կաշխատեմ արժանանալ ևս
մեկ այդպիսի տարբերանշանի։ Ես համոզված եմ, որ Սովետական Միու-
թյան դեմ իմպերիալիստների պատերազմն ավարտվելուց հետո ես չեմ լինի
միակ ոչ ռուս գրողը, որը պարգևատրված կլինի «Կարմիր դրոշի» շքա-
նշանով»։ Էպտոն Սինկլեր — «Ես գտնում եմ, որ սովետական կառավարու-
թյունը ավարտում է մարդկային պատմության մեծագույն նվաճումներից
մեկը և յուրաքանչյուրը, ով հավատում է առաջադիմությանը, պետք է
պաշտպանի նրան, եթե կապիտալիստական աշխարհը հանդես գա սովետա-
կան կառավարության դեմ»։ Աննա Զեգերս — «Սովետական Միության հետ
պատերազմի դեպքում ամեն մի կարգին մարդու պարտքն է պարզ և որո-
շակիորեն կանգնել Սովետական Միության կողմում և պաշտպանել նրան
բոլոր ուժերով»։

Այս օրինակները վկայում են մեր հեղափոխության հիրավի միջազգա-
յին բնույթը, նրա խոր ներգործությունն աշխարհի բոլոր անկյուններում,
նրա ինտերնացիոնալ նշանակությունը։ Եվ երբ սովետական ժողովուրդը
մահու և կենաց կռիվ էր մղում գերմանաֆաշիստական հորդաների դեմ, աշ-
խարհի առաջադեմ գործիչները ողջունում էին նրա մաքառումները, համե-
րաշխում նրա հետ, քաջալերանքի և կորովի խոսք ուղղում նրան։ Լիոն
Ֆեյխտվանգերը 1942 թ. հունիսին գրում էր. «Կարմիր Բանակի յուրաքան-
չյուր հաղթանակ, յուրաքանչյուր մեծ սխրագործություն ոչ միայն խորտա-
կում է բարբարոսների ռազմական մեքենան, այլև խորտակում է նախա-
պաշարումների այն հրեշավոր ամրոցը, որը Սովետական Միության դեմ
ստեղծել են չարությունն ու նախանձը»։

Ալբերտ Էյնշտեյնը 1943 թվականի փետրվարի 6-ին «հսկայական հար-
գանքով և հիացմունքով» ողջունել է կարմիր բանակի և նավատորմի
25-րդ տարելիցը, որոնք «հաջողությամբ պաշտպանում են սովետական կուլ-
տուրան և արդյունաբերության հիասքանչ նվաճումները և որոնք հեռու վա-
նեցին մարդկային առաջադիմության ապագա զարգացման մահացու սպառ-
նալիքը»։

Հոկտեմբերյան հեղափոխությունը, նրա գաղափարներն այսօր առավել
ևս թանկ են ու հարազատ աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց համար։ Այս
տարվա մայիսին «Иностранная литература» ամսագրի հարցաթերթիկին
արձագանքած համաշխարհային բազմաթիվ գործիչների պատասխաններն
ակնբախորեն այդ են վկայում։

Ֆիլիպ Պոնոսկին (ԱՄՆ) գրում է. «Մարդկությունը հավիտյան պար-
տական է երեկվա Ռուսաստանի տղամարդկանց, կանանց և երեխաներին,
որոնք գրոհով վերցրին Ձմեռային պալատը, որոնց երեխաները հետո կանգ-

նեցրին Հիտլերին Մոսկվայի և Ստալինգրադի տակ և որոնց թոռները կառուցեցին այդպիսի անխորտակելի ամրոց՝ ընդդեմ համաշխարհային հետադիմության, պատերազմի և մահվան ուժերի»: Պրոֆ. դ-ր Ստեփան Ժուլկևսկին (Լեհաստան) պատասխանել է. «Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը փոխեց մարդկության պատմության ընթացքը»: Իսկ Մարտին Նագը (Նորվեգիա)՝ «Ռուսական հեղափոխությունը շրջադարձային կետ հանդիսացավ մարդկության պատմության մեջ»:

Այսօր ակնհայտ է մի բան. Հոկտեմբերի գաղափարների աճող ազդեցությունը, Սովետական Միության, սոցիալիստական ամբողջ սիստեմի անվիճելի նվաճումները ամուր պատնեշներ են քաշում բուրժուազիայի առջև, մշտական ճգնաժամի մեջ պահում հակակոմունիզմի, հակասովետիզմի իմպերիալիստական ողջ սիստեմը: Սոցիալիզմի անշեղ վերելքը փոխել է չափանիշները, մեր գաղափարական ու դասակարգային հակառակորդներին ստիպել հրաժարվել նախկին ճակատային գրոհներից, մանևրել, դիմել խորամանկությունների: Սոցիալիզմի հմայքը իմպերիալիզմի ջատագովներից խլել է նրանց հիշողությունը: Ապա հիշենք, թե կապիտալիստական աշխարհի մեծերը, նրանց կամակատար մամուլը 20-ական թվականներին ինչե՞ր էին գրում սոցիալիզմի առաջին երկրի, սովետական իշխանության հասցեին: Նրանք աղմկում էին Հոկտեմբերյան հեղափոխության «պատահական» բնույթի մասին, փորձում իրենք իրենց համոզել, թե սովետական իշխանությունը հաստատվել է «ո՛չ լուրջ» և «ո՛չ երկար ժամանակով», որ «քաոսի» փոխարեն նորից կհաստատվի իրենց ուզած «կարգ ու կանոնը»:

Ամերիկյան ժուռնալիստներն են հաշվել, որ միայն «Նյու-Յորք Թայմս» թերթը սովետական իշխանության երեք տարիներին ավելի քան հարյուր անգամ գրել է նրա մոտալուտ անկման մասին: Նրա էջերում 90 անգամից ավելի հայտարարվել է սովետական կարգերի անխուսափելի վախճանի մասին: Հինգ անգամ հրապարակվել են «ստուգված» հայտարարություններ, թե սովետական «ռեժիմը դատապարտված է», 14 անգամ՝ թե այդ ռեժիմը «կործանման եզրին» է, երեք անգամ՝ այդ անկումը «Նյու-Յորք Թայմսի» մարգարեների համար «ակնհայտ է» եղել: 50 տարի անց, նույն «Նյու-Յորք Թայմսը» այս տարվա հունվարի տասին գրում էր. «Այսօր Սովետական Միությունը հանդիսանում է աշխարհում երկու ամենահզոր և ամենաազդեցիկ պետություններից մեկը. Նրա ժողովրդի համար ապահովված է Ռուսաստանի ամբողջ պատմության ընթացքում ամենաբարձր կենսամակարդակը, և գիտության, տեխնիկայի, երաժշտության ու գրականության մեջ Սովետական Միության ավանդի շնորհիվ ամբողջ աշխարհն ավելի հարուստ է դարձել»:

Այժմ իրենց իսկ՝ բուրժուական գրչակների համար ծիծաղելի կլինի կարդալ ժամանակի՝ մերժված և սոցիալիզմի հաղթարշավով պատմության աղբարկղը նետված անհեթեթությունները: Մեր գաղափարական հակառակորդները հիմա խուսափում են ժխտել Հոկտեմբերյան հեղափոխության միջազգային նշանակությունը: Նրանցից շատերը նույնիսկ զերծ չեն մնացել Հոկտեմբերի, նրա գաղափարների, սոցիալիզմի հաջողությունների ազդեցությունից: ԱՄՆ-ի Պրինստոնի համալսարանի պրոֆ. Ջեյմս Գ. Բելինգտոնն այժմ արդեն չի խորշում խոստովանել այն հսկայական տեղը, որ աշխարհի հասարակական-քաղաքական մտքում հատկացվում է 1917 թ. Հոկտեմբեր-



յան հեղափոխությանն ու նրա հետևանքներին: «Մինչդեռ XIX դարի մտածողի համար գլխավոր խնդիրը վերաբերմունքն էր ֆրանսիական հեղափոխության նկատմամբ,— գրում է ամերիկյան պրոֆեսորը,— ապա ժամանակակից մարդու համար կենտրոնական խնդիրը ռուսական հեղափոխության գնահատումն է: Վերջին խնդիրը դարձել է շատ ավելի որոշիչ, քանի որ այժմ երկրագնդի վրա համարյա մեկ միլիարդ մարդ իրեն հայտարարում է ռուսական հեղափոխության ժառանգորդ և պաշտպան» (Вопросы истории КПСС, 1967, № 6, стр. 5):

Ապա վերհիշենք քաղաքացիական պատերազմի տարիներին Չերչիլի և Կլեմանսոյի հայտարարությունները, նրանց հեռագրերը ռուսական հակահեղափոխության առաջամարտիկներ գեներալ Միլլերին ու ադմիրալ Կոլչակին, Կերենսկու և Սազանովի հավաստիացումները Փարիզում սովետական իշխանության մոտալուտ վախճանի մասին, կամ Քերզոնի լավատեսական համոզմունքը Սովետական իշխանության «մի քանի շաբաթ դիմանալու» վերաբերյալ: Եվ հետո լսենք ամերիկյան ոչ անհաշտ սենատոր Ֆուլբրայթին այսօր, որին, իհարկե, չի կարելի կոմունիզմի համակիր նկատել: «Կոմունիզմի հաջողությունը որպես աշխարհի հեղափոխական ուժ...,— ասում է նա,— հետևանք է Սովետական պետության ազդեցության ու օրինակի, որը... ընդամենը մեկ սերնդի կյանքի ընթացքում հետամնաց Ռուսաստանը վերածեց ժամանակակից հզոր արդյունաբերական տերության»:

Ժամանակի ընթացքում ավելի ու ավելի դժվար է դառնում լռության մատնել մեր երկրում սոցիալիստական հեղափոխության գաղափարների հսկայական ազդեցությունը աշխարհի բախտի վրա: Դա արդեն խոստովանում են սոցիալիզմի բացահայտ թշնամիները:

«Մենք,— Համոզման ստրատեգիան գրքում գրում է ամերիկյան բուրժուական գաղափարախոս Մեերհոֆը,— ընդհարվեցինք կոմունիզմի վտանգի հետ, հենց որ նա ծնվեց հիսուն տարի առաջ: Բայց, և՛ այսօր, և՛ ամեն օր այդ սպառնալիքն ավելի է, քան նա անցյալ տարի էր, ավելի է, քան անցյալ ամիս, քան անցյալ շաբաթ... Կոմունիզմը տեր դարձավ տերիտորիաների և կողմնակիցներ նվաճեց շատ ավելի արագ, քան մարդկության պատմության մեջ մի որևէ կրոն կամ այլ քաղաքական շարժում»:

Այսպիսի խոստովանությունները, իհարկե, չեն նշանակում, որ հակակոմունիստները զենքը վայր են դրել: Որպեսզի նսեմացնեն Հոկտեմբերի պատմական դերը, գտնվել են մարդիկ, որոնք իրենց գրքերում փորձում են «ապացուցել», թե առանց հեղափոխության Ռուսաստանում «մոդեռնացման» պրոցեսը կանցներ ավելի լավ և հումանիստորեն: Հակակոմունիզմի գաղափարախոսներից ոմանք շատախոսում են սովետական հասարակության «ոչ սոցիալիստական» բնույթի, իսկ ուրիշները՝ հեղափոխությունից հետո մեր հասարակարգի ինչ-որ վերասերման մասին: Այս ամենի միտումը մեկն է՝ վարկաբեկել սոցիալիստական հասարակարգը, ժխտել Հոկտեմբերյան հեղափոխության պատմական օրինաչափությունը, նսեմացնել և խեղաթյուրել նրա համաշխարհային-պատմական նշանակությունը: Սակայն կյանքը հերքեց բուրժուական գուշակների հերյուրանքները:

## III

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմվելը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո պատմական

ամենամեծ իրադարձությունը հանդիսացավ: Սոցիալիզմի ուղին թևակոխած երկրներում նոր հասարակարգի կառուցումն ընթացավ անհամեմատ ավելի բարենպաստ պայմաններում: Նրանք հենց սկզբից հենվեցին Հոկտեմբերի հայրենիքի, սոցիալիստական համագործակցության վրա: Իրականացավ Կարլ Մարքսի կանխատեսումն այն մասին, որ Ռուսաստանում հեղափոխության հաղթանակով «կփոխվի ամբողջ Եվրոպայի դեմքը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, հ. 19, էջ 123—124, ռուս. հրատ.), որ ռուսական հեղափոխությունը «վիթխարի քայլ» կլինի բոլոր երկրների բանվորների կյանքում, «ընդհանուր նպատակի՝ աշխատանքի համընդհանուր ազատագրման ճանապարհին» (Նույն տեղը, էջ 146):

«Հիրավի, Հոկտեմբերյան հեղափոխությունը բոլորի համար ուղի բացեց դեպի սոցիալիզմ» (Պալմիրո Տոլյատի): Սոցիալիզմի գործի հաղթանակը Լեհաստանում և Չեխոսլովակիայում, Չինաստանում և ԳԴՀ-ում, Հունգարիայում և Բուլղարիայում ու մյուս երկրներում մեծ Հոկտեմբերի գաղափարների ճշմարտացիության նոր հաստատումն էր պրակտիկայում: Այժմ արդեն անհնարին է սոցիալիզմը պատկերացնել որպես տեղական երևույթ, «ռուսական էքսպերիմենտ»: Նորից ապացուցվեց, որ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին օբյեկտիվ, պատմական անխուսափելիություն է:

Սոցիալիստական սիստեմը դարձել է միասնական մի ընտանիք, զոդված դասակարգային ու գաղափարական հենքով, զինված միևնույն գաղափարներով, եղբայրական համագործակցության խնդիրներով, աննահանջ ինտերնացիոնալիզմով:

Արդյունաբերական տեսակետից հզոր մեր երկիրը եղբայրական սոցիալիստական երկրներին զգալի տնտեսական և գիտա-տեխնիկական օգնություն է ցույց տալիս: Սովետական Միությունը որոշիչ դեր է խաղում սոցիալիզմի երկրների պաշտպանությունն ապահովելու գործում, դրանով իսկ բարձր պահելով լենինյան ավանդական ինտերնացիոնալիզմի դրոշը:

Հիսուն տարվա ընթացքում կոմունիստական շարժումն աճեց և վերածվեց վիթխարի ուժի: Այն իրոք համաշխարհային դարձավ: Կյանքը հաստատեց, որ XX դարը մեծ Հոկտեմբերի դարն է, սոցիալիզմի հաղթանակի, կոմունիստական շարժման հուժկու ծավալման դարը: 1917 թ. աշխարհում միայն մեկ իսկապես ազդեցիկ կոմունիստական կուսակցություն կար՝ բոլշևիկյանը: Ընդամենը 10 տարի անց կոմունիստական կուսակցությունների թիվը հասավ 46-ի՝ 1 միլիոն 680 հազար անդամով: Այժմ համարյա 90 երկրներում գործող կոմունիստական և բանվորական կուսակցություններն իրենց շարքերում ունեն 50 միլիոն մարդ, կամ երեք անգամ ավելի, քան սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների կազմում (15 միլիոն մարդ):

Կոմունիստական շարժումը դարձել է աշխարհի ամենաազդեցիկ, մասսայական քաղաքական հոսանքը:

Եղբայրական մարքսիստական-լենինյան կուսակցությունները սովորում են մեծ Հոկտեմբերի փորձով, ուսումնասիրում մեր երկրում **սոցիալիզմի**, կոմունիզմի կառուցման հիրավի հարուստ պրակտիկան: Մեր կուսակցության պայքարի ուղին մի իսկական գանձարան է, տեսության ու պրակտիկայի միասնություն, գիտական ստրատեգիայի և տակտիկայի օրինակ: Միջազգային բանվորական շարժման և նրա կոմունիստական ավանգարդի կեսդարյա պայքարի արդյունքները, առաջին հերթին ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցումը, Հոկտեմբերի գաղափարների հաղթանակը եղբայրական սոցիալիստական երկրներում, համաշխարհային բանվորական, հեղափոխական շարժման ներկայիս վերելքը հաստատում է լենինիզմի պատմական ճշմարտացիությունը:



Միջազգային կոմունիստական շարժման շարքերում մեծ Հոկտեմբերի հայրենիքի, առաջին հաղթանակած սոցիալիստական հեղափոխության փորձի, նրա դասերի, նրա ինտերնացիոնալ նշանակության գնահատականի նըկատմամբ վերաբերմունքը այն ջրբաժան գիծն է, որը իսկական մարքսիստ-լենինյաններին, ինտերնացիոնալիստներին զատում է ամեն տեսակի օպորտունիստներից, մանրբուրժուական գաղափարներին տուրք տվողներից: Այդպիսի մոտեցման դեպքում ամբողջապես երևում է Մաո Ցզե-դունի և նրա խմբի հայացքների և պրակտիկ գործունեության ողջ մերկությունն ու վնասակարությունը: «Կուլտուրական հեղափոխության» ղեկավարներից Չեն Բադան առանց ամաչելու գրում է, թե «Չինաստանում կուլտուրական հեղափոխությունը մթագնեց Փարիզի կոմունան ու Հոկտեմբերյան հեղափոխությունը»: Սանձարձակ նացիոնալիզմը, մեծապետական շովինիզմը կուրացրել են Մաո Ցզե-դունին ու նրա հետևորդներին: Իշխանամոլությունը, արկածախնդրությունը, մառականների անհեթեթ աճպարարությունները հասցրին երկրի ներսում իսկական քաոսի, ժողովրդին կանգնեցրին քաղաքացիական պատերազմի շեմին:

Նախկին գաղութային աշխարհի տեղում առաջացել են ավելի քան 70 անկախ ազգային պետություններ: Այս փաստը օրգանապես կապված է Հոկտեմբերյան հեղափոխության հսկայական ազդեցության, Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակների հետ:

«Հոկտեմբերի հաղթանակից հետո սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը: Սովետների հանրապետությունը, պրակտիկայում իրագործելով սոցիալիստական հեղափոխության դաշինքը ազգային-ազատագրական շարժման հետ, դարձավ ժողովուրդների ազատագրական պայքարի օրինակը և հուսալի հենարանը» (ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները):

Գաղութային լծից ազատագրվել է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի մոտ մեկ ու կես միլիարդ բնակչություն: Այժմ նախկին գաղութների բնակչության 97 տոկոսը և տերիտորիայի 95 տոկոսը բաժին է ընկնում ազգային անկախ պետություններին, որոնց մեծամասնությունը աշխարհի ժողովրդական քարտեզի վրա երևան եկան վերջին 20 տարում: Իրականացել է Լենինի կանխատեսումը. Արևելքի ժողովրդական զանգվածները ասպարեզ են իջել «որպես նոր կյանքի կառուցողներ, ինքնուրույն մասնակիցներ»:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը և նրա հետ մեկտեղ ամբողջ միջազգային բանվոր դասակարգը Ասիայի և Աֆրիկայի երկրների ազգային-ազատագրական շարժման նկատմամբ այժմ կատարում են իրենց պատմական միսիան: Նրանք այդ երկրների հուսալի հենարանն են և հավատարիմ դաշնակիցն ընդդեմ իմպերիալիզմի, հանուն անկախության և սոցիալական առաջադիմության մղվող պայքարում: Սոցիալիստական երկրներն անընդհատ աճող օգնություն են ցույց տալիս զարգացող երկրներին, ազգային-ազատագրական շարժմանը հաղորդելով գիտական սոցիալիզմի կենսատու գաղափարները, իրենց փորձն են հաղորդում Արևելքի հեղափոխական-հայրենասիրական ուժերին:

Սովետական Միության փորձը ոգեշնչող օրինակ է ազատագրված երկրների ժողովուրդների համար: Նրանք տեսնում են այն փաստը, որ մեր երկրի հետամնաց ծայրամասերը սոցիալիզմի շնորհիվ կարճ ժամանակում հիանալի արդյունքների են հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Ձգտումը դեպի գիտական սոցիալիզմ, նրա տեսությունն ու պրակտիկան ընդգրկում է աշխատավորների և մտավորականության ավելի ու ավելի լայն շրջաններ: Իմպերիալիստները ուզում են «երրորդ աշխարհը» պահել իրենց ազդեցության ոլորտում, նրա զարգացումը տանել կապիտալիստական ուղիով, չեն հրաժարվում այն մոնոպոլիստական կապիտալի շահագործման օբյեկտ դիտելու պլաններից:

Սոցիալիստական գաղափարների հսկայական ազդեցությունը, նրանց ներգործության անշեղ աճը իմպերիալիստական շրջաններին մղում են ավանտյուրաների (Վիետնամ, Մերձավոր Արևելք և այլուր), գաղափարական դիվերսիաների:

Կահիրեում լույս տեսնող «Արաբ օբսերվեր» շաբաթաթերթը 1966 թ. № 19-ում գրել է. «ՍՍՀՄ-ը օրինակ է ցույց տալիս բոլոր զարգացող երկրներին: Ռուսաստանը կարճ ժամանակամիջոցում, կես դարից էլ պակաս ժամանակում, ֆեոդալական, կապիտալիստական, գաղութային տիրությունից վերածվեց ծաղկող, քաղաքակիրթ երկրի: Սովետական Միությունն ունի առաջադիմող ժամանակակից գյուղատնտեսություն, թեթև և ծանր արդյունաբերություն: Յուրաքանչյուր երկիր, անկախ նրա գաղափարական և քաղաքական հայացքներից, եթե իրապես ուզում է իր ապագան կառուցել հաստատուն հիմքի վրա, այլ ընտրություն չունի, քան սովորել Սովետական Միության փորձի վրա»:

Սովետական փորձի նշանակությունը անկարող են ժխտել նույնիսկ զարգացման կապիտալիստական ուղիով ընթացող երկրների պետական գործիչները: Կոմունիզմից հեռու կանգնած Այուբ խանը՝ Պակիստանի ներկայիս պրեզիդենտը վերջերս հայտարարել է, թե «...մենք Պակիստանում, որը ստիպված է պայքար մղել գաղութատիրությունից ժառանգություն մնացած տնտեսական հետամնացության և այլ դժվարությունների դեմ, ոգեշնչվում ենք Սովետական Միության հաջողություններով, որ նա ձեռք է բերել կարճ ժամանակում: Մենք կարող ենք շատ բան սովորել ձեզնից»:

Սովետական երկիրը հանդիսանում է պլանային տնտեսության հայրենիքը և նրա ամբողջ պրակտիկան, տնտեսագետների կուտակած փորձը, զարգացման խնդիրների, բնագավառների հերթականության ճիշտ ընտրությունը, ռեսուրսների մոբիլիզացման և առաջնահերթ նպատակին ուղղելու ունակությունը՝ այս ամենը հանգամանորեն ուսումնասիրվում է երիտասարդ պետություններում:

Ժնևի համալսարանի պրոֆեսոր Կուտյեի կարծիքով, «Մարքսիզմի օրինաչափությունը թույլ զարգացած երկրների համար կարող է արտահայտվել մեկ բառով՝ «պլան»»:

Ազատագրված երկրների առաջադեմ գործիչները ուշադրությամբ ուսումնասիրում են Սովետական Միությունում ազգային հարցի դրվածքը, նրա լուծումը: Սովետական Միությունում ժողովուրդների բարեկամության ու եղբայրության միաձույլ ընտանիքը հսկայական ազդեցություն է գործում ազատագրված երկրների վրա:



Մեծ Հոկտեմբերի, սոցիալիզմի գաղափարները թևածում են երեկվա ճնշված ու ստրկության դատապարտված Արևելքի վրա, համակում նորանոր միլիոնների, նրանց կոչում պայքարի, նոր կյանքի ազատության ու անկախության:

* * *

Պատմությունը վկայել է, որ վերջին 50 տարվա ընթացքում միջազգային ասպարեզում, խաղաղասեր, դեմոկրատական, առաջադիմական ուժերի յուրաքանչյուր հաջողությունը, իմպերիալիստական ագրեսիայի և ռեակցիայի ուժերի յուրաքանչյուր պարտություն կապված է Հոկտեմբերի հայրենիքի՝ Սովետական Միության, նրա միջազգային-քաղաքական գործունեության հետ: Շնորհիվ մեծ Հոկտեմբերի արմատապես փոխվել է աշխարհի սոցիալ-քաղաքական պատկերը: Նպաստելով կոմունիստական և սոցիալիստական շինարարությանը, սոցիալիստական համագործակցության ամրապնդմանը, սովետական արտաքին քաղաքականությունը դրանով իսկ իր կարևորագույն ավանդն է մուծել և մուծում է համաշխարհային հասարակական պրոգրեսի մեջ: Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականությունն իր գործողություններն ուղղում է առաջադիմության ուժերի դիրքերն ամրապնդելու, իմպերիալիստական ռեակցիայի և ագրեսիայի դեմ պայքարելու նպատակին: «Նոր հասարակարգի ստեղծումը, նրա տնտեսական ու պաշտպանական հզորության մշտական աճը համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը ի վնաս իմպերիալիզմի ու ռեակցիայի փոփոխելու վճռական պայմաններից մեկն են, ամրապնդում են համաշխարհային մասշտաբով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի նյութական, քաղաքական ու գաղափարական նախադրյալները» (ՍՄԿԿ ԿԿ թեզիսներ):

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ մեր ժամանակի գլխավոր հեղափոխական ուժը, մյուս հեղափոխական ուժերի հետ միասին որոշում է պատմական զարգացման գլխավոր ուղղությունը: Նրան է վիճակված խաղալու մարդկային հասարակության զարգացման որոշիչ դերը:

Սոցիալիզմն ուղղակի թե անուղղակի վերափոխող խոր ներգործություն է ունենում համաշխարհային պատմության ընթացքի վրա, հեղափոխական բոլոր ուժերին ներարկում է ոչ միայն հոգևոր մեծագույն կորով, այլև նյութական ուժ, զսպում է իմպերիալիստական ագրեսորներին, կանխում է աշխարհը ջերմամիջուկային պատերազմի զոհ դարձնելու նրանց ծրագրերը:

Եվ այսօր սոցիալիստական առաջին պետության ծննդյան հոբելյանական տարեթիվն ամբողջ աշխարհում նշվում է որպես մարքսիզմ-լենինիզմի, բանվորական շարժման իդեալների, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարների հաղթանակի տոն:



ՎԻԿՏՈՐ ԺՈԱՆԵՍ

# ՀՈԿՏԵՄԲԵՐԸ եվ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԸ

Մեծ Հոկտեմբերը հարուցեց ռուս հեղափոխականների հետ համերաշխվելու մի հզոր շարժում, որին չկարողացավ խանգարել բուրժուազիայի կազմակերպած ստի ու զրպարտության և ոչ մի կամպանիա։ Այդ շարժման ամբողջ թափն ու նշանակությունն առանձնահատուկ կերպով դրսևորվեց Սովետական Ռուսաստանին բլոկադա հայտարարելու պահից։ Կարճ ժամանակ հետո այդ բլոկադային հաջորդեց Անգլիայի և Ֆրանսիայի զինված ինտերվենցիան։ Մեր հիշած համերաշխության առավել բարձր դրսևորումն այն հերոսական ապստամբությունն էր, որ 1919 թ. ապրիլին բարձրացրին ֆրանսիական նավախմբի զինվորներն ու նավաստիները Սև ծովում՝ Օդեսայում։ Այդ պայքարում զոհված ուսուցչուհի Ժաննա Լյաբուրբի պանծալի կերպարը խորհրդանշում է մեր երկրի բանվորների աջակցությունը Հոկտեմբերի գործին։

Եվ միայն բանվորները չէին, որ այն ժամանակ բարեկամություն ու համերաշխություն ցուցաբերեցին սովետների հանրապետության հետ։ Ինտելիգենցիայի բազմաթիվ ներկայացուցիչներ, անկախ այն բանից, արդյոք դեմոկրատնե՞ր էին նրանք, սոցիալիզմի հակառակորդնե՞ր, թե՞ պարզապես ոչ-սոցիալիստներ, ինչպես, օրինակ, պատմաբան Օլարը և մանկավարժ Ֆերդինան Բյուիսոնը, միացան այն կամպանիային, որ բանվորներն անց էին կացնում ինտերվենցիայի և բլոկադայի դեմ։ Գրողներ և նկարիչներ Անատոլ Ֆրանսը, Ժորժ Դյուամելը, Ժյուլ Ռոմենը, Հանրի Բարբյուսը, Ստենլենը, Սինյակը, Պիկար Լե Դուն, Վլամինկը, տիկին Օտան-Լարան, կուլտուրայի ականավոր գործիչներ և նշանավոր գիտնականներ Վիկտոր Բաշը, մաթեմատիկոս Ադամարը, ֆիզիկոս Պոլ Լանժևենը, Ժան Տեքսիեն, Էմանուել Լերուն հրապարակեցին լայն արձագանք գտած մի մանիֆեստ, որի մեջ նրանք հանդես եկան Սովետական Ռուսաստանի բլոկադայի դեմ։

«Մեզ հետաքրքրողը,— ասվում էր այդ մանիֆեստում,— քաղաքականությունը չէ։ Անգամ այն չէ, թե արդյոք Ռուսաստանի ներկայիս ռեժիմը սպառնալիքի տա՞կ է դնում համաշխարհային կարգը, ինչպես ասում են այդ մա-



սին։ Մարդկանց դեմ մեծ հանցագործություն է կատարվում, որը ոչ մի լավ բան չի կարող բերել ոչ ոքի համար։ Մենք հրաժարվում ենք մասնակից լինել այդ հանցագործությանը, միանալ դրան թեկուզ մեր լռության փաստով։ Մեր սրտի ու բանականության ողջ ուժով բողոքում ենք ընդհանրապես մարդկային խղճին և մասնավորապես մեր երկրի տրադիցիաներին անարժան այդ ակտի դեմ։

Ռոմեն Ռոլանը «Անխուսափելի վերածնունդը» խորագիրը կրող նամակում հայտարարում էր. «Աշխարհը հանձնված է նենգ ու գիշատիչ շահասերների դասակարգի ձեռքը, որոնք, քողարկվելով կամ հանրապետության, կամ թագավորության անունով, ձգտում են լոկ հագուրդ տալու իրենց կրքերին ու իրենց շահերին։ Սրտի ցավով մտածում ես այն մասին, թե որքան լավ մարդիկ, ազնիվ աշխատավորներ հենց բուրժուազիայի շարքերում թույլ են տալիս, որ խաբեն իրենց։ Այնքան ժամանակ, քանի դեռ չի չքացել այդ մեծ խաբեությունը, հնարավոր չէ ոչ մի սոցիալական լուրջ առաջադիմություն։ Կճնշվի խունացած և նեխված իրավակարգը նորով փոխարինելու ամեն մի փորձ, ինչպես այժմ փորձում են ճնշել մեր ռուս եղբայրների՝ տարերքի պես խոլական պայքարը։ Բայց երբեք չի մարի նորի, ավելի արդարացի և ավելի մարդասիրական կարգի հավերժական ձգտումը։ Հազար անգամ ճնշված լինելով, սա միշտ էլ հառնում է հազար ու մեկ անգամ»։

«Յումանիտե»-ն ևս իր կողմից Մարսել Կաշենի ղեկավարությամբ ավելի ու ավելի էր իմպերիալիստական ինտերվենցիայի դատապարտման հստակ դիրք գրավում։ 1918 թ. նոյեմբերի 7-ին՝ Հոկտեմբերյան հեղափոխության առաջին տարեդարձին Ամեդե Դյունուան գրում էր. «Որքան էլ մենք տարակարծիք լինենք մեր գնահատականներում ...ես կարող եմ ասել, որ կուսակցության ներսում և Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայում օրեցօր աճում են նրանց շարքերը, ովքեր պատրաստ են հավատալու սովետների հանրապետությանը»։ Իսկ նոյեմբերի 16-ին Մարսել Կաշենը հայտարարում էր. «Անգամ անհնարին է մտածել այն մասին, թե ներկայիս պայմաններում կճարվի՞ թեկուզ մի սոցիալիստ, որը կարողանա հավանություն տալ դաշնակիցների զինված ինտերվենցիային այն երկրի դեմ, որի հետ մենք երբեք պատերազմի վիճակում չենք եղել»։

Չնայած այն բանին, որ Ֆրանսիայում իսկական վերահսկողություն էր հաստատվել մտքերի վրա, չնայած աղքատիկ, խեղաթյուրված կամ ամբողջովին մոգոնած լուրերին, ճշմարտությունը Ռուսաստանում տեղի ունեցածի վերաբերյալ աստիճանաբար դառնում էր ֆրանսիական հասարակայնության սեփականությունը, խանդավառություն հարուցելով ինտելիգենցիայի շրջանում։ Պետրոգրադում ֆրանսիական զինվորական միսիայի անդամ, կապիտան Ժակ Սադուլի ուշագրավ նամակները հաղորդում էին այն մասին, թե հաղթանակած պրոլետարիատն ինչպիսի ուշադրություն էր նվիրում գիտնականների և կուլտուրայի մյուս ներկայացուցիչների աշխատանքին։ Այդ նամակները ցույց էին տալիս, թե որքան մեծ էր կուլտուրական ժառանգության մեջ եղած դրական ամեն ինչը պահպանելու մտահոգությունը, ժառանգություն, որի ամբողջ կարևորությունը նոր կառավարող դասակարգի համար ցույց էր տալիս Լենինը, պայքար մղելով Բոգդանովի, «պրոլետկուլտի» նիհիլիստական հայացքների դեմ։

Ժակ Սադուլին հիացրել էր Լունաչարսկու վիթխարի ծրագրի բարդ միասնությունը, որը միաժամանակ ընդգրկում էր բուն կրթությունն ու լուսավորու-

թյունը: Նա նշում էր, որ 1917 թ. նոյեմբերից «այն հսկայական կառույցը, որ սկսել էր փայլուն հռետոր, մեծ էրուդիտ, նրբանկատ գրող և այնպիսի խոր հավատի տեր մարդը, ինչպիսին էր Լունաչարսկին», գործում էր «համարձակորեն ու զգուշաբար, դանդաղորեն ու հաստատակամորեն»:

Ժակ Սադուլը նկարագրում էր ժողովրդական լուսավորության սիստեմը միասնական ու ավելի պարզ դարձնելու գործունեությունը, ուսուցիչների վիճակը բարելավելու միջոցառումները, մանկավարժական խորհուրդների ստեղծումը ուսուցիչների, բարձր դասարանների աշակերտների, ծնողների և տեղական սովետների ներկայացուցիչներից, գրական ու գեղարվեստական կյանքի վերսկսումը, Պետերբուրգի գեղեցիկ արվեստների դպրոցի, համալսարանների, դասընթացների, ամեն աստիճանի պրոֆեսիոնալ դպրոցների, ինչպես նաև սոցիալիստական ակադեմիայի ստեղծումը, որը դարձավ գիտության (ինչպես Ֆրանսիական ինստիտուտը) և լուսավորության բարձրագույն ղեկավար օրգանը (ինչպես Կոլեժ դը Ֆրանսը): Ժակ Սադուլն ավելացնում էր. «Անօգուտ չի լինի արձանագրել, որ բոլշևիկների իշխանությունը, այդ այսպես կոչված սատանայական հրեշը, այդ Նեռը, ամեն տեսակ կուլտուրա ոչնչացնողը, արդեն անհամեմատ ավելի շատ բան է արել ժողովրդի մտավոր ու հոգևոր պահանջները բավարարելու համար, քան աշխարհի որևէ բուրժուական կառավարություն»:

Ժակ Սադուլը գրում էր նաև, որ «գիտնականները դեռ երբեք այդպիսի տոնահանդես չէին ապրել: Ֆրանսիացի գիտնական Վիկտոր Հանրին, որը միսիայի հետ հինգ տարի եղել էր Ռուսաստանում, հաստատեց այդ բանը 1919 թվականի հուլիսին ակադեմիային ներկայացրած զեկուցագրում:

Ահա թե ինչպես էր «Թան» թերթը շարադրում այդ զեկուցագիրը, որը հետագայում հանվեց ակադեմիայի արխիվներից, իսկ ինքը՝ Վիկտոր Հանրին զրկվեց իր տեղից Կոլեժ դը Ֆրանսում: «Ստեղծվեցին նոր ինստիտուտներ, գեղարվեստական ցուցահանդեսներ, թանգարաններ: Նոր Ռուսաստանի մտավոր կենտրոնն է Պետերբուրգի գիտությունների ակադեմիան, որն իր պաշտպանության տակ է վերցրել թանգարանները, լաբորատորիաները, ֆակուլտետները: Ստեղծվել է լայն կազմ ունեցող մի հանձնաժողով Ռուսաստանի ունեցած հարստություններն ու ռեսուրսները ուսումնասիրելու համար: Հանձնաժողովը կազմված է 33 սեկցիայից, որոնցից 22-ը աշխատում են Պետերբուրգում և 11-ը՝ Մոսկվայում: Նորաստեղծ ինստիտուտների շարքում Վիկտոր Հանրին հիշատակում է քիմիական ինստիտուտը, պլատինի ինստիտուտը, որտեղ ռուս գիտնականները կարողացան նորից գտնել պլատինն իրիդիումից անջատելու գաղտնի եղանակը, որպիսին գիտեին գերմանացիները, շինանյութերի ինստիտուտը, ոչխարների ցեղատեսակները լավացնելու ինստիտուտը, հողի ու պարարտանյութերի ուսումնասիրության ինստիտուտը: Արդեն մի քանի ամիս է, ինչ աշխատում են նաև ռադիումի, ռենտգենոլոգիայի, տեսական ու կիրառական օպտիկայի, բյուրեղագիտության, հիդրոլոգիայի, աշխատանքի ինստիտուտները:

Պետրոգրադի գիտությունների ակադեմիան մի ամբողջ շարք երկրագիտական հետազոտություններ կատարեց և ձեռնամուխ եղավ Ռուսաստանի մագնիսային քարտեզի ստեղծմանը: Չափ ու կշռի ինստիտուտին առընթեր ստեղծվեցին նոր լաբորատորիաներ:

Պատերազմից առաջ ռուս գիտնականներն իրենց աշխատությունները հրատարակում էին Գերմանիայի, Անգլիայի և Ֆրանսիայի տեխնիկական



հանդեսներում ու պարբերական հրատարակություններում: Պետրոգրադի ակադեմիան որոշել է այսուհետև մի բյուլետեն հրատարակել ռուսերեն և ֆրանսերեն լեզուներով: Արդեն լույս են տեսել ռուսական գիտության այդ բյուլետենի երեք պրակ»:

Վիկտոր Հանրին կոմունիստ չդարձավ: Բայց նա իր ամբողջ կյանքում բարեկամ մնաց Սովետական Միությանը: 1920 թվականին նա երկու գործիչների մասնակից դարձրեց այն ուղերձին, որում ֆրանսիական ինտելիգենտները համակրանք էին հայտնում Ռուսաստանի իրենց կոլեգաներին, գործիչներ, որոնց աջակցությունը մեծ արձագանք ստացավ: Դրանք էին ականավոր մաթեմատիկոս Ադամարը, որի դիրքի մասին բլոկադայի ժամանակ ես արդեն հիշատակել եմ և որը հետագայում Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության հավատարիմ ուղեկիցը դարձավ, և Պոլ Լանժևենը՝ հետագայում կոմունիստական կուսակցության գործիչը:

Պոլ Լանժևենը, որն այն ժամանակ անկուսակցական էր, նախագահում էր Փարիզում կայացած առաջին միտինգներում, որ հրավիրվում էին ի նշան համերաշխության Սև ծովում ապստամբած ծովայինների հետ: Բլոկադայի ամենաթեժ պահին նա բարձր կարծիք հայտնեց ռուս գիտնականների մասին: Նա ասում էր. «Անտարակույս է, որ հոգևոր կուլտուրայի տեսակետից Եվրոպան առանց Ռուսաստանի կդադարի Եվրոպա լինելուց և երկու հարյուր տարի առաջ սկսված համագործակցությունը ռուսների հետ գնալով ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում այն բանին զուգընթաց, երբ ավելի լայնորեն են բացահայտվում այդ երիտասարդ երկրի անսահման ռեսուրսները, որը բուռն կերպով կրթության է ձգտում»:

Այսպիսով, իր ծնվելու պահից սկսած սովետական իրավակարգը, մասսաների մեջ աշխույժ հետաքրքրություն արթնացնելով դեպի գիտելիքները— իսկ դա նրա ամենամեծ երախտիքներից մեկն է— համապատասխանորեն արձագանքում էր ինտելիգենցիայի պահանջներին ու ձգտումներին:

Պրոլետարական կառավարության այդքան դրական կուլտուրական քաղաքականության ազդեցությունը մեծ դեր խաղաց այն բանում, որ ֆրանսիական ինտելիգենցիայի բավական մեծ թվով ներկայացուցիչներ պաշտպանեցին սոցիալիստական կուսակցությանը և նրա մեծամասնությանը, որն արտահայտվել էր III ինտերնացիոնալի մեջ մտնելու օգտին:

Նրանց մեջ էր Մարսել Կաշենը, որը կուսակցության Տուրի համագումարում արտասանած իր փայլուն ու կրքոտ ճառի վերջում սոցիալիստական կուսակցության անդամներին կոչ արեց կանգնել Սովետական Սոցիալիստական Ռուսաստանի կողմը:

Նրանց մեջ էին նախկին ճակատայիններ երիտասարդ գրողները, այնպիսիները, ինչպես Ռայմոն Լեֆևրը, որը Հոկտեմբերի երկրորդ տարեդարձի առթիվ գրում էր. «Արդեն երկու տարի է, ինչ իրականություն է դարձել արևի կիզիչ ճառագայթների տակ կատարած հյուծիչ երթերի ու մռայլության կարճատև րոպեների ժամանակ իմ ունեցած տենդագին մտածմունքների այդ սևեռուն երազանքը, իմ զինվորական ծանր օրերի երազանքը... Սկսվել է մարդկային պատմության մեջ ամենատևական հեղափոխությունը, որը կշարունակվի տարիներ ու տարիներ. կապիտալիստական պատերազմը լոկ նրա նախերգանքն էր, իսկ նրա առաջին գործողությունը ռուսական հեղափոխությունն է»:

Նրանց մեջ էր Պոլ Վայան-Կուտյուրեն, մի ինտելիգենտ մարտիկ, որը

Տուրում համագումարին կոչ արեց այնպիսի կուսակցություն տալ Ֆրանսիային, որը հար ու նման լինի Լենինի կուսակցությանը, մի կուսակցություն, որն ընդունակ լինի բանվոր դասակարգին առաջնորդելու «դեպի անխուսափելի ու անհրաժեշտ մեծագործություններ՝ աշխատանքում ու պայքարում»:

Մարսել Կաշենի, Ռայմոն Լեֆևրի, Պոլ Վայան-Կուտյուրեի կոչերին իր «մեծ ձայնը» միացրեց Հանրի Բարբյուսը, որի Կրակ և Պարզություն վեպերի մասին Լենինը ասում էր, թե դրանք հանդիսանում են «ամենուրեք մասսաների մեջ նկատելի հեղափոխական գիտակցության աճման մասսայական երևույթի առանձնապես ցայտուն ապացույցներից մեկը...» (Երկեր, հ. 29, էջ 631):

1920 թ. հոկտեմբերի 24-ին Հանրի Բարբյուսը «Յումանիտե»-ում մի բոցաշունչ կոչ հղեց իսկական սոցիալիստներին՝ անվերապահ կերպով միանալու III Ինտերնացիոնալին: Նա գրում էր. «Ընդօրինակելով ռեակցիոներների զազրելի երեսպաշտությունը, մեզանում ծանր ու թեթև են անում բոլշևիզմի արդյունքները, որպիսիք ձեռք են բերված պայքարի ամենաթեժ պահին, լայնածիր տարածություններում մոլեգնող ավերածության, սովի ու համաճարակ հիվանդությունների պայմաններում, թշնամական շրջապատման, դավաճանության և սաբոտաժի անհամար ակտերի պայմաններում: Կարելի է համարձակորեն և առանց որևէ տատանման անվիճելի համարել այն ճշմարտությունը, որ կոմունիստների ձեռք բերած արդյունքները, հաշվի առնելով այն իրադրությունը, որում իրենք աշխատել են, ունեն հսկայական նշանակություն, իսկ նրանց անհաջողությունները բացարձակապես ոչ մի նշանակություն չունեն: Այն, ինչ արդեն հայտնի է մեզ, ո՛չ ժամանակ և ո՛չ էլ իրավունք չի տալիս շարունակելու հետաքննության խաղը: Մենք ավելի քիչ իրավունք ունենք զբաղվելու այս կամ այն երկրորդական կամ երրորդական զիջումների, այս կամ այն անձնական հարցի բացառման քննարկումով, հարգանք արտահայտելով կամ հանդիսավորություն: Խոսքն այն գաղափարի կենաց ու մահու մասին է, հանուն որի, եթե հարկ լինի, մենք պետք է պատրաստ լինենք մեռնելու»: Այն ինտելիգենտների շարքում, որոնց պատերազմը հեղափոխական էր դարձրել, կանգնած էր ֆրանսիական գրականության մեծ վարպետ, համաշխարհային համբավ վայելող Անատոլ Ֆրանսը: 1919 թվականին նա Փարիզի ընտրողներին դիմեց մի կոչով, որի մեջ ասված էր. «Դուք դատապարտեցեք բուրժուական կառավարիչներին, որոնք... ճգնում են ոսկու և մարդկանց կյանքերի գնով արյան մեջ խեղդել ռուսական հեղափոխությունը»: 1920 թ. օգոստոսին Անատոլ Ֆրանսն ի լուր ամենի իր անհանգստությունն ու տագնապը հայտնեց սովետների հանրապետության դեմ շարունակվող ագրեսիայի կապակցությամբ: 1921 թ. հունվարի 11-ին նա «Յումանիտե»-ում իր համերաշխությունը հայտնեց կուսակցության «կոմունիստական Ինտերնացիոնալի ֆրանսիական սեկցիայի» հետ, իսկ 1922 թ. նոյեմբերի 8-ին նրա գրչի տակից դուրս եկավ հռչակավոր «Ողջույնը սովետներին»: «Եթե Եվրոպայում դեռևս մնացել են արդարության բարեկամներ,— գրում էր նա,— թող նրանք մեծարանքով ողջունեն այդ հեղափոխության հինգերորդ տարեդարձը, որն այնքան դարերից հետո աշխարհին բերեց ժողովրդի համար գոյություն ունեցող և ժողովրդի կողմից իրականացվող իշխանության առաջին փորձը»:

Հոկտեմբերն իր միջազգային հսկայական նշանակությամբ հեղափոխեց հասարակական միտքը: Նա զարմանալի աշխուժություն հաղորդեց այն գա-



ղափարներին, որոնց կրողներն այն ժամանակ դեռևս սակավաթիվ մարտական հանդեսներն էին: Այդ հանդեսները զետեղում էին Լենինի, Լունաչարսկու, Կրուպսկայայի հոդվածները, ընթերցողներին ծանոթացնում էին Սովետական Ռուսաստանի, նրա ժողովրդական կրթության հաջողությունների և սովետական բանաստեղծների, գրողների ու գիտնականների ստեղծագործական հաջողությունների, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հետ:

Լենինը, անտարակույս, մտածում էր նաև Ֆրանսիայի մասին, երբ 1922 թվականի կեսերին գրում էր ամերիկացի Կարլ Շտեյնմեցին. «Աշխարհի բոլոր երկրներում աճում է — դանդաղ, քան այդ կարելի է ցանկանալ, բայց անզուսպ կերպով և անշեղորեն աճում է գիտության, տեխնիկայի, արվեստի այն ներկայացուցիչների թիվը, որոնք համոզվում են կապիտալիզմը այլ հասարակական-տնտեսական կարգերով փոխարինելու անհրաժեշտության մեջ, և որոնց չեն վանում, չեն վախեցնում ամբողջ կապիտալիստական աշխարհի դեմ Սովետական Ռուսաստանի պայքարի «սարսափելի դժվարությունները» («terrible difficulties»), այլ, ընդհակառակը, հասցնում են պայքարի անխուսափելիության և այդ պայքարում ուժերը ներածին չափ մասնակցություն ունենալու անհրաժեշտության գիտակցությանը, օգնելով նորին՝ հաղթահարելու հինը» (Երկեր, հատ. 35, էջ 596—597):

Հիսուն տարի է անցել Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության ժամանակվանից, և այժմ սոսկ ժպիտ կարող են առաջացնել սոցիալական արտոնյալ խավերի պատգամախոսների պնդումները, ինչպես, օրինակ, պարոն Ֆարր-Լյուսի, որն իր ժամանակ հայտարարում էր, թե «մուժիկները զավթում են մեծ վարպետների նկարները և ոտների փաթաթաններ են պատրաստում դրանցից»: Այժմ բարի կամքի բոլոր ֆրանսիացիները, բոլոր ազնիվ ֆրանսիացիները տեսնում են փորձով հաստատված այն բանի ապացույցը, որ կապիտալիզմից տարբեր տնտեսական ու սոցիալական կարգը ոչ միայն կարող է գործել երկար ժամանակվա ընթացքում, այլև որ այդ կարգը կանգնած է մարդկային զարգացման շատ ավելի բարձր աստիճանի վրա, ամենից առաջ գիտական, տեխնիկական, մտավոր ու հոգևոր տեսակետից:

Անհրաժեշտ է հիշատակել, որ 1966 թ. մարտին Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը Կենտրոնական կոմիտեի մի հատուկ պլենում նվիրեց գաղափարական ու կուլտուրական պրոբլեմներին և կոմունիստական ինտելիգենցիայի դերին: Այդ պլենումի աշխատանքը լայն արձագանք գտավ: Պլենումը պատասխանեց գիտության ու կուլտուրայի գործիչների պահանջներին ու ակնկալություններին այնպիսի մի ժամանակ, երբ մարքսիզմի ազդեցությունը գնալով ավելի է հաստատապնդվում ֆրանսիական ինտելիգենցիայի մեջ, հատկապես երիտասարդության շրջանում:

Մենք երբեք չենք մոռանա, որ այդ ազդեցության և այդ ըմբռնման համար մենք ամենից առաջ պարտական ենք Հոկտեմբերի անմահ հաղթանակին, նրա ճաճանչափայլ լույսին, որը բոլոր մարդկանց համար լուսավորում է դեպի ապագան տանող ուղին:

Սույն հոդվածի հեղինակը Ֆրանսիայի կոմկուսի Կենտկոմի անդամ է:

«Проблемы мира и социализма», № 9, 1967 г.



ՀՈՎՀԱՆՆԵՍ ԻՆՃԻԿՅԱՆ

# ԱԶԳԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ԷՊՈԽԱՆ

*Մարդկության պատմության այն դարաշրջանը, որն սկսվեց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով, ամենահարուստն է իր պատմական բովանդակությամբ, ամենաբազմապիսին ու հետաքրքիրը իր սոցիալ-տնտեսական հարաբերություններով և աննախընթացը՝ համընդհանուր պրոգրեսի արագացման տեմպերով:*

*Մեր ապրած էպոխան, հիրավի, կարելի է կոչել մեծ Հոկտեմբերի ու հաղթանակող սոցիալիզմի դարաշրջան: Սոցիալիզմի գաղափարները մարմնավորվեցին ոչ միայն սոցիալիստական երկրներում, այլև լայն տարածում գտան ամբողջ աշխարհում: Սա է կարևորը, և Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, այս է, որ ներգրավել է հարյուր միլիոնավոր մարդկանց ու հանդիսանում է «մեծագույն համաշխարհային հեղափոխության մեծապես արագացման», «համաշխարհային առաջընթացի հսկայական արագացման» պատճառը (Երկերի ժողովածու, հատ. 45, էջ 174): Ամբողջ առաջավոր մարդկությունը տեսնում է այս պրոցեսը և համամիտ է Բեռնարդ Շոուի այն կարծիքին, որ մարդիկ պետք է լրջորեն մտածեն ապագայի մասին, և այս իմաստով Լենինի գործի նշանակության մասին, որովհետև նրա նշանակությունը «ապագայի համար այնպիսին է, որ եթե Լենինի նախաձեռնած փորձը, սոցիալիզմի փորձը, չհաջողվի, ապա ժամանակակից քաղաքակրթությունը կկործանվի այնպես, ինչպես անցյալում կործանվել են շատ քաղաքակրթություններ»:*

*Կարծիքը, որ ապագան սոցիալիզմին է պատկանում, հետզհետե ավելի լայն տարածում է գտնում ամենուրեք և մասնավորապես՝ Արևելքի երկրներում: Սա պատահական երևույթ չէ:*

*Հոկտեմբերյան հեղափոխությունն իր մասշտաբներով ու խորությամբ մի այնպիսի համաժողովրդական շարժում էր, որտեղ ո՛չ միայն ապահովված էին պրոլետարիատի ղեկավարությունը և Ռուսաստանի բազմամիլիոն գյուղացիության մասնակցությունը, այլև ազգային փոքրամասնությունների, ընդհանրապես կայսրության ծայրամասային ճնշված ազգերի ու ժողովուրդների գործնական օգնությունն ու ակտիվ մասնակցությունը: Ուրեմն, որոշ իմաստով Հոկտեմբերը ազգային-ազատագրական պայքար էր, որը շատ հասկանալի ու մոտ*



*էր Արևելքի ժողովուրդների ոգուն: Եվ ընդհանրապես դժվար է գերագնահատել մեծ հեղափոխության միջազգային նշանակությունը:*

*Դեռևս 1917 թվականի նոյեմբերի 8-ին, սովետների երկրորդ համագումարում ընդունված Դեկրետը հաշտության մասին, նոյեմբերի 15-ին հրապարակված «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», ՌՍՖՍՀ Ժողկոմխորհի դեկտեմբերի 3-ի դիմումը՝ «Ռուսաստանի և Արևելքի բոլոր աշխատավոր մահմեդականներին» և բազմաթիվ այլ փաստաթղթեր ու որոշումներ վառ վկայությունն են այն բանի, թե մեծ հեղափոխությունը ինչպես էր դնում ժողովուրդների ազատության, ինքնուրույնության, իրավահավասարության, անկախության, նրանց ազատ ինքնորոշման, ազգային փոքրամասնությունների ու առանձին էթնիկական միավորումների ազատ զարգացման և մի շարք այլ կենսական ու հրատապ հարցերը:*

*Դարերով գաղութային ճնշման տակ հեծող ժողովուրդները առաջին անգամ էին լսում ու տեսնում այնպիսի երևույթներ, որոնց մասին նրանք երազել էին միայն, պայքարել և արյուն թափել, առանց հասնելու, սակայն, որևէ դրական արդյունքի:*

*Ահա թե ինչու, հաղթահարելով հսկայական դժվարություններ, Արևելքի առաջավոր գործիչները շտապում էին պատմել իրենց ժողովրդին Հոկտեմբերի, Լենինի, սովետական երկրի մասին:*

*Հնդկաստանի ազգային կոնգրես կուսակցության ակտիվ անդամ, ժուռնալիստ Գ. Վ. Քրիշնա Ռասին դեռևս 1921 թ. հաջողվում է հրատարակել Վ. Ի. Լենինի կենսագրությունը, իսկ հաջորդ տարին գրել լույս տեսած* **Նոր Ռուսաստան** *գրքի առաջաբանը:*

*Հետաքրքրական է առանձնապես հեղինակի գնահատականը մեր երկրում տեղի ունեցած հեղափոխական իրադարձությունների ու բարեփոխությունների նշանակության վերաբերյալ:*

*Այսպես, Գ. Վ. Քրիշնա Ռասը Վ. Ի. Լենինի կենսագրության առաջաբանում նշում է, որ սովետական երիտասարդ հանրապետության ճանապարհը լի է բազմաթիվ դժվարություններով ու վտանգներով: «Անհրաժեշտ է սակայն խոստովանել,— գրում է նա,— որ ստրուկների ազատագրումը փոխեց ժամանակակից մտածողության ողջ ուղղությունը և, անկասկած, կփոխի գալիք դարերի դեպքերի ընթացքը ու կհանդիսանա այդ դեպքերի հիմնական պատճառը: Հեղափոխության ազնիվ գաղափարներով թևավորված երիտասարդ ու հզոր ժողովրդից կհոսեն կյանքի նոր առուները դեպի աշխարհի այլ երկրներ և կամրապնդեն աշխատավորների հավատը իրենց ուժերի նկատմամբ, նրանց ձգտումը՝ միավորվելու կոմունիզմի դրոշի ներքո, որի ներքո արդեն ձեռք են բերվել առաջին մեծ հաղթանակները: Իրապես, ռուսական հեղափոխությունը արձանագրեց... որ բռնակալության օրերը հաշված են»:*

*Այն խոր համակրանքն ու հարգանքը, որ տածում են ազատասեր ժողովուրդները և առաջավոր մարդիկ դեպի Հոկտեմբերը և նրա հայրենիքը, Իրանի հասարակական ու պետական գործիչ, բժշկական գիտությունների դոկտոր Ալլահյար Սալեհը բացատրում է նրանով, որ «...առաջին, 1917 թ. Հոկտեմբերյան հեղափոխությունը և նրա հաջողությունները հանգեցրին ազատագրական շարժումների նոր վերելքին, դեմոկրատիայի զարգացմանը և բանվորների վիճակի բարելավմանը բոլոր երկրներում: Երկրորդ, որովհետև Սովետական Միության քաղաքական գործիչները, հանդիսանալով Հոկտեմբերյան հեղափոխության կազմակերպիչները կամ սաները, նոր կարգերի հիմնադրման*

օրվանից կողմնակից էին խաղաղ քաղաքականության» (տե՛ս Народы Азии и Африки, № 1, 1967, էջ 126)։ Մոդիբո Քեյթայի բնորոշմամբ Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը իր հետ բերեց Աֆրիկայի ապագայի պրոբլեմների լուծումը։

Եվ ո՛չ միայն Աֆրիկայի։ Հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում անմիջական արձագանք գտավ Եվրոպայում, Ամերիկայում և Ասիայում։ Բարձրացավ բանվորական ու ազգային-ազատագրական շարժումների մի հզոր ալիք, որը անհետևանք չմնաց մի շարք պետությունների ու ժողովուրդների կյանքում։ Արդեն 1917 թ. վերջերին և 1918 թվականին գաղութային բազմաթիվ երկրներում ծայր են առնում ժողովրդական շարժումները։ Հաջորդ՝ 1919 թվականին շարժման վերելքը ընդգրկեց Ասիայի և Աֆրիկայի մի շարք երկրներ։

Չինաստանում սկսված պայքարը ստացավ համընդհանուր բնույթ «մայիսի 4-ի շարժումից» հետո, երբ ուսանողության, երիտասարդության ու բանվորների հետ շարժման մեջ ներգրավվեցին երկրի մանրբուրժուական լայն խավերը և ազգային բուրժուազիայի մի մասը։ Այսպիսով, Չինաստանի պատմության մեջ սկսվեց հակաիմպերիալիստական, ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության շրջանը։

Հզոր ազատագրական պայքարը ընդգրկում է նաև Հնդկաստանը։ Մասսայական բողոքի ու անգլիական իշխանություններին չենթարկվելու կամպանիային զուգահեռ ծավալվում են 1918—1922 թթ. բանվորական շարժումները։

Պարսկաստանում՝ հարևան Ռուսաստանի օրինակով, ժողովրդական ապստամբությամբ բռնված շրջաններում փորձում են ստեղծել սովետների տիպի կառավարական օրգաններ, լուծել հողային, ազգային հարցեր, կապեր ստեղծել սովետական պետության հետ։

Հաղթանակով է պսակվում Աֆղանստանի 1919 թ. ազատագրական պայքարը անգլիական իմպերիալիզմի դեմ։ Ստեղծված բարենպաստ պայմաններում հաջողությամբ է ավարտվում նաև թուրք ժողովրդի 1919—1922 թթ. պայքարը իմպերիալիստական տերությունների դեմ։ Հայրենասիրական խոշոր շարժումը ընդգրկում է 1919 թ.՝ Եգիպտոսը, 1920 թ.՝ Սիրիան ու Իրաքը։ Մոնղոլիայի ժողովրդի հերոսական պայքարը կարմիր բանակի անմիջական օգնությամբ ավարտվում է Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության ստեղծմամբ։ Շարժումները այդ տարիներին ընդգրկում են Ճապոնիան, Կորեան, ավելի ուշ՝ Ինդոնեզիան և Աֆրիկայի մի շարք երկրներ։

Մեր հաղթանակը ինտերվենցիայի ու քաղաքացիական պատերազմի տարիներին, ընդգծում է Վ. Ի. Լենինը, «Արևելքի ժողովուրդներին ցույց կտա, որ ինչքան էլ թույլ են այդ ժողովուրդները, ինչքան էլ անհաղթելի է թվում եվրոպական ճնշողների հզորությունը, որոնք պայքարում կիրառում են տեխնիկայի և ռազմական արվեստի բոլոր հրաշքները, այնուամենայնիվ, ճնշված ժողովուրդների կողմից մղվող հեղափոխական պատերազմը... իր մեջ այնպիսի հնարավորություններ, այնպիսի հրաշքներ է թաքցնում, որ Արևելքի ժողովուրդների ազատագրությունը գործնականորեն այժմ լիովին իրագործելի է ոչ միայն միջազգային հեղափոխության հեռանկարների տեսակետից, այլև Ասիայում, Սիբիրում կատարված անմիջական ռազմական փորձի տեսակետից...» (Երկեր, հատ. 30, էջ 177—178)։ Վ. Ի. Լենինի այս կանխատեսումը ևս հաստատվեց բազմաթիվ պատմական փաստերով, որոնցից մեկը Վիետնամի ժողովրդի հերոսական պայքարն է իմպերիալիզմի միացյալ



ուժերի դեմ։ Սովետական երիտասարդ պետության ազդեցության տարածմանը մեծապես նպաստեց իմպերիալիստական երկրների և ցարական Ռուսաստանի գաղտնի պայմանագրերի հրապարակումը, որոնց մեջ զգալի տեղ էր հատկացված Արևելքի երկրների մասնատման, ազդեցության ոլորտների և գաղութային շահագործման պլաններին։ Սովետական Ռուսաստանի կառավարությունը ոչ միայն բացեց իմպերիալիստների կեղտոտ մեքենայությունների վարագույրը, այլև հայտարարեց, որ նա հրաժարվում է ցարական կառավարության ձեռք բերած բոլոր արտոնություններից՝ իր հարևան արևելյան երկրների նկատմամբ և հաստատում է նրանց հետ իրավահավասար, բարիդրացիական հարաբերություններ, օգնում նրանց՝ ձեռք բերելու իրենց անկախությունը և ազատությունը։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը և սովետական երկրի հաջողությունները դարձան ոգեշնչող ուժ Արևելքի ժողովուրդների ազգային ազատագրական պայքարում։ Այն հետզհետե դարձավ ավելի կազմակերպված և նպատակասլաց։ Հակաիմպերիալիստական, համազգային ընդհանուր խնդիրները միավորեցին բոլոր խավերին՝ աշխատավորներին, ազգային բուրժուազիային, հողատերերի ու հոգևորականների մի մասին։ Այսպիսով, ազատագրական շարժման այս էտապում արդեն ստեղծվեց և քննություն բռնեց ազգային ճակատը, որպես տեղական ուժերի քաղաքական հասունության ապացույց։ Շարժման այս շրջանի մյուս յուրահատկությունը կայանում է նրանում, որ բանվոր դասակարգը կոփվեց, դարձավ ակտիվ քաղաքական գործոն և հաճախ՝ ազատագրական պայքարի ղեկավար ուժ։ Երրորդ կարևոր հետևությունը կայանում է նրանում, որ այս բոլոր իրադարձությունները իրենց կնիքը դրեցին իմպերիալիստական տերությունների գաղութային քաղաքականության վրա և վերջինս ենթարկվեց որոշ փոփոխությունների։ Այսպես, Եգիպտոսի, Իրաքի, Հնդկաստանի և այլ երկրների ժողովուրդների պայքարը ստիպեց, որ նրանցից մի քանիսը հայտարարվեն «ինքնուրույն» կամ «դաշնակից» պետություններ։ Մյուս երկրներում ստեղծվեցին տեղական ինքնավարության օրգաններ։

Հնարավոր չէր այլևս հին ձևով կառավարել գաղութները, մանավանդ որ գոյություն ուներ բոլոր կենսական խնդիրների լուծման սովետական երկրի կենդանի օրինակը, նրա անշահախնդիր տնտեսական ու քաղաքական, դիվանագիտական ու բարոյական օգնությունը։

Կապիտալիզմի համընդհանուր երկրորդ ճգնաժամի պայմաններում ստեղծված համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյությունը, սոցիալիզմի հաղթանակը մասնավորապես Արևելքի երկրներում՝ Չինաստանում, Վիետնամում, Կորեայում, ունեցավ իր անմիջական ազդեցությունը իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայման պրոցեսի վրա, որը այդ ճգնաժամի երրորդ էտապում հանգեցրեց գաղութատիրության համարյա լրիվ վերացմանը։ Թվերի լեզվով այս պրոցեսը ներկայացնում է հետևյալ պատկերը.

| Գաղութների տարածությունը կազմում էր | 1919 թ. | 1945 թ. | 1966 թ. |
| --- | --- | --- | --- |
| երկրագնդի մակերևույթի . . . . . | 67% | 28,6% | 4% |
| ազգաբնակչությունը՝ աշխարհի բնակչության ընդհանուր թվի մոտ . . . . . | 70% | 30% | 0,1% |

Խոշորագույն գաղութային այնպիսի երկրներ, ինչպես Ճապոնիան, Իտալիան և Բելգիան ամբողջապես կորցրին իրենց գաղութները, Ֆրանսիան կորցը-

րեց նրանց 98,8 տոկոսը, Հոլանդիան՝ 98, ԱՄՆ-ը՝ 96, Մեծ Բրիտանիան՝ 87 տոկոսը և այլն:

Երկրագնդի քարտեզի վրա այս փոփոխությունների հետևանքով վերջին 20 տարվա ընթացքում ավելացան մոտ 70 նորաստեղծ պետություններ: Նախկին գաղութների ազգաբնակչության մոտավորապես 97 տոկոսը և տերիտորիաների 95 տոկոսը ներկայումս պատկանում է անկախ պետություններին և ազատագրված ժողովուրդներին:

Սակայն, միայն քաղաքական անկախությունը դեռ բավարար չէ լրիվ ինքնուրույն լինելու համար: Ազգային-ազատագրական հեղափոխությունը,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— չի ավարտվում քաղաքական անկախության նվաճմամբ: Այդ անկախությունը խախուտ կլինի և կվերածվի ֆիկցիայի, եթե հեղափոխությունը սոցիալական ու տնտեսական կյանքում չի հանգեցնի խոր փոփոխությունների և չի լուծի ազգային վերածննդի կենսական խնդիրները: (էջ 55): Դարերով հարստահարված, կողոպուտի և վայրագությունների զոհ դարձած նախկին գաղութային և կախյալ երկրների տնտեսությունը քայքայված է, և վիճակը՝ ծանր: Բավական է նշել, որ մեկ հոգուն ընկած արդյունաբերական արտադրանքը, առաջավոր երկրների հետ համեմատած, պակաս է 20—40 անգամ: Այստեղ է ապրում կապիտալիստական աշխարհի ազգաբնակչության 70 տոկոսը, սակայն արտադրվում է արդյունաբերական արտադրանքի միայն 1 տոկոսը: Աշխարհում արտադրվող սննդամթերքների միայն 20 տոկոսն է յուրացվում զարգացող երկրներում: Այս պատճառով, հիշյալ երկրներում ապրող երեխաների մոտ 70 տոկոսը կամ չի ստանում անհրաժեշտ կալորաժի որակավոր սնունդ կամ մնում է կիսաքաղց: Հետևանքը—կենդանի մնացած երեխաների 20—25 տոկոսը հոգեկան և զանազան այլ հիվանդությունների պատճառով լիարժեք չէ:

Ամփոփ տվյալներով՝ մեկ հոգուն ընկնող ազգային եկամտի միջին գումարը զարգացած կապիտալիստական երկրներում հասնում է 800 դոլարի, իսկ զարգացող երկրներում՝ կազմում է 60 դոլարից ոչ ավելի: Հասկանալի է, որ նման պայմաններում զարգացող երկրների ժողովրդական հոծ մասսաները դեռևս շատ հեռու են ժամանակակից քաղաքակրթության բարիքները վայելելուց, քաղցը, համաճարակները, անգրագիտությունը (80—85 տոկոս), դպրոցների, ազգային կադրերի պակասն ու նյութական միջոցների անբավարար վիճակը երկար ժամանակ այդ ժողովուրդներին կպահեն դեռևս միջինից ցածր մակարդակի վրա: Այդ վիճակից դուրս գալու համար պետք է հաղթահարել, նախ՝ գաղութատիրության ստեղծած ներքին դժվարությունները: Իմպերիալիզմի դարավոր տիրապետությունը հասցրել է այն բանին, որ Արևելքի երկրների մեծ մասում չափազանց թույլ է զարգացած լեռնահանքային արդյունաբերությունը, նոր են ստեղծվում ծանր արդյունաբերության առանձին ձեռնարկություններ, քիչ թե շատ զարգացած է միայն մանր և արհեստագործական արդյունաբերությունը: Գյուղատնտեսության մեջ տիրապետում է մոնոկուլտուրային սիստեմը, որի հետևանքով մինչև այսօր էլ, օրինակ, Աֆրիկայի երկրների արտահանության հիմնական մասը, դա անմշակ հումքն է և մոնոկուլտուրայի արդյունքը հանդիսացող սուրճը, բամբակը, կակաոն, արախիսը և այլն: Ըստ տնտեսագետների տվյալների, այս տիպի արտահանումը շարունակում է աճել և զուգահեռաբար իջնում է արտահանվող նյութի և հումքի գինը: Այսպես, վերջին տասը տարում Աֆրիկայից արտահանվող նյութերի ծավալը աճել է 62 տոկոսով, իսկ գինը իջել՝ 25 տոկոսով: Մյուս կողմից՝



կապիտալիստական տերությունները ավելի շատ արտահանում են, քան ներմուծում և այդ անհավասար փոխանակության հետևանքով նույն ժամանակաշրջանում արևմտյան մոնոպոլիաների սեյֆերն է մտել մոտ 20 միլիարդ դոլար: Այնուհետև հաշվել են, որ եթե, օրինակ, 1961 թվականին զարգացող երկրներին տրվող «օգնության» գումարը կազմել է 1,630 միլիոն դոլար, դրա փոխարեն վերջիններս վճարել են 4,055 միլիոն դոլար: Մոտավորապես նույնքան գումար Արևմուտքի զանազան կազմակերպություններ և մասնագետներ կորզում են, այսպես կոչված; «ծառայությունների—սերվիսի» միջոցով:

Այսպիսով, իմպերիալիստական երկրները շարունակում են կողոպտել իրենց նախկին գաղութների ժողովուրդներին, տալով նրան տարբեր ձև ու երանգ:

Պետական «օգնությունից» բացի ներթափանցման ամենաուժեղ միջոցը մասնավոր կապիտալի դիրքերի ամրապնդումն է: Իսկ այն Հնդկաստանի տնտեսության մեջ, օրինակ, կազմում է մոտ 60 տոկոս: Ասիայի և Աֆրիկայի համարյա բոլոր երկրները ենթակա են նման երևույթի: Օտար բանկերը, ապահովագրական ընկերությունները, առևտրական կազմակերպությունները, մոնոպոլիստական բազմապիսի ձեռնարկությունները դեռևս ծավալում են այստեղ ակտիվ գործունեություն:

Բացի նյութական հարստությունների կողոպուտից, վերջին տարիներս Արևմուտքը զանազան անազնիվ միջոցներով իր կողմն է քաշում Արևելքի երկրների մասնագետներին և գիտնականներին: Այս չարագուշակ երևույթը ընդունել է այնպիսի ծավալ, որ ՄԱԿ-ը ստիպված էր լսել հատուկ զեկուցում, որով հանդես եկավ իրանական սոցիոլոգ Նարագին: Թվերով ու փաստերով զեկուցողը ցույց տվեց, թե ինչպիսի մեծ չարիք է հսկայական նյութական և այլ դժվարություններով պատրաստած, Ասիայի և Աֆրիկայի երկրներին չափազանց անհրաժեշտ այս մասնագետներին տեղափոխել Ամերիկա կամ Եվրոպա՝ վճարելով բարձր աշխատավարձ: Նարագիի ասելով, ԱՄՆ-ի արդյունաբերությանը, օրինակ, 1970 թ. անհրաժեշտ են լինելու 1,4 միլիոն ինժեներ և այլ մասնագետներ: Մինչդեռ, 1966 թ. սկզբին նա ուներ այդ թվի ուղիղ կեսը միայն: Իսկ բուհերը տալիս են տարեկան ընդամենը 30 հազար մասնագետ: Պակասը լրացնելու ամենից հարմար և էժան ձևը ԱՄՆ-ի կառավարությունը համարում է ուրիշ երկրներից մասնագետներ գնելը: Ըստ նույն աղբյուրի տվյալների, ԱՄՆ-ում ներկայումս աշխատում են 20 հազար օտարերկրացի բժիշկներ, իսկ Անգլիայում՝ 4 հազար:

Այնուհետև զեկուցողը նշեց, որ միայն Իրանից 1957—1965 թթ. պաշտոնապես ԱՄՆ են եկել սովորելու 6526 երիտասարդ, որոնցից 3802-ը կամ 58 տոկոսը ավարտելուց հետո մնացել են այնտեղ: Նույնը կատարվել է Աֆրիկայի երկրների ուսանողության 50 տոկոսի հետ: Ավելի հաճախ լինում է այսպես. ԱՄՆ-ը հրապուրում է Եվրոպայի երկրների գիտնականներին և մասնագետներին ու տանում, իսկ վերջիններս իրենց բացը լրացնում են զարգացող երկրների մասնագետների հաշվին, վճարելով վերջիններիս ավելի բարձր, սակայն ոչ այնքան, որքան տեղացի մասնագետներին: Սա էլ նեոգաղութատիրության քաղաքականության նոր դրսևորումներից մեկն է: Այս երևույթի հակառակ կողմն է, այսպես կոչված, «խաղաղության կորպուսի» մասնագետների «կամավոր» ժամանումը Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրները «օգնելու» տեղական ուժերին՝ կուլտուրայի և տնտեսության տարբեր բնագավառներում: Անցյալ տարի այդ աշխարհամասերի 49 երկրներում կային

մոտավորապես 15 հազար այդպիսի «կամավոր» մասնագետ։ Նախատեսվում է հաջորդ տարվա վերջին նրանց թիվը 60 երկրներում հասցնել 19 հազարի։ Իդեոլոգիական էքսպանսիան համարվում է չափազանց կարևոր միջոց՝ պահպանելու իմպերիալիզմի դիրքերը Արևելքում։ «Մենք պարտավոր ենք մանրազնին հետևել Արևելքի հոգևոր զարգացմանը, թե՛ կոմունիզմի ներսում և թե նրանից դուրս, և, հնարավորին չափ, ազդել այդ զարգացման վրա»,— հայտարարել է արևմտագերմանական ռևանիշիզմի հայտնի գաղափարախոս Էռնա Մայոնիկան։ Երբ նման միջոցները չեն ապահովում իմպերիալիստների տիրապետության պահպանումը, և երբ կան անհրաժեշտ պայմաններ, ներքին ռեակցիոն ուժերի օգնությամբ տեղի են ունենում ռազմական հեղաշրջումներ, ստեղծվում են նոր պրոիմպերիալիստական ռեժիմներ։

Սակայն այս բարդ իրավիճակը չի կարող հանգեցնել գաղութատիրության վերականգնմանը ո՛չ միայն ընդհանրապես, այլև առանձին երկրներում, որտեղ ժամանակավորապես տիրապետում են իմպերիալիստները և նրանց տեղական գործակալները։ Փոխվել են ժամանակները, փոխվել են ներքին ուժերի և արտաքին պայմանների փոխհարաբերությունները մեր օրերում։ Ձևավորվում ու զարգանում են բանվոր դասակարգը, ազգային բուրժուազիան, միջին խավերը և մտավորականությունը, որոնք հանդիսանում են ժամանակակից պրոգրեսի կրող ուժերը Արևելքում։ Այսպես, երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո բանվորների ու ծառայողների թիվը Ասիայի ու Աֆրիկայի երկրներում մոտավորապես կրկնապատկվել է և 60-ական թվականների սկզբում հասել մոտ 137 միլիոն մարդու։ Հաղթահարելով քաղաքական, ազգային, ցեղային, կրոնական և այլ սահմանափակումներ՝ բանվոր դասակարգը միավորվում է ստեղծելով տարբեր կազմակերպություններ։ Այդ պրոցեսի լավագույն ապացույցն է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների և նրանց անդամների աճի պատկերը։

| | | 1939 թ. | 1957 թ. | 1961 թ. | 1966 թ. |
|---|---|---|---|---|---|
| Եվրոպա | — | 500 հազար | 2,5 մլն | 2,5 մլն | 2,5 մլն |
| Ասիա | — | 20 հազար | 1,7 մլն | 2,3 մլն | 3,8 մլն |
| Աֆրիկա | — | 5 հազար | 20 հազար | 40 հազար | 60 հազար |

Աղյուսակը ցույց է տալիս, որ հետպատերազմյան շրջանում Ասիայի և Աֆրիկայի կոմունիստական կուսակցությունների աճը, չնայած Զինաստանի կոմկուսի ղեկավարության պառակտողական քաղաքականությանը և Ինդոնեզիայի դեպքերին, ունի ավելի բարձր տեմպ, քան Եվրոպայում և այժմ գոյություն ունեցող կուսակցությունների կեսից ավելին՝ 47-ը, գտնվում են Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում։

Այս նոր իրադրության մեջ ոչ միշտ հետևողական լինելով, ակտիվացրել է իր գործունեությունը ազգային բուրժուազիան, որը բազմաթիվ զարգացող երկրներում կանգնած է պետության գլուխ և հաճախ է մասնակցում հակաիմպերիալիստական պայքարին։

Հատուկ ուշադրության է արժանի, այսպես կոչված, միջին խավերի, մանրբուրժուական տարրերի դիրքը։ Ղեկավար ունենալով ձախ կազմակերպությունների և հեղափոխական դեմոկրատների, այդ խավերը՝ ազգային-ազատագրական պայքարի տարբեր էտապներում, ցույց տվեցին կամք և վճռականություն՝ հասնելու լրիվ և վերջնական անկախության, ազատվելու իմպերիալիզմից և նրա գործակալներից։



Եգիպտոսը և Սիրիան, Բիրման և Տանզանիան ու շատ ուրիշ երկրներ տվեցին այդ պայքարի լավագույն օրինակներ։ Գաղութատիրության և նրա հետևանքների վերացման, տնտեսական ու քաղաքական վերափոխումների պահանջը որոշ երկրների միջին խավերին դարձրեց պրոգրեսիվ ուժ՝ դրված խնդիրները կատարելու կարևոր գործում։

Ելնելով սոցիալիստական երկրների փորձից՝ ազատագրված երկրների կեսից ավելին արդեն պլանավորում է իր տնտեսության զարգացումը։ Շատ երկրներում տնտեսության պետական սեկտորը կատարում է առաջատար ուժի դեր։ Արաբական Միացյալ Հանրապետությունում, օրինակ, արդեն 1963 թվականին պետական սեկտորում գտնվող արդյունաբերական ձեռնարկությունները բաց էին թողնում արտադրանքի 70 տոկոսը, իսկ անցյալ տարի պետական սեկտորը հսկում էր արդյունաբերական արտադրանքի 90 տոկոսը և համարյա ամբողջ արտաքին առևտուրը։ Մալիում արդյունաբերության 80 տոկոսը միավորված է պետական սեկտորում։ Գվինեայում ազգայնացված են ալյումինի և այլ հանքային հարստությունների արտադրությունը, իսկ Բիրմայում՝ բանկերը, էներգաարդյունաբերությունը, տրանսպորտի 83, լեռնային արդյունաբերության 60 տոկոսը և այլն։ Հնդկաստանում ծանր արդյունաբերության 17 առաջատար ճյուղեր գտնվում են պետական սեկտորի բացարձակ հսկողության տակ։

Պետության հսկողության ներքո զարգացել և զարգանում է արդյունաբերությունը, իրագործվում է ագրարային ռեֆորմը և որոշ երկրներում (Բիրմայում) համարյա ոչնչացված է խոշոր հողատիրությունը։ Լուծվել են պետական ու կուլտուրական շինարարության կարևոր հարցերը։ Սակայն, այս և չթվարկված շատ կենսական խնդիրների լուծումը կախված է նրանից, թե ինչպիսի՝ կապիտալիստական, թե ոչ կապիտալիստական ճանապարհով են ընթանալու զարգացող բազմաթիվ երկրներ։

Ազատագրված ժողովուրդները լավ են ճանաչում կապիտալիստական հասարակարգը իր բոլոր արատներով և տեսնում են դեմոկրատական սոցիալիստական հասարակարգի առավելությունները։

Այստեղից առաջացած տարերային ձգտումը դեպի սոցիալիզմ հանգեցրել է, այսպես կոչված, «ազգային սոցիալիզմի» մի շարք թեորիաների ձևավորվելուն։ Նրանցից մի քանիսը հասարակական նոր հարաբերությունների զարգացումը պարփակում են, ըստ էության, բուրժուական կամ բուրժուա-դեմոկրատական ռեֆորմների մեջ և փաստորեն ձգտում զարգացումը տանել կապիտալիստական ուղիով։ Մյուս խումբը ներկայացնում է հեղափոխական դեմոկրատների, այսինքն՝ գյուղի և քաղաքի մանրբուրժուական և կիսապրոլետարական աշխատավոր տարրերի, ինչպես նաև ռադիկալ ինտելիգենցիայի ու ձևավորվող պրոլետարիատի տեսակետները, որոնց մեջ ցայտուն կերպով արտահայտված է իմպերիալիստական մոնոպոլիաների վերացման, խոշոր հողատերերի և տեղական բուրժուազիայի իրավունքների սահմանափակման և ժողովրդական մասսաների դեմոկրատական իրավունքների ընդլայնման ձգտումը։ Այս խմբի ներկայացուցիչների տեսակետները իրենց մեջ շատ բան ունեն գիտական սոցիալիզմից, բայց դեռևս կանգնած չեն մարքսիստական դիրքերի վրա։ Սակայն մոտենալու տենդենցը միանգամայն ռեալ է։ Սոցիալիստական շարժումը, իր տարբերակներով հանդերձ, Արևելքում ամրապնդվում է, քանի որ բացի բարենպաստ ներքին պայմաններից, գոյություն ունեն սոցիալիզմի համաշխարհային սիստեմ և աճող միջազգային

դեմոկրատական ու բանվորական շարժում, որոնց նյութական և բարոյա-քաղաքական օգնությունը զարգացող երկրների առաջընթացի կարևորագույն պայմաններից մեկն է։ Մյուս կողմից, զարգացող երկրներին ցույց տրվող օգնությունը բխում է սոցիալիստական պետությունների էությունից։ Վ. Ի. Լենինը պահանջում էր անել ամեն ինչ, որպեսզի «միանալ, միաձուլվել մոնղոլների, պարսիկների, հնդիկների, եգիպտացիների հետ, մենք մեր պարտքը և մեր շահն ենք համարում անել այդ, որովհետև այլապես սոցիալիզմը Եվրոպայում անկայուն կլինի։ Մենք կաշխատենք դրանով մեզնից ավելի հետամնաց ու ճնշված ժողովուրդներին... օգնել անցնելու մեքենաներ գործադրելու, աշխատանքը հեշտացնելու, անցնելու դեմոկրատիային, սոցիալիզմին» (հատ. 23, էջ 77)։ Վ. Ի. Լենինի այս պատգամը անխախտ կերպով կենսագործվում է սովետական կարգերի հիմնադրման առաջին օրերից։ Սովետական Միության դիվանագիտական, քաղաքական, ռազմական օգնության շնորհիվ ստացան իրենց անկախությունը և ճանաչվեցին իրավականորեն՝ Ալժիրը, Բիրման, Ինդոնեզիան, Ցեյլոնը։ 1956 թվականի աշնանը, երբ իմպերիալիստները ուզեցին բռնի ուժով վերադարձնել Սուեզի ջրանցքը, Սովետական Միության վճռական դիրքը օգնեց Եգիպտոսին՝ պահպանելու իր անկախությունը և Սուեզը։ Մեր օրերում, Իսրայելի կողմից սանձազերծված պատերազմական գործողությունները կհանգեն նույն վերջավորությանը, քանի որ արաբական բոլոր երկրները, Արևելքի բազմաթիվ պետությունները և սոցիալիստական երկրները միահամուռ կերպով դեմ են ագրեսիային, իսկ սովետական կառավարությունը, մի շարք զգուշացումներից հետո, հունիսի 5-ի իր հայտարարության մեջ նշում է, որ «իրեն իրավունք է վերապահում իրագործելու բոլոր անհրաժեշտ միջոցառումները, որոնք բխում են իրադրությունից»։ Այս լուրջ զգուշացումը իմպերիալիզմի և ագրեսիայի ուժերին կունենա անպայման իր բարերեր հետևանքները։ Հիշենք, որ դեռևս 1960 թ. դեկտեմբերին, ՄԱԿ-ի 15-րդ սեսիան, Սովետական Միության նախաձեռնությամբ ընդունեց գաղութային երկրներին և ժողովուրդներին լրիվ և վերջնական անկախություն տալու դեկլարացիան, որի պաշտպանության համար քիչ ջանք և միջոցներ չի հատկացրել մեր հայրենիքը։ Ազատագրված երկրներն ունեն հսկայական բնական հարստություններ և բանվորական ուժի մեծ ռեզերվ։ Սակայն նրանք չունեն այդ հնարավորությունները օգտագործելու անհրաժեշտ պայմանները՝ ժամանակակից արտադրամիջոցներ, տեխնիկական անհրաժեշտ փորձ, անհրաժեշտ բարձրորակ մասնագետներ։ Սոցիալիստական երկրների օգնությունը ուղղված է նշված դժվարությունները հաղթահարելու նպատակին։ Այն հատկացվում է տնտեսության պետական սեկտորին, մինչդեռ, Արևմուտքը օգնում է գլխավորապես մասնավոր կապիտալին։ Սոցիալիստական պետությունների օգնությունը, ի հակադրություն իմպերիալիստական երկրների օգնության, չի կապվում ինչ-որ քաղաքական պայմանների հետ և մշտապես աճում է իր ծավալով։ Այսպես, օրինակ, եթե 1956 թ. Սովետական Միությունը տեխնիկական և տնտեսական օգնություն ցույց տալու համաձայնագրեր է կնքել միայն Հնդկաստանի և Աֆղանստանի հետ, ապա այժմ այդ երկրների թիվը հասել է 34-ի, իսկ կառուցվող մոտ 600 օբյեկտների համար տրվող վարկի գումարը կազմում է մոտ 4 մլրդ ռուբլի։ Կառույցներից 220-ը այս տարվա սկզբին հանձնվել է շահագործման։ Վերջին 10 տարիների ընթացքում բուռն զարգացում է ապրում Սովետական Միության արտաքին առևտուրը։ Նրա շրջանառության ընդհանուր գումարը, նկատի առնելով միայն Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրները, ավելացել է 13 անգամ։ Միայն Աֆրիկայի հետ ապրանքափոխանակության գումարը այդ տարիների ընթացքում աճել է 49 միլիոն ռուբլուց՝ 475 միլիոն ռուբլու։

Մյուս կողմի պահանջով Սովետական Միությունը արտահանում է աճող քանակությամբ մեքենաներ, սարքեր, տնտեսության համար անհրաժեշտ գործիքներ։ 1964 թվականի ամփոփված տվյալների համաձայն մեր երկրից արտահանվող նման ապրանքների տոկոսը կազմել է Հնդկաստան ներմուծվող ապրանքի 77 տոկոսը, Միացյալ Արաբական Հանրապետություն՝ մոտ 69, Աֆղանստան՝ 66, Իրաք՝ 75 տոկոսը և այլն։

Իր համապատասխան մասն ունի այդ օգնության մեջ Սովետական Հայաստանը։ Նրա արդյունաբերության արտադրանքի մոտ 150 տեսակներ՝ մեքենաներ, հաստոցներ, ճշգրիտ գործիքներ, էլեկտրասարքավորումներ արտահանվում են 70 երկրներ, որոնց մեջ մեծ մաս են կազմում զարգացող երկրները։

Բարեկամական օգնության մյուս և կարևոր կողմը կայանում է նրանում, որ պարտքերի մարումը, կամ ծախսերի հատուցումը զարգացող երկրները իրագործում են իրենց համար չափազանց ձեռնտու պայմաններով։ Նրանք վճարում են Սովետական Միությանը և մյուս սոցիալիստական երկրներին իրենց սովորական ապրանքները՝ բամբակ, կաուչուկ, բուրդ, կաշի, ցիտրուսներ, սուրճ, թեյ, ծխախոտ և այլ արտադրանքներ։ Հնդկաստանը իր արտահանվող ապրանքների 40 տոկոսը տալիս է Սովետական Միությանը։ Միայն 1964 թ. Սովետական Միությունը ներմուծել է ավելի քան 120 միլիոն ռուբլու ապրանք, որը կազմում է վերոհիշյալ երկրների արտահանության 50 տոկոսը։

Սովետական Միությունը միջազգային կուլտուրական կապեր ունի ավելի քան 100 երկրների հետ, որոնց կեսից ավելին զարգացող երկրներն են։ Այստեղ կառուցվել և կառուցվում են ավելի քան 100 գիտական կենտրոններ։

Վերջին 5 տարում երկու անգամ ավելացել է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներից ուսանողների թիվը սովետական ուսումնական հաստատություններում. Նույն ժամանակաշրջանում 4 անգամ ավելացել է սովետական բժիշկների, մանկավարժների և այլ մասնագետների թիվը, որոնք աշխատում են 28 զարգացող երկրներում։

Արաբական երկրների կոմունիստական կուսակցությունների վերջին խորհրդակցության փաստաթղթերում արաբական ժողովուրդների բոլոր հաղթանակները իմպերիալիզմի ու ներքին ռեակցիոն ուժերի դեմ, բոլոր կարևորագույն բարեփոխությունները և հեղափոխական շարժման հաջողությունները կապվում են «անմիջականորեն Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի, արաբական երկրների, Սովետական Միության ու մյուս սոցիալիստական պետությունների միջև սերտ համագործակցության զարգացման հետ»։ Զարգացող երկրների հետ սոցիալիստական պետությունների համագործակցությունը դարձել է միջազգային կյանքի կարևորագույն գործոններից մեկը՝ հանուն երկարատև ու կայուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի հաղթանակի։ Ժողովուրդների և պետությունների փոխհարաբերությունների, համամարդկային քաղաքակրթության հետագա զարգացման վրա հիշյալ գործոնը կունենա բախտորոշ նշանակություն։



ՆԱԳՈՒՇ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ՀԱՅ ԱԶԳԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր ժողովուրդն անցավ հազարամյակների խորքից ձգվող դժվարին ու տատասկոտ քառուղիներով, դիմագրավեց բազում արհավիրքներ, դարերով մաքառեց իր ազատության համար և հարատևեց մինչև այն կենարար օրը, երբ, վերջապես, մեծ Հոկտեմբերի հաղթական դրոշի ներքո գտավ իր փրկությունը և կորցրած պետականությունը։ Հայ ազգի կրած անվերջ տառապանքների և կեղեքումների դեմ վարած ծանր գոյամարտերի ու ցավալից դեգերումների բովում է սկիզբ առել և բյուրեղացել նրա ազատագրական իղձը, որի կենսագործման հնարավորությունը պատմական հանգամանքների թելադրանքով միշտ առնչվել է որևէ հզոր տերության «գթասրտության» հետ։ Բայց շահի ու կեղեքման աշխարհում ճնշվողին ընդառաջում են այն չափով միայն, որ չափով նա հագուրդ է տալիս օգնողի ընչաքաղցությանը։*

*Մեծ Հոկտեմբերն առանձնահատուկ նշանակություն ունեցավ հայ ժողովրդի պատմական ճակատագրի համար։ Սոցիալիստական հեղափոխության ազատաբեր հողմերը նրան հասան հոգեվարքի պահին, և միայն Սովետական իշխանության հաղթական դրոշի ներքո նա գտավ իր փրկությունն ու վերածնունդը։ Մեր ժողովուրդը համոզվեց, որ օրհասական վիճակից դուրս գալու միակ ելքը տիրող կարգերի տապալումը, Սովետական Ռուսաստանի ազատագրված ժողովուրդների ճանապարհով ընթանալը և նրանց հետ եղբայրական ամրակուռ դաշինք կնքելն է։ Երիցս իրավացի էր հայ ազգի սոցիալական*



*առաջընթացի անմահ ռահվիրա Մ. Նալբանդյանը, երբ անցյալ դարի 60-ական թվականներին հայ ժողովրդի ազատագրման միակ հուսալի նախադրյալը ռուսական ցարիզմի խորտակումն էր համարում։*

*Հիրավի, մեր ժողովրդի անկաշառ և հզոր բարեկամը դարավոր ստրկության դեմ ծառացած ռուսական* հեղափոխական պրոլետարիատը *հանդիսացավ, կոմունիստների գլխավորած ռուս մեծագործ ժողովուրդը։*

*Նշելով մեծ Հոկտեմբերի 50-ամյակը, Սովետական Հայաստանի աշխատավորները լի են հպարտությամբ և խոր երախտագիտությամբ այն բանի համար, որ միայն Հոկտեմբերյան* աշխարհաշեն *հեղափոխության փառավոր հաղթանակով սկսվեցին հայ ժողովրդի վերջնական ազատագրումը, նրա ինքնության հաստատումն ու նոր պետականության կազմավորումը։ Նոր պետականությունն այն մեծագույն և անգնահատելի պատմա-քաղաքական նվաճումներից մեկն է, որը մեր ժողովուրդը ձեռք բերեց իր անվեհեր մաքառումներով՝ եղբայրական ռուս ժողովրդի անմիջական օգնությամբ։*

*Բնորոշ և ուշագրավ է, որ 1917 թվականի հունիսին, մերկացնելով ժամանակավոր կառավարության նենգ խաղերը ժողովուրդների բախտորոշման գործում, Լենինը պահանջում էր* ազատություն տալ *Հայաստանին, չխեղդել նրա ազգային ինքնության ունչը.*

> «Ապացուցե՛ք,—*ասում էր Իլյիչը ժամանակավոր կառավարության սինլքոր պարագլուխներին,*—որ դուք ազատագրում եք Հայկական հանրապետությունը, համաձայնության մեջ եք մտնում բանվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների հետ յուրաքանչյուր երկրում, որ դուք ազատ հանրապետության կողմնակից եք, այն ժամանակ ռուսական հեղափոխության արտաքին քաղաքականությունը կդառնա իրոք հեղափոխական, իրոք դեմոկրատական» (Երկեր, հ. 25, էջ 38)։

*Ճնշված ազգի ազատագրումը և նրա ինքնուրույն պետականության ստեղծումը հեղափոխության մեծ առաջնորդի հայեցակետով՝ ամեն մի կուսակցության կամ պետության հեղափոխականության և դեմոկրատականության չափանիշներից մեկն է։ Թեև կես դար է անցել այդ օրերից, բայց այժմ էլ մնում են կենսահաստատ առաջնորդի վարած կոմունիստական հեղափոխության բարդ ստրատեգիայի սկզբունքները։ Նա պարզ տեսնում էր, որ ժամանակավոր կառավարությունը թշնամական կուրս է վարում ոչ միայն բանվոր դասակարգի ու գյուղացիության, այլև ճնշված ազգերի արդարացի պահանջների նկատմամբ։*

*Հեղափոխությունից մեկ ամիս առաջ Լենինը գրել է.*

> «Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի կուսակցությունը, մի կուսակցություն, որը գործում է վելիկոռուսների լեզվով, պարտավոր է ճանաչել անջատման իրավունքը։ Նվաճելով իշխանությունը, մենք անպայման իսկույն ևեթ կճանաչենք այդ իրավունքը և՛ Ֆինլանդիայի համար, և՛ Ուկրաինայի համար, և՛ Հայաստանի համար, և՛ ցարիզմի (ու վելիկոռուսական բուրժուազիայի) կողմից ճնշված յուրաքանչյուր ժողովրդի համար» (Երկեր, հ. 26, էջ 206)։

*Ճնշված ազգերի սուվերեն և ազատ գոյության ճանաչումը Լենինը համարում էր կոմունիստների կուսակցության* պարտականությունը, *նրա ազգային քաղաքականության անկյունաքարը։ Լենինն ի լուր աշխարհի հռչակեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության ազգային քաղաքականության հետևյալ գլխավոր սկզբունքը.*

> «Մենք ուզում ենք ազատ միավորում և այդ իսկ պատճառով պարտավոր ենք ճանաչել անջատման ազատությունը (առանց անջատման ազատության՝ միավորումը չի կարող կոչվել ազատ)... Մենք ցանկանում ենք, որ ռուս ժողովրդի (ես չեի քաշվի նույնիսկ ասելու՝ վելիկոռուս, որովհետև դա ավելի ճիշտ է) հանրապետությունն այլ ազգերին իր կողմը գրավի, բայց ինչո՞վ։ Ոչ թե բռնությամբ, այլ բացառապես կամավոր համաձայնությամբ (ընդ-

գծումը մերն է—Ն. Հ.), այլապես կխախտվի բոլոր երկրների բանվորների միասնությունն ու եղբայրական դաշնադրությունը» (Երկեր, հ. 26, էջ 207)։

Կոմունիստների վարած ազգային քաղաքականության այս մարդասիրական սկզբունքը հասկացան շատ ազգերի մինչև անգամ բուրժուական լիդերները։ Սակայն, նույնիսկ այն պատմական իրողությունից հետո, երբ սովետների III համագումարը (1918 թվականի հունվարին) իր՝ Աշխատավոր ու շահագործվող ժողովուրդների դեկլարացիայում հռչակեց, որ Սովետական Ռուսաստանի Հանրապետությունը խարսխվում է ազատ ազգերի միության հիմքի վրա, Հայաստանում իշխանության գլուխ անցած դաշնակցական գործիչները դեռևս շարունակում էին փայփայել վիլսոններից ու քերզոններից փրկություն հայցելու որքան սին, նույնքան և կործանարար պատրանքները։

Ռուսաստանի կոմունիստներն առաջին իսկ հնարավորության դեպքում փորձեցին իրենց ծրագիրը գործի վերածել։ Նրանք չհապաղեցին իրական օգնություն ցույց տալու հայ ժողովրդին իր բախտը տնօրինելու գործում։ 1917 թվականի դեկտեմբերի 31-ին Ռուսաստանի ժողովրդական կոմիսարների սովետը հրատարակեց «Դեկրետ Թուրքահայաստանի վերաբերյալ», որում ասված էր, թե Ռուսաստանի բանվորական և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է Ռուսաստանի կողմից օկուպացված Թուրքահայաստանի հայերի ազատ ինքնորոշման իրավունքը՝ մինչև լիակատար անկախություն։

Դրա հետ մեկտեղ, Սովետական Ռուսաստանն անհրաժեշտ էր գտնում բռնությամբ Թուրքիայի խորքերը քշված հայ ժողովրդի զանգվածների անարգել վերադարձը մայր հայրենիք, որտեղ պետք է դեմոկրատական հիմունքներով հայ ժողովրդի ազգային պետականություն հաստատվեր։ Սակայն պատմա-քաղաքական հանգամանքների բերումով չիրականացավ մեր ժողովրդի համար այնքան բախտորոշ և անհրաժեշտ՝ Ռուսաստանի ժողովրդական կոմիսարների սովետի այդ պատմական դեկրետը. չիրականացավ թուրքական ինտերվենտների արշավի, Անդրկովկասի հակահեղափոխության և իմպերիալիստական զավթիչների արյունոտ սադրանքների հետևանքով։ Անդրկովկասի արտակարգ կոմիսար Ստեփան Շահումյանի՝ այդ դեկրետը կիրառելու ջանքերը բախվեցին հակասովետական ուժերի պատվարին, որից կրկին օգտվեց թուրքական իմպերիալիզմը և խոշոր տարածություններ գրավեց Հայաստանի տերիտորիայից։

Այդ օրերին, այսպես կոչված՝ «Անկախ Հայաստանը» վերածվել էր որբերի ու այրիների, սովի ու համաճարակների երկրի, հայ ժողովրդին սպառնում էր պատմության ասպարեզից իսպառ վերանալու ահավոր վտանգը։ Ահա թե ինչ է գրում այդ մասին դեպքերի ականատես մեր պատմաբանը.

«Ես,—գրում էր Լեոն Արշակ Չոպանյանին ուղղված իր նամակում,—ականատես էի, թե ինչպես էր մեռնում հայ ժողովուրդը... Մեզ նույնիսկ վտարել էին մարդկության շարքերից և մեր դժոխային կացությունը, մեր աննկարագրելի տանջանքները ոչ ոքի անհանգստություն չէին պատճառում։ ...Այդ անկախություն չէր, դժբախտություն էր»։

Ծանր ու երկարատև պայքարով, շատ զոհերի ու տառապանքների գնով հայ ժողովրդի ամենահեռատես գործիչներին՝ կոմունիստներին, հաջողվեց ժողովրդին փրկել հոգեվարքից։ Այդ փրկությունն ամրապնդվեց կարմիր բանակի եղբայրական աջակցությամբ։

1920 թվականի մայիսի 10-ին Ալեքսանդրապոլում հռչակված սովետական իշխանությունն անմիջական արձագանքներ գտավ Սարիղամիշում, Դիլիջանի գավառում, Ղազախ-Քարվանսարայում, Զանգեզուրում և այլուր։ Սովետական իշխանության համար մեր անզուգական ընկերների թափած արյունն ապարդյուն չանցավ։ Այն նոր մարտի կոչեց հեղափոխության անպարտ գնդերին։ Եվ ահա 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի հեղափոխական ուժերի ղեկավար ռազմա-հեղափոխական կոմիտեն ազդարարեց.



«Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով և ցանկությամբ, Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունն այսօրվանից Հայաստանը հայտարարում է Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն»։

Նոյեմբերի 29-ը հայ ժողովրդի դարեր առաջ կորցրած պետականության վերականգնման բազմախորհուրդ և լուսապայծառ օրն է, այն օրը, երբ Արևելյան Հայաստանի հողում հռչակվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն։ Լինելով պատմական Հոկտեմբերի անմիջական շարունակությունը, Նոյեմբերը հայ ժողովրդին տվեց այն, ինչ նա երազել էր շատ վաղուց՝ ազատագրված ստեղծագործ աշխատանք, ապահով հայրենիք, անկախ ազգային պետականություն, անկեղծ եղբայրություն այլ ազգերի հետ, նորոգ հիմքերով ազգային մշակույթի ծլարձակում և ստեղծագործական կյանք։

Կանգնելով Հոկտեմբերի ազատաբեր դրոշի ներքո, Հայաստանի աշխատավորությունը, հանձին սովետական կառավարության, անհապաղ ձեռնամուխ եղավ իր նոր, սովետական պետության կերտման գործին։ Հեշտ չէր նոր, սոցիալիստական կյանք կառուցել առաջին համաշխարհային պատերազմի, թուրքական ինտերվենցիայի և դաշնակների անփառունակ տիրապետության հետևանքով քայքայված և արյունաքամ եղած Հայաստանում։ Այդ դժվարին կացությունից դուրս բերելու համար, Սովետական Ռուսաստանի կառավարությունը նյութական և բարոյական վիթխարի օգնություն ցույց տվեց Սովետական Հայաստանին։ Դրա շնորհիվ հաղթահարվեցին սովն ու համաճարակները, ընչազրկությունն ու ավերը, վերականգնվեց քայքայված տնտեսությունը, սկսվեց նոր, լուսաշող կյանքի կերտումը։

Նորաստեղծ բանվորա-գյուղացիական իշխանությունը, որը ՀՍԽՀ Հեղկոմն էր ներկայացնում այն ժամանակ, ճիշտ կիրառելով կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության սկզբունքները, կարողացավ կարճ ժամանակամիջոցում ջախջախել հին պետական մեքենան և ստեղծել սովետների կառավարության ամուր հիմքերը։ Ջնջյալ հայտարարելով դաշնակցականների Ալեքսանդրապոլի հայրենադավ պայմանագիրը, սովետական կառավարությանը հաջողվեց թուրքերին ետ մղել Ախուրյանի մյուս ափը և հայրենիքի սահմանները պաշտպանել նոր կազմակերպված հայկական կարմիր բանակի զորամասերով։

Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ ամսին (դեկտեմբերին) ՀՍԽՀ Հեղկոմի հրամանագրերով կազմավորվեցին տարբեր ժողովրդական կոմիսարիատներ (ռազմական, արտաքին գործերի, լուսավորության, արդարադատության, ներքին գործերի), արտակարգ հանձնաժողով, նոր դատարաններ և քիչ անց՝ ժողովրդական տնտեսության խորհուրդ, աշխատանքի, սոցիալական ապահովության, առողջապահության, պարենավորման և այլ կոմիսարիատներ։

Երկրում վերացվեցին դասերն ու քաղաքացիական աստիճաններն՝ իրենց արտոնություններով ու սահմանափակումներով։ Սահմանվեց մեկ ընդհանուր

կոչում՝ Սովետական Հայաստանի քաղաքացի։ Ստեղծվեցին գավառային, շրջանային ու գյուղական հեղկոմներ։ Հողի ազգայնացմամբ չարքաշ հայ գեղջուկը հնարավորություն ստացավ ազատ պայմաններում մշակելու այն և վաստակած բարիքների տերը լինելու։ Երկրի բնական հարստությունների, ընդերքի ու բանկերի ազգայնացմամբ Հայաստանում դրվեցին հանրային տնտեսավարման ամուր հիմքերը։

ՀՍԽՀ Հեղկոմի դեկրետներով պետականացվեցին հանրապետության մշակութային հաստատությունները, դպրոցն անջատվեց եկեղեցուց։ Հեղկոմի 1920 թվականի դեկտեմբերի 6-ի դեկրետով Հայաստանում պետական լեզու ճանաչվեց հայերենը, իսկ ազգային փոքրամասնությունների ապրած վայրերում՝ հայերենին զուգընթաց՝ նաև նրանց մայրենի լեզուն։ 1921 թվականի հունվարի 23-ին բացվեց Երևանի պետական համալսարանը։ Հանրապետության բնակչության բոլոր խավերի համար ստեղծվեցին ստեղծարար կյանքի սոցիալ-նյութական նախադրյալներ։

Նոր հասարակարգի ստեղծման ճանապարհին այդ ամենն առաջին քայլերն էին, որոնց դաշնակցական խմբապետները փորձեցին խանգարել զենքի ուժով։ Նրանց նյութած դավադրանքի՝ փետրվարյան ավանտյուրայի պատճառով սկսվեց քաղաքացիական կռիվ, որը նոր զոհեր խլեց մեր ժողովրդից։ Քաղաքացիական կռիվների հաղթական ավարտով վերջացավ հեղափոխական մեծ վերափոխումների առաջին փուլը, և Հայաստանը թևակոխեց սոցիալիզմի կառուցման աշխատանքային սխրանքներով լի դարաշրջանը։

1921 թվականի գարնանը մեր երկիրը բռնեց տնտեսական վերականգնման հաստատուն ուղին։ Մայիսի 21-ին Հեղկոմը վերակազմվեց Ժողովրդական կոմիսարների խորհրդի՝ Ալեքսանդր Մյասնիկյանի գլխավորությամբ, և դրանով նշանավորվեց սովետահայ պետական կարգերի իրավա-քաղաքական շինարարության երկրորդ փուլը։ Սովետները սովորեցին աստիճանաբար և հետևողականորեն կատարել տնտեսության կառավարման ու կազմակերպման իրենց կարևորագույն ֆունկցիան։ Նէպի տարիներին ծավալվող տնտեսական հսկայական շինարարության տարբեր բնագավառներում հետզհետե բարձրացան կենտրոնական ու տեղական պետական մարմինների ղեկավար դերը և սովետական օրգանների նախաձեռնությունն ու գործիմացությունը։

Տնտեսական ու մշակութային ընդհանուր վերելքին համընթաց բարձրացավ երկրի բանվորության և աշխատավոր գյուղացիության քաղաքական ու կուլտուրական մակարդակը։ Հարյուր հազարավոր աշխատավորներ ներգրավվելով պետական կառավարման բազմաճյուղ սիստեմում, Հայաստանի սովետները մեծապես նպաստեցին նրանց կոմունիստական գիտակցականության զարգացմանը, աշխատանքային ու քաղաքացիական կարգապահությանը, նոր ավանդների կիրառման դժվարին գործի ամրապնդմանը։ Հազարավոր տաղանդավոր գործիչներ, որոնց եռանդուն մասնակցությամբ ստեղծվեց սոցիալիստական տնտեսությունը, սովորել ու կոփվել են սովետական վարչակառավարչական, տնտեսական ու մշակութային հիմնարկների կոլեկտիվներում։

Շնորհիվ սովետների բազմաբեղուն գործունեության, որի ղեկին միշտ եղել է կոմունիստական կուսակցության ստեղծագործ ձեռքը, պատմության գիրկն անցավ մեր երկրի տնտեսության երբեմնի բազմակացութաձևությունը, գերիշխող դարձավ սեփականության սոցիալիստական-համաժողովրդական ձևը։ Անհետացան դասակարգային հակամարտությունները և ավելի ամրա-



պնդվեց քաղաքի ու գյուղի աշխատավորների դաշինքը, բազմակերպ ու սերտ դարձավ նրանց համագործակցությունը։ Սոցիալիստական տնտեսության ու մշակույթի բարգավաճմամբ հաղթահարվեց գյուղի և քաղաքի հակադրությունը։

Կատարված սոցիալ-տնտեսական և բարոյա-քաղաքական արմատական տեղաշարժերի շնորհիվ էապես կատարելագործվել ու պարզեցվել է սովետական պետական մեքենան։ «Սոցիալիզմի հաղթանակով պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը դառնում է ամբողջ ժողովրդի քաղաքական կազմակերպությունը, բանվոր դասակարգի ղեկավար դերով հանդերձ»։ Սովետական պետության հիմնական ֆունկցիան դարձավ մասսաների ստեղծարար աշխատանքի արդյունավետ կազմակերպումը և քաղաքացիների կոմունիստական դաստիարակությունը։

Սոցիալիստական Հայաստանի սովետական պետականության ծաղկման և հանրապետության տնտեսության ու մշակույթի արագ զարգացման մեծագույն գործոնները հանդիսացան, նախ՝ Անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիայի և ապա՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը։

Ազգային հանրապետությունների կամավոր, ազատ ու իրավահավասար սկզբունքներով զոդված ՍՍՀ Միությունը հանդիսացավ ազգությունների եղբայրության ու համագործակցության աննախադեպ մի հզոր դաշինք։ Լինելով Հոկտեմբերյան հեղափոխության անմիջական զարգացման ու սոցիալիստական դեմոկրատիայի առաջընթացի մի նոր աստիճան, ՍՍՀ Միությունը մեծապես նպաստեց իր կազմի մեջ մտնող ազգերի բուռն բարգավաճմանը։

Մեծ Հոկտեմբերը մեր ժողովրդին տվեց ոչ միայն պետականություն, այլև խաղաղ ու ստեղծարար կյանքով ապրելու և զարգանալու հնարավորություններ և կյանքի կոչեց դրանց պահպանման հուսալի երաշխիքը՝ ազատագրված ժողովուրդների լենինյան բարեկամությունը։ Մեր ժողովուրդն իր դառը փորձով գիտե, որ այնտեղ, ուր չկա ժողովուրդների անխախտելի բարեկամություն, ուր չկա նրանց սերտ համագործակցություն, այնտեղ կա ռասիզմ ու թշնամություն, պատերազմ ու կոտորած։ Ահա թե ինչու հայ ժողովուրդն այնքան բարձր է գնահատում և աչքի լույսի պես պահում Հոկտեմբերի այդ մեծագույն նվաճումը։

Այսօր, երբ հայ աշխատավորը մայր Արաքսի կամ հինավուրց Ախուրյանի ափերից ոչ հեռու վարդագույն տուֆից ու մարմարից գործարաններ ու բարեշեն ավաններ է կառուցում կամ արգավանդ հողի է վերածում քարքարուտները, երբ մշակույթի նոր կոթողներ են կերտում հայ գիտնականն ու արվեստագետը, նրանք վստահ են, որ դրանք անխախտ ու անվթար կմնան դարեդար, քանի որ հայ ժողովուրդն այլևս մենակ չէ, քանի որ նա այժմ եղբայրական անխորտակելի կապերով զոդված է սովետական բոլոր ժողովուրդների հետ։ Մեր մեծ հայրենիքի եղբայրական ժողովուրդների այս անխախտելի միասնության մեջ է մեր ժողովրդի հարատևման ու արագ բարգավաճման հաստատուն երաշխիքը։

Սովետական հասարակարգի վեհ գաղափարները մարմնավորվեցին ՀՍԽՀ առաջին սահմանադրության մեջ, որն ընդունվեց բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների պատգամավորների խորհուրդների I համագումարում (1922 թվականի հունվարի 22-ին)։ Այնուհետև, Սովետական Հայաստանը եղբայրական հանրապետությունների հետ ուս-ուսի թևակոխեց սո-

ցիալիզմի կառուցման նոր փուլը, հասնելով զարգացման ավելի բարձր աստիճանի, որն արտացոլվեց 1937 թվականի նոր սահմանադրության մեջ, որով նշանավորվեց մեր պետականության ծաղկման նոր ժամանակաշրջանը և օրինականացվեց կյանքում արդեն հասունացած սոցիալական մեծ առաջընթացը:

Այդ հիման վրա սովետների ընտրության ոլորտից վերացան դասակարգային իրավա-քաղաքական սահմանափակումները, բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների պատգամավորներին փոխարինեցին աշխատավորների դեպուտատները, որոնք սովետներում ընտրվում են անմիջականորեն՝ ուղղակի, հավասար և ընդհանուր գաղտնի քվեարկությամբ: Սա սովետական դեմոկրատիայի այն նոր աստիճանի արտահայտությունն էր, որին հասավ մեր երկիրը սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ:

ՀՍՍՀ նոր սահմանադրության հիմնական և բնորոշ կողմն այն է, որ տնտեսական բազիսը և հասարակական վերնաշենքը ներդաշնակվեցին, դրանով իսկ սովետները դարձան իրոք համաժողովրդական պետություն, որն այսօր ևս շարունակում է կատարելագործվել կոմունիզմի կառուցման իր պատմական դերի իրագործման զուգընթաց: Այս ամենի շնորհիվ ավելի ու ավելի է մեծանում սովետների դերն ու նշանակությունը նոր հասարակարգի կառուցման բոլոր բնագավառներում:

Դեմոկրատիայի էությունն ամենից առաջ հանգում է նրան, թե տվյալ հասարակարգում ո՛վ է տնօրինում երկրի ամբողջ նյութական ու հոգևոր հարստությունը՝ մի բուռ կապիտալիստնե՞ր, թե՞ ամբողջ աշխատավոր ժողովուրդը և, հետևաբար, իսկական դեմոկրատիան դրսևորվում է հասարակական կառավարման գործում ժողովրդական զանգվածների ամենալայն մասնակցության մեջ, որը զուգակցվում է անձի ազատության հետ: Իսկ այդպիսի դեմոկրատիայի ծավալման համար անհրաժեշտ պայմաններ կան միայն սոցիալիստական կարգերում, ուր ընտրությունների ժամանակ ամենալայն հնարավորություններ են ստեղծվում մեր ժողովրդի քաղաքական ակտիվության և նրա ստեղծագործական նախաձեռնության լիակատար զարգացման համար:

Լինելով ժողովրդի համապարփակ կազմակերպությունն ու նրա միասնության մարմնավորումը, սովետներն այժմ ընդգրկում են հանրապետության արդյունաբերության ու գյուղատնտեսության, գիտության ու մշակույթի ավելի քան 25 հազար առաջավոր մարդկանց: Հանդիսանալով պետական կազմակերպության բարձրագույն ձևը, սովետները հսկայական դեր խաղացին Հայաստանում սոցիալիստական կարգերի ամրապնդման, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառների համակողմանի զարգացման գործում: Երբեմնի քայքայված ագրարային Հայաստանը սովետական կարգերի շնորհիվ դարձել է զարգացած ժամանակակից արդյունաբերության մի երկիր, աշխարհահռչակ մշակույթի ու գիտության բազմահարուստ ու բարգավաճ երկիր: Հանրապետությունում այժմ արտադրվում է 120 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք, քան մինչև հեղափոխությունը:

Երեք օրվա ընթացքում մեր արդյունաբերությունը տալիս է այնքան արտադրանք, որքան ամբողջ 1928 թվականին: Բավական է ասել, որ Սովետական Միության մեջ արտադրվող ճշգրիտ հաստոցների մեկ երրորդը թողարկվում է մեր հանրապետությունում: Հանրապետության ճշգրիտ հաստոցները 1966 թվականին արժանացան Լայպցիգի և Պլովդիվի տոնավաճառների ոսկե մեծ մեդալների. էլ չենք ասում Հայաստանում արտադրվող ժամանակակից



տեխնիկայի այնպիսի հրաշալիքների մասին, ինչպիսիք են՝ լույսի քվանտային գեներատորները և մեծ հիշողությամբ ու ավտոմատ ծրագրումով օժտված «Նաիրի», «Հրազդան» էլեկտրոնային հաշվիչ մեքենաների համաստեղությունը:

Երբեմնի հետամնաց Հայաստանն այսօր իր մակնիշով շուրջ 150 տեսակի արտադրանք, ընդ որում ոչ միայն ավանդական կոնյակ ու պահածոներ, այլև հիմնականում ճշգրիտ հաստոցներ ու ռադիոսարքեր, զորեղ գեներատորներ ու շարժական էլեկտրակայաններ է արտահանում ավելի քան 70 երկրներ:

Վերջերս էր, որ Մոնրեալի համաշխարհային ցուցահանդես ժամանեց Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության կառավարական պատվիրակությունը՝ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Բադալ Մուրադյանի ղեկավարությամբ: Մեր հանրապետության հիմնի հնչյունների և ծածանվող դրոշի ներքո ընկեր Մուրադյանի արտասանած բովանդակալից ճառին ունկնդրեց ողջ աշխարհը:

Ինչպես չնշել, որ այդ ցուցահանդեսում աշխարհի ամենազարգացած երկրների հետ կողք-կողքի Սովետական Հայաստանի գերբը կրող տաղավարում ցուցադրվեցին մեր հանրապետությունում պատրաստված՝ ժամանակակից տեխնիկայի ամենաառաջավոր մակարդակի վրա գտնվող մեքենաներն ու սարքերը. ընդ որում, Մոնրեալում ոչ միայն մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրանքը ցուցադրվեց, այլև ի լուր աշխարհի հնչեց մեր հինավուրց, պետական դարձած հայոց լեզուն, մեր երգն ու երաժշտությունը: Սովետական Հայաստանին նվիրված հատուկ օրվա ընթացքում Մոնրեալում իրենց զեկուցումներով հանդես եկան մեր անվանի գիտնականները, ելույթ ունեցան մեր հռչակված արվեստագետներն ու գեղարվեստական խմբերը:

Այս բոլորը, անկասկած, վկայում են հայ ժողովրդի ինքնիշխան պետականության, մեր հանրապետության գիտատեխնիկական բարձր մակարդակի, տնտեսական առաջադիմության, բարձր մշակույթի և արվեստի մասին:

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման բարձր մակարդակի և Միության արդյունաբերության ընդհանուր արտադրանքի մեջ նրա տեսակարար կշռի անշեղ աճի մասին է վկայում այն, որ այսօր Հայաստանը Սովետական Միության մեջ առաջին տեղն է գրավում բարձր ճշգրտության մետաղահատ հաստոցների, երկրորդ տեղը՝ մոլիբդենի կոնցենտրատի, պղնձարջասպի, կենտրոնախույս պոմպերի, երրորդ տեղը՝ էլեկտրական մեքենաների, զտված պղնձի, սինթետիկ կաուչուկի, դարբնոցա-մամլիչ սարքավորումների արտադրությամբ:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության իրագործած միջոցառումների, խոշոր կապիտալ ներդրումների, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, ոռոգման ու ջրաշինարարական հսկայական կառուցումների շնորհիվ աննախընթաց վերելք է ապրել մեր հանրապետության սոցիալիստական գյուղատնտեսությունը. դրա արգասիքը Հայաստանի գյուղի անճանաչելի վերափոխումն է, մեր կոլտնտեսականի բարեկեցիկ ու կուլտուրական կյանքը:

Մեծ են հաջողությունները նաև մեր ժողովրդի մշակույթի ու գիտության զարգացման բնագավառում: Մեր գիտության համաշխարհային ճանաչման փայլուն վկայություններից մեկն է նաև այն, որ աշխարհահռչակ Մատենա-

դարանի և Լենինի շքանշանով պարգևատրված Բյուրականի աստղադիտարանի կողքին գործարկվեց գիտության մի այլ օջախի՝ ֆիզիկայի ինստիտուտի էլեկտրոնային արագացուցիչը, որն իր կարողությամբ խոշորագույններից մեկն է Եվրոպայում։ Էլեկտրոնային այդ արագացուցիչը ոչ միայն լայն հեռանկարներ է բացում ժամանակակից ֆիզիկայի մի շարք բարդ ու դժվարին պրոբլեմների ուսումնասիրության ասպարեզում, այլև մեծ նշանակություն ունի արդյունաբերության բազմաթիվ նոր բնագավառների հարաճուն զարգացման համար։

Անցյալում տանջված ու հալածված հայ ազգը սոցիալիզմի արևի տակ աճել է գաղափարապես, վերափոխվել ու դարձել է սոցիալիստական ազգ՝ իր առաջավոր գիտությամբ, ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական մշակույթով, հրաշալի բանվոր դասակարգով և առաջավոր կոլտնտեսային գյուղացիությամբ, մեծաթիվ մտավորականներով։ Ամենևին էլ պատահական չէ, որ Սովետական Հայաստանի առաջընթացը բուրժուական գործիչները դիտում են որպես հրաշք։ Իրոք, դեռ երկու տարի առաջ մեր հանրապետության յուրաքանչյուր հազար մարդուն ընկնում էր 246 թերթ, ԱՄՆ-ում՝ 315, Իտալիայում՝ 101, իսկ Թուրքիայում՝ 45։ 1965—1966 ուսումնական տարում յուրաքանչյուր տասը հազար մարդուց նախնական ու հանրակրթական դպրոցներում Հայաստանում սովորում էին 2270, Անգլիայում՝ 1604, Ֆրանսիայում՝ 1665, ԳՖՀ-ում՝ 1223 մարդ։ Ահա թե ինչպիսիք են մեծ Հոկտեմբերի շնորհիվ մեր ձեռք բերած նվաճումները։

Հանրապետության պետականության զարգացման գործում մեծ նշանակություն ունի Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ծավալած գործունեությունը օրենսդրության հետագա մշակման ու զարգացման բնագավառում։ Վերջին տարիներում, ՍՍՀՄ օրենսդրության հիմունքներին համապատասխան, մեր հանրապետությունում ընդունվեցին այնպիսի կարևոր օրենսդրական ակտեր, ինչպիսիք են՝ Հայկական ՍՍՀ դատարանակազմության մասին օրենքը, քրեական և քրեական դատավարության, քաղաքացիական և քաղաքացիական դատավարության օրենսգրքերը, ստեղծվեցին հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման համար կարևոր նշանակություն ունեցող մի շարք իրավական վավերագրեր, այդ թվում՝ օրենքներ բնության պահպանության, Հայկական ՍՍՀ և աշխատավորների դեպուտատների տեղական սովետների բյուջետային իրավունքների, հողի պահպանության և արդյունավետ օգտագործման, ջրօգտագործման, ճանապարհաշինության մասին։ Հաստատվեցին աշխատավորների դեպուտատների տեղական սովետների բոլոր օղակների կանոնադրությունները, մշակվեցին և Գերագույն սովետի կողմից ընդունվեցին նորմատիվ այլ կարևոր օրենքներ։

Աննախընթաց թափով զարգանալով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, մեր հայրենիքը դարձել է աշխարհով մեկ ցրված հայ ժողովրդի բաղձալի օջախը, օտար երկնքի տակ ապաստան գտած ողջ հայության միակ կռվանը, ուծացման վտանգից փրկվելու միակ հանգրվանը։ Մեր ժողովրդի պատմության մեջ առաջին անգամ արտագաղթը փոխարինվեց ներգաղթով՝ հայրենադարձությամբ։

Օտարությունից հայրենիք վերադարձած սոցիալիստական հանրապետության մեր նոր քաղաքացիները մեծ եռանդով աշխատում են Սովետական Հայաստանի տնտեսական ու հոգևոր կյանքի բոլոր մարզերում։ Ապրելով ու դաստիարակվելով մայր երկրում, նրանք դարձել են կոմունիստական հասարակություն կերտող գիտակից քաղաքացիներ և իրենց ստեղծագործական աշխատանքն ու ավյունն ի սպաս են դնում հայրենիքի հետագա բարգավաճման գործին։



Սովետական հայ պետականության նվաճումներից մեկն էլ այն է, որ մեր հանրապետությունում հաշտ ու խաղաղ ապրում ու ստեղծագործում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր և այլ ազգությունների ներկայացուցիչներ։ Բավական է ասել, որ այժմ հանրապետության սովետների կազմում ընդգրկված են 678 ռուսներ, 2574 ադրբեջանցիներ, 238 քրդեր և այլ ազգերի 164 ներկայացուցիչներ։

Այսօր հպարտությամբ կարող ենք ասել, որ սովետական, վերածնված հայ ժողովրդի առօրյա կյանքն ու արարչագործ խոյանքներն ավելի գեղեցիկ, առավել վսեմ ու հոյակապ են, քան անցյալի ազգային մեր հանճարների երազանքն էր։

Հայ ժողովուրդն իր բազմադարյան պատմության ընթացքում ունեցել է սեփական ստեղծագործ մտքի ու հոգևոր գերագույն խորհուրդը, բայց չի ունեցել իր պետական Գերագույն խորհուրդը, ինքնուրույն պետությունը, որը պաշտպաներ ժողովրդի շահերը, ի մի հավաքեր աշխարհով մեկ սփռված իր բյուրավոր զավակներին և տեր կանգներ նրանց մտքի ստեղծած հոգևոր գանձերին։ Եվ եթե այսօր հայ ժողովուրդը հնարավորություն ստացավ նոր տաղանդներ ծնելու և վաղուց, դարեր առաջ մեռած իր հանճարեղ զավակների ձայնը նոր փայլով և իմացությամբ հնչեցնելու մեր երկրի և համաշխարհային մշակույթի դահլիճներում ու լսարաններում, ապա դա առաջին հերթին շնորհիվ այն բանի, որ Սովետական Հայաստանը մեր մեծ Միության իրավազոր անդամն է։ Այդ հովանու տակ ստեղծված է ազատագրված, հարաճուն մեր սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Հայաստանը, հայ ժողովրդի հարատև գոյության ու հավերժության խորհրդանշանը՝ իր պետական գերբով, իր հիմնով, իր պետական դրոշակով։





ԱԴՈ ԱԴՈՅԱՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԼՈՒԾՈՒՄԸ

Ա՛յգ արգասավոր ելնող աշխարհի,—
Շռա՜յլ առավոտ լենինյան դարի...

Ե. ՉԱՐԵՆՑ

## ՁԱՐԹՈՆՔ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ

*Ոչ միայն կյանքի սոցիալ-տնտեսական, այլև ազգային դարավոր կեղեքման մարզերում հարուցած իր արմատական հեղաբեկմամբ, սոցիալիստական Հոկտեմբերը մեծագույնն է երբևէ տեղի ունեցած բոլոր հեղափոխություններից: Հռչակելով ազգերի իրավահավասարություն ու պետական անջատման ազատություն՝ միջազգային այդ հեղափոխությունը մեկընդմիշտ պատմության արխիվը նետեց մեր երկրի ազգային ճնշումների և գժտությունների անցյալի տխուր էջերը:*

*Օծվելով սոցիալիստական մեծ հեղափոխության սրբազան բոցերում, ռուս ազգն այլևս* դադարեց *կեղեքող և արտոնյալ լինելուց: Անշեղորեն կիրառելով կոմունիստական կուսակցության ազգային շինարարության հոյակապ ծրագիրը, Սովետական Ռուսաստանը երբեմնի հալածված և իրավազուրկ ազգերին օժտեց լիակատար սուվերենությամբ, ազգային պետականության ստեղծման և տնտեսական ու հոգևոր բարգավաճման իրական նախադրյալներով: Հոկտեմբերյան հեղափոխությամբ պատմության մեջ առաջին անգամ դրվեցին մարդու ո՛չ միայն դասակարգային, նմանապես և ազգային շահագործման ու կեղեքման խպառ վերացման հիմքերը, որոնք հազարամյակներով մնում էին որպես հասարակական բոլոր չարիքների ու անարդարությունների դրդապատճառներ:*

*Հոկտեմբերը մեծ է և նրանով, որ պատմության մեջ մտավ որպես իմպերիալիզմի գահավիժման ու աշխարհի կեղեքված ազգերի (մարդկության մեծագույն մասի)* վերջնական ազատագրման և վերածնության *զորավիգը: Հիրավի, սոցիալիստական հեղափոխության հաղթությամբ նշանավորվեց ազգային-ազատագրական փոթորկալի շարժումների այն նոր մակընթացությունը,*



*որն եկավ խարխլելու միջազգային իմպերիալիզմի գաղութային կողոպուտի ու ճնշումների վրա հանգչող համակարգը: Անցած հիսնամյակը լի է ազգերի կյանքում կատարված պատմական իրադարձություններով՝ սոցիալիստական ազգերի անսասան եղբայրության ամրապնդմամբ, նորանոր ազգերի գոյավորմամբ, սովետական ազգերի սոցիալիստական բարեշրջմամբ, յոթ տասնյակից ավելի ազգային նոր պետությունների առաջացմամբ, իմպերիալիստական խոշոր տերությունների տերիտորիալ, ռազմա-քաղաքական, գաղափարական-բարոյական ծանր պարտություններով: Իմպերիալիստական կապիտալիզմի կողմից ճնշված ժողովուրդների ազատ վերընթացը կարող էր գլուխ գալ միայն սոցիալիստական հեղափոխության անմիջական օգնությամբ: Բնորոշն այն է, որ Հոկտեմբերով նորոգ կյանքի կոչված աշխարհի տառապյալ ազգերը վաղուց ի վեր դարձել են համաշխարհային հեղափոխության հուսալի ռեզերվը:*

*Երբ Լենինն ասում էր, թե իմպերիալիզմի ու սոցիալիզմի գոյամարտում կեղեքվող ազգերի ազատագրական պայքարը* համաշխարհային *նշանակություն ունի, մեկնում էր այն իսկությունից, որ Հոկտեմբերի հաղթանակից հետո ազգային ընդվզումներն իմպերիալիզմի դեմ, պայքար են և* հօգուտ սոցիալիզմի: *Այսպիսով, պատմական օբյեկտիվ օրենքի ուժով, իմպերիալիզմի երեկվա գաղութային ստրուկների ազատության ու բարօրության հարցը սերտորեն միահյուսվեց սոցիալիստական ազգերի զարգացման ընթացքին:*

## ՄԵԿՆԱԿԵՏԸ

*Ո՞րն է ազգային հարցի վերլուծման լենինյան մեկնակետը:*

*Այս պրոբլեմին նվիրված իր մի շարք աշխատություններում և բազմաթիվ հոդվածներում, Լենինը հստակորեն շարադրել է հարցի քննարկման իր մեկնակետը, որն ամփոփ հանգում է հետևյալին: Նա ասում էր. Առհասարակ նացիոնալիզմի* վերացական հարցադրումը ոչ մի բանի պետք *չէ և չի կարելի երբևէ* ձևականորեն *վերաբերվել ազգային հարցին: Միաժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել* ճնշող *ազգի նկատմամբ* ճնշվող *ազգի պրոլետարիատի վերաբերմունքի անպայման* տարբերությունը: *Ուրեմն, կոմունիստը պարտավոր է տարբերել ճնշող և ճնշված ազգի նացիոնալիզմը (տե՛ս Երկեր, հատ. 36, էջ 702):*

*Բացի այս, Լենինը մարքսիստական չէր համարում այն տեսաբանների մոտեցումը, որոնք քամահրելով հասարակական կյանքի* փոփոխված հանգամանքները, *շարունակում էին կառչել մարքսիզմի* հին որոշումներից: *Դա նշանակում է,— ասում էր մեծ մտածողը,— հավատարիմ լինել ուսմունքի* տառին *և ոչ թե* ոգուն, *կրկնել նախկին եզրակացությունները, չկարողանալ վերլուծել փոփոխված իրավիճակը (տե՛ս հատ. 6, էջ 583):*

> Առանց լավ գիտենալու տվյալ ազգի սոցիալ-դասակարգային կառուցվածքն ու նրա ներհակությունների իրական պատկերը, առանց իմանալու ազգի դերն ու կշիռը ժամանակակից պետությունների ոլորտում, առանց կոնկրետ պատկերացնելու դրացի ազգերի հետ ունեցած նրա կապերի բնույթը, առանց հետապոտելու նրա տառապանքների, իդեալների, ավանդույթների և հոգևոր մյուս ձգտումների ակնառու նրբերանգները՝ հնարավոր չէ շատ թե քիչ ճիշտ գնահատել ազգի ազատագրական ոգորումների թափն ու թուլությունները, նրա առաջադիմական և ռեակցիոն նկրտումները:

*Ազգային հարցը քննարկելիս պետք է հանդես բերել* առավելագույն կոնկրետություն *և սահմանել հարցի* պատմական *շրջանակները: Այս ելակետից*

էր Լենինն արծարծում ազգային հարցը: Ըստ որում, նա հաճախ ընդգծում էր այն ճշմարտությունը, որ ազգային շարժումը որպես սոցիալական հակամարտությունների դրսևորման ձև, ունի զարգացման երկու փուլ. պայքար ֆեոդալիզմի ու կռիվ իմպերիալիզմի դեմ: Երկու դեպքում էլ այդ պայքարն առաջադիմական է:

Ով ծանոթ է ազգային հարցի լենինյան հարուստ ժառանգությանը, չի կարող չնկատել, որ Լենինի դեմ պայքարողները,— մի կողմից ռեակցիոն բուրժուական լիբերալները և աջ օպորտունիստները, բունդիստները, մյուս կողմից՝ ազգային նիհիլիզմի ու «ձախության» վահանակիրները (Յու. Կիևսկին—Պյատակովը, Ն. Բուխարինը և ուրիշներ), նախ և առաջ հակակայում էին ազգային հարցի լենինյան մեկնակետին: Լենինն ասում էր, որ ոչ միայն մարդկանց, այլև ազգերի նկատմամբ ունեցած կոմունիստների իդեալում բռնությունը տեղ չունի: Մենք պաշտպանում ենք ֆեոդալական և իմպերիալիստական-ավազակների դեմ բռնկվող ճնշված ժողովուրդների արդար ընդվզումները: Իսկական ինտերնացիոնալիստը պաշտպանում է ճնշված ազգերի արդար ձգտումները:

> Հար և ամենուր պաշտպան կանգնելով կեղեքված և անօգ ազգերի ազատաբաղձ ձգտումներին, Մարքսն ու Էնգելսը քանիցս մատնանշել են, որ ազգային ատելության ու թշնամանքի արմատները սնվում են կապիտալիստական արտադրահարաբերություններից: Նրանք հեղափոխական պրոլետարիատին ուսուցում էին ամեն կերպ սատար լինել կեղեքված ազգերի ազատագրական շարժումներին, որոնցում թշվառ գյուղացիության և արհեստավորների արդարացի ձգտումներն են մարմնացել: Մարքսիզմի հիմնադիրները պարզապես շեշտում էին, որ բանվորական շարժման մեջ *բուն ազգային գաղափարները* միշտ էլ իսկական *ինտերնացիոնալիստական* են:

Հակիրճ բանաձևելով մարքսիստական սույն միտքը, Լենինը գրել է, որ ինտերնացիոնալիստական կուլտուրան ապազգային չէ: Ավելին, մերկացնելով ազգային հարցի նիհիլիստ ու ձախ մեկնաբաններին, նա պարզորոշ ասել է. Ճնշված ազգի յուրաքանչյուր բուրժուական նացիոնալիզմի մեջ կա համադեմոկրատական բովանդակություն ընդդեմ ճնշման, և մենք անպայման պաշտպանում ենք հենց այդ բովանդակությունը:

## ՄԱՐՏԵՐՈՒՄ ՍՏՈՒԳՎԱԾ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Ազգային հարցի մարքսիստական ուսմունքի լենինյան մշակումն ու զարգացումը կատարվել է բուրժուական և մանրբուրժուական հոսանքների դեմ մղված անհաշտ պայքարի ընթացքում, նախորդ և իմպերիալիզմի դարաշրջանի ազգային-ազատագրական շարժումների հանգամանալի հետազոտությունների հիման վրա:

Տակավին 1903 թվականին Լենինը գրում էր, որ ՌՍԴԲԿ ծրագիրը ճանաչում է պետության կազմում գտնվող բոլոր ազգերի ինքնորոշման իրավունքը և սոցիալ-դեմոկրատիան կպայքարի այդ իրավունքի որևէ անարդար և արտաքին ազդեցության դեմ: Իհարկե, պատմական որևէ ժամանակաշրջանում և որևէ երկրում կարող է այնպես պատահել, որ տվյալ ազգի անջատման պահանջը հակասի պրոլետարիատի դասակարգային շահերին: Այս դեպքում,— ասում է Լենինը,— մենք դեմ ենք ազգի անջատման իրավունքին: Սա է ազգային հարցի բուրժուա-դեմոկրատական ու լենինյան ըմբռնումների ջրբաժան կետը:



> Լենինը գտնում էր, որ Ռուսաստանի բոլոր ազգերը (բացի վելիկոռուսականից), ցարական միապետության կողմից սաստիկ կեղեքված են և այդ պատճառով այլազգի աշխատավորներն իրոք «խորթացած» են ռուսներին, որը խոշորագույն չարիք է: Մինչդեռ ցարիզմը (որի քաղաքականությունն ամբողջապես տոգորված է սևհարյուրյակային նացիոնալիզմով և ուղղված է Ռուսաստանի ժողովուրդների մեծ մասի դեմ), հնարավոր է տապալել միայն *բոլոր ազգերի համատեղ պայքարով:* Այստեղից հրամայական խնդիր է ծագում՝ հեղափոխական պրոլետարիատը պետք է միապետության դեմ կռվի հանի բոլոր ճնշված ազգերին, որոնց ազատագրական շարժումը խոշոր դեր է խաղում պատմության պրոգրեսիվ երթում:

Ազգային հարցի լենինյան լուծման հիմնական սկզբունքները ձևակերպված են այսպես.

1) Մարքսիստները դեմ լինելով սեպարատիզմին, կողմնակից են յուրաքանչյուր ազգի ինքնորոշմանը, ընդհուպ մինչև անջատ ազգային պետության ստեղծումը. 2) Բոլոր ազգերն իրավահավասար են. 3) Ազգային մարզերին պետք է լայն ինքնավարություն տրվի. 4) Մարքսիստները թշնամի են ազգային ամեն ճնշման և որևէ ազգի կամ նրա լեզվի արտոնյալության. 5) Ջատելով բոլոր ազգերի բանվորների լիակատար համերաշխության, մարքսիստները հետևողականորեն պայքարում են մեծապետական և բուրժուական ռեակցիոն նացիոնալիզմի դեմ. 6) Յուրաքանչյուր ազգի կուլտուրայից մարքսիստները վերցնում են միայն նրա հետևողական-դեմոկրատական ու սոցիալիստական տարրերը. 7) Համաշխարհային բուրժուազիայի քաղաքականությունն ազգային հարցում տոգորված է բուրժուական նացիոնալիզմով, իսկ միջազգային բանվոր դասակարգի քաղաքականությունը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմով: Այս երկու քաղաքականությունները (աշխարհզգացումները),—ընդգծում էր Լենինը,—անհաշտ թշնամական են:

> Իր այս հետևությունը Լենինը փաստարկում էր այն իրողությամբ, որ ազգային հարցում պատմության մեջ նկատվում է երկու նկրտում. առաջին, պայքար ազգային յուրաքանչյուր ճնշման դեմ, ազգային պետությունների ստեղծում, նրանց ինքնուրույն կյանքի կարթոնք: Երկրորդ, ազգային միջնորմների խորտակում, ազգերի մերձեցման զարգացում և, առհասարակ, ողջ հասարակական կյանքի ինտերնացիոնալ միասնության գոյավորում: Կապիտալիզմի համաշխարհային *օրենք* հանդիսացող այս երկու նկրտումների ստույգ հաշվառումը,— ասում էր Լենինը,— մարքսիստներին պարտադիր է:

Այդ ըմբռնումից ելնելով՝ նա բազմիցս ասել է. ով չի՛ պայքարում ազգերի կեղեքման դեմ և չի՛ ընդունում նրանց իրավահավասարությունը՝ մարքսիստ չէ, նույնիսկ դեմոկրատ չէ:

Ջափազանցություն չի լինի, եթե ասենք, որ մինչև օրս քաղաքական և ոչ մի կուսակցություն լենինյանների պես պարզ ու շիտակ պատասխան չի տվել այնքան խճճված ազգային հարցին: Սակայն այդ պարզությունը ձեռք է բերված համառ ու երկարատև պայքարով: Այսպես, օրինակ, սոցիալիզմի գործին նվիրված ականավոր հեղափոխական և խոշոր տեսաբան Ռոզա Լյուքսեմբուրգը ժամանակին հանդես եկավ Ռուսաստանի մարքսիստների հռչակած ազգերի ինքնորոշման իրավունքի դեմ, այն որակելով անկիրառելի և մետաֆիզիկական: Նա ասում էր, որ ռուս սոցիալ-դեմոկրատը ճնշված ազգերի անջատման իրավունքը պաշտպանելով, իրականում աջակցում է նրանց բուրժուական նացիոնալիզմին: Հատուկ հոդվածով Լենինը բացահայտեց այդ հայացքի ակներև սխալականությունը: Ո՛չ,— առարկում էր Լենինը,—բանվոր դասակարգի գաղափարախոսը պարտավոր է ազգային հարցում զանազանել երկու ներհակ սկզբունքներ. պաշտպանել ճնշվող ազգի բուրժուազիային, երբ նա պայքարում է ճնշող ազգի բռնությունների դեմ: Իսկ երբ վերջինս

իր ազգային նացիոնալիզմն է լոկ պաշտպանում, պայքարել և սրա դեմ:

Այսպես և միայն այսպես էր լուծում հարցը հեղափոխության անմահ առաջնորդը:

Լինելով հետևողական ինտերնացիոնալիստներ, լենինյաններն այն համոզմանն էին (և շարունակում են մնալ այսօր ևս), որ այլ ազգին ճնշող ազգը՝ բնավ ազատ չէ: Օրինակ, այլազգիներին դարերով ճնշելու վելիկոռուսական պրակտիկան մեծապես խանգարել է վելիկոռուս ժողովրդի ազատագրմանը, ամրապնդելով նրա ազգայնական նախապաշարումները: Այսպես մոտենալով հարցին, Լենինը հեղափոխականների սրբազան պարտքն էր համարում՝ անդուլ պայքար մղել սեփական ազգի ռեակցիոն նացիոնալիզմի դեմ, մանավանդ որ «նացիոնալիզմի վելիկոռուսական թույնը վարակում է ողջ համառուսական քաղաքական մթնոլորտը»: Ուստի, չի կարելի կենսագործել պրոլետարիատի սոցիալիստական նպատակը, առանց անհաշտ պայքարելու մեծապետական և իր ազգի ռեակցիոն նացիոնալիզմի դեմ, առանց ճնշված ազգերի ազատագրական ճիգերը միացնելու սոցիալիստական հեղափոխության գնդերի գրոհին:

Լենինը պատմական հարուստ փաստարկներով գիտականորեն հիմնավորեց ազգային-ազատագրական շարժման հետևյալ սկզբունքները.

1) Կեղեքող և կեղեքվող ազգեր. ահա թե որն է իմպերիալիզմի էությունը, որը կեղծորեն շրջանցում են սոցիալ-շովինիստները: Այժմ իմպերիալիստական մեծ տերությունների կողմից ազգերի ճնշումը ընդհանուր երևույթ է. 2) Ազգերի անջատման ազատությունը դեմոկրատիզմի բարձրագույն արտահայտությունն է, և առանց իրագործելու անջատման իրավունքը, տարբեր ազգերի բանվորների համերաշխությունն անհնարին է. 3) Իմպերիալիզմը նշանավորում է ազգերի կեղեքման դարաշրջանը պատմական նոր հիմքի վրա: Ուստի, լենինյանները չեն հրաժարվում բուրժուա-դեմոկրատական լոզունգներից, նրանք են լիովին կիրառում այդ լոզունգների դեմոկրատական էությունը. 4) Քանի դեռ մնում է կապիտալիզմը, կմնա և ազգային թշնամանքը: Հետևաբար, ով ձգտում է ազգերի ազատության, նա պետք է պայքարի իմպերիալիզմի պաշտպան սոցիալ-շովինիզմի դեմ. 5) Խաղաղություն ժողովուրդների միջև, սոցիալական և ազգային ամեն կարգի շահագործման, բռնությունների և ավարառումների ոչնչացում—սա է կոմունիստների իդեալը, գրում է Լենինը. 6) Ազգային պատերազմներն իմպերիալիստական տերությունների դեմ անխուսափելի են, պրոգրեսիվ ու հեղափոխական, որոնք հնարավոր են նույնիսկ Եվրոպայում: 7) Պատմությունը չի ընթանում հարթ ու կանոնավոր, այլ երբեմն հսկայական հետընթաց թռիչք է կատարում: Փոքր ազգերն իմպերիալիզմի օրոք դարձել են մեծ տերությունների սնման աղբյուրը, իսկ միջազգային պրոլետարիատի մի մասը փշրանքներ է հավաքում իմպերիալիստական բուրժուազիայի՝ փոքր ազգերի եռակի շահագործմամբ ձեռք բերած բարիքներից. 8) Երբ պատերազմն ազգային չէ,— կարդում ենք Լենինի մոտ,— այլ իմպերիալիստական, ապա հայրենիքի պաշտպանությունն ակներև խաբեություն է: Մինչդեռ, իրական ազգային պատերազմում հայրենիքի պաշտպանությունն արդարացի է ու պրոգրեսիվ:

Ռուս—մարքսիզմի դիրքերից Լենինին քննադատող Պ. Կիևսկին ազգի ինքնորոշումը որակելով «հայրենիքի պաշտպանության դավաճանական տակտիկա», հրաժարվում էր հասկանալ, «թե ինչպե՞ս կարելի է միաժամանակ հայրենիքի պաշտպանության դեմ և ինքնորոշման կողմ լինել»: Իմպերիալիզմն ինքնորոշման ժխտում է, պնդում էր նա: Դրան հակառակ Լենինը բազմիցս նշել է, որ ապստամբող յուրաքանչյուր ազգ կեղեքող ազգից իր երկիրը, լեզուն և հայրենիքն է պաշտպանում: Եվ այդ կռիվը միանգամայն արդարացի է ու առաջադիմական: Մերկացնելով Կիևսկու հակազգայնության սնամեջությունը, Լենինն ապացուցում էր, որ նրա ֆրազները «ազգային բլոկի», «ազգային պատրանքների», «նացիոնալիզմի թույնի», «ազգային ատելության բորբոքման» դեմ, ըստ էության նպաստում են բանվորների ու բուրժուազիայի բլոկին: Նա, ով կարծում է, թե ազգերի ինքնորոշումն անհնարին է կապիտալիզմի օրոք և ավելորդ սոցիալիզմի ժամանակ (ինչպես պնդում է Պ. Կիևսկին), փաստորեն, շովինիստական հայացք է քարոզում:



Անդուլ մաքառելով իմպերիալիստական բուրժուազիայի գաղափարախոսության՝ կոսմոպոլիտիզմի և կեղծ հայրենասիրության դեմ, Լենինը պայքարում էր և նրանց դեմ, ովքեր պնդում էին և այսօր էլ ձգնում են ապացուցել, թե իբր ազգերի սուվերենության սկզբունքը վաղուց հնացել է, որպես թե ազգերն արգելակում են մարդկության զարգացումը: Ու երբ այժմ կոմունիստներն ազդարարում են, որ իրենց նպատակները համապատասխանում են ազգի բարձրագույն շահերին, դա իրոք նրանց անկեղծ համոզումն է և պրակտիկ գործունեության հարուստ փորձի ընդհանրացումը: Ճնշված ազգերի կոմունիստների նշանաբանն է՝ «Պրոլետարներ բոլոր երկրների և ճնշված ժողովուրդներ, միացե՛ք»: Նրանք պաշտպանում են իմպերիալիզմի դեմ մաքառող ճնշված ազգերի բուրժուական նացիոնալիզմը, որը ներկայացնում է աշխատավորների առողջ դեմոկրատիզմը, նրանց անկախության ձգտումներն ու ցասումը: Կատարելով այդ քայլը, կոմունիստները երբեք չեն հրաժարվում պրոլետարական ինտերնացիոնալիզմից:

Խորացնելով մարքսիստական հայացքը սոցիալիստական հայրենասիրության վերաբերյալ, Լենինը «ապազգային» կոմունիստներին (Յու. Պյատակով, Ն. Բուխարին և ուրիշներ) կտրականապես ասում էր, որ հայրենիքն իրոք ամենահզոր գործոնն է պրոլետարիատի դասակարգային կռվում, որի նկատմամբ պրոլետարիատը չի կարող անտարբեր լինել:

Բոլոր ազգերի կոմունիստներն այսօր հաստատուն կանգնած են ազգային գիտակցության այն գետնի վրա, որ իրենց հայրենասիրությունն ամենից առաջ բխում է այն հպարտության զգացումից, ինչ տվյալ ազգը ներդրել է շահագործման ու կեղեքման դեմ մղված աշխատավոր զանգվածների դարավոր պայքարում: Ժողովուրդների ջանքերով ստեղծված ինտերնացիոնալիստական կուլտուրան ոչ այլ ինչ է, քան տարբեր ազգերի մշակույթի լավագույն, դեմոկրատական կուլտուրաների ներդաշնակ սինթեզը: Եվ այդ կուլտուրայի պաշտպանները կոմունիստներն են:

Կյանքը քանիցս հերքել է ստրկամիտ այն տեսաբանների ապազգային կառանցանքը, ովքեր Կոմունիստական մանիֆեստի «Բանվորները հայրենիք չունեն» լոզունգը հասկացել են տառացիորեն, չըմբռնելով, որ պրոլետարիատի հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը ներդաշնակ են: Ֆաշիզմի վայրագ ռեժիմի դեմ մարտնչող ֆրանսիական, անգլիական, իտալական և շատ ուրիշ երկրների միլիոնավոր բանվորներ կյանքի գնով ապացուցեցին, որ հայրենիքի ազատությունն ու անկախությունն իրենց պատվի գործն է: Պատահական չէ, որ հիտլերիզմի դեմ մղված կռիվներում Ֆրանսիական կոմկուսը 75 հազար զոհ տվեց: Մի անգամ ևս հերքվեց բուրժուական նիհիլիզմի այն արտառոց և հակաբնական թեզը, ըստ որի, լինելով ինտերնացիոնալիստ, հեղափոխականը դադարում է ռուս, ֆրանսիացի, անգլիացի կամ հայ լինելուց:

Իմպերիալիզմի դեմ մղվող մարդկության արդարացի պայքարում կոմունիստներն են ազգային վեհության և անաղարտ հայրենասիրության ավանգարդը: Ատոմային դարի ռազմա-քաղաքական փոթորիկներում նրանք են ամենից շատ մտահոգված իրենց ազգերի բարգավաճմամբ և ազատությամբ: Եվրոպայի ու ճնշված բոլոր ազգերի կոմունիստներն անվախ մաքառում են հանուն հարազատ հայրենիքի անկախության: Կանադայի կոմկուսակցությունը կոչ է արել. «ԱՄՆ-ից նվաճենք մեր ազգային անկախությունը»:

Նորվեգիայի կոմկուսակցությունն առաջադրել է համազգային լոզունգ. «Նորվեգիան պետք է դառնա ազատ և ինքնուրույն պետություն»:

Թե որն է կոմունիստների ազգային հպարտության էությունը, դա սպառիչ կերպով ասված է Վելիկոռուսների ազգային հպարտության մասին Լենինի հանրահայտ հոդվածում:

Այս առնչությամբ խիստ ուշագրավ է և բնորոշ է. Թելմանի բանտից գրած նամակը, որում ասված է.

> «Ես հայրենազուրկ չեմ: Ես գերմանացի եմ, ազգային և դրա հետ մեկտեղ ինտերնացիոնալ մեծ փորձով: Իմ ժողովուրդը, որին պատկանում եմ, որին սիրում եմ՝ գերմանական ժողովուրդն է և իմ ազգը, որով հպարտանում եմ, գերմանական ազգն է. համարձակ, հպարտ և աննկուն գերմանական ազգը: Ես միս ու արյունով, իմ ամբողջ էությամբ գերմանական բանվոր դասակարգից եմ: Ահա թե ինչու, որպես հեղափոխական դասակարգի որդի, ես հետագայում դարձա նրա հեղափոխական առաջնորդը: Իմ կյանքն ու աշխատանքը նվիրաբերվել են միայն գերմանական ժողովրդի աշխատավորների բարօրությանը. իմ գիտելիքները, ուժն ու փորձը, իմ գործունեությունը՝ իմ ողջ էությունը նվիրված է եղել Գերմանիայի ապագային, սոցիալիզմին, ազատությանը, գերմանական ազգի նոր բարգավաճմանը» (տե՛ս «Большевик», 1950, № 21) :

Այս խոսքերն այրող խարան են հայրենազուրկ դոգմատիկների ճակատին, որոնք «ամաչում» են հիշատակել իրենց ազգային պատկանելությունը:

Լենինիզմի երեկվա և այսօրվա հակառակորդները բուրժուազիայի շահերն են պաշտպանում, երբ ազգերի գոյությանը հապշտապ ու անդադին հոգոց հանգուցելոց են կարդում, ասելով, թե կեղեքվածների նացիոնալիզմը մարդկության գերծշնամին է, ինչպես ատոմային զենքը: Առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին Լենինի վրա հարձակվողները նմանապես պահանջում էին «պայթեցնել ազգերը», ինչպես այսօրվա բուրժուական շովինիստներն են պնդում, թե ազգային ազատությունը խոչընդոտում է անհատի ազատությանը:

> Սակայն Լենինի հակառակորդների մոլորությունն այն է, որ նրանք գաղափար չունեն ազգային հարցի էության վերաբերյալ, նրանք չգիտեն, որ դասակարգային շահերով պայմանավորված ազգային հարաբերություններն իրականում *հարաբերական ինքնուրույնություն* ունեն: Նրանք չեն ըմբռնում, որ ազգային-ազատագրական շարժումների գլխավոր նկրտումը՝ ազգի *ինքնահաստատումը*, սեփական *պետականության* և *կուլտուրայի* ստեղծումն է: Ցավոք, այսօր էլ կան մարդիկ, ովքեր ձգտում են ցատկել ազգերի վրայից, միայն թե նրանց ձուլեն բռնությամբ: Բայց այդպես մտածողները հակալենինյան են, ինչպես հեղափոխությունից առաջ ազգերը պայթեցնողները: Լենինի «ձախից» քննադատողները տեսնում են միայն դասակարգային հակամարտությունը, կարծելով, թե այն կարող է վերացնել ազգային հանրությունը: Մինչդեռ նա նշում էր, որ դասակարգերը չեն վերացնում ազգը, ոչ էլ սա կարող է բացառել դասակարգային կռիվը: Ազգային կգացմունքները, հոգեբանությունը, սովորույթներն, ավանդույթներն ու ծեսերը խոր արմատներ ունեն հանրության կյանքում և դեռ երկար կմնան:

Պրոլետարական հայրենասիրության լենինյան հասկացողությունը ելնում է նրանից, որ այդ զգացմունքը գալիս է դարերի խորքից, որը տարբեր չափերով հատուկ է հասարակական պրոգրեսն արտահայտող բոլոր դասակարգերին: Բայց շահագործվողների հայրենասիրությունն ավելի խոր է, առավել անկեղծ ու երկարակյաց, որը միտում է սոցիալական արդարության հաստատմանը: Լենինն ուսուցում էր, որ ո՛չ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զգացմունքն ու դրա ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը: Եվ պատմության մեջ հաճախ է պատահել, որ հայրենիքի օրհասական պահին համընկել են տարբեր դասակարգերի հայրենասիրական ձգտումները, օտար զավթիչների դեմ



մղվող ազգային կռվում: Մարքսիստը չպետք է մոռանա, որ ճնշված երկրներում, չնայած դասակարգային շահերի հակամարտությանը, կան և համազգային շահեր:

## ՆՈ՛Ր ԱՇԽԱՐՀ, ՆՈ՛Ր ԱԶԳԵՐ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, ցարական կայսրության անծայրածիր տարածության վրա սոցիալիստական հանրակարգ հաստատվեց: Միաժամանակ լուծվեց մի դժվարին հարց՝ հաստատվեցին ազգային ազատություն ու արդարություն: Սկսվեց ազգային հարցի լենինյան տեսության բազմակողմանի ու գործնական ստուգումը: Պրոլետարիատի դասակարգային դիկտատուրան այն հուսալի նախապայմանն ու միջոցը հանդիսացավ, որի շնորհիվ ծայր առավ կեղեքված ազգերի կատարյալ վերածնունդը:

Ազգային հարցի լենինյան լուծումը ՍՍՀՄ-ում վաղուց դարձել է ուղենիշ՝ աշխարհի ճնշված բոլոր ազգերի համար, որոնք թևակոխելով սոցիալիզմի շեմը, օգտագործում են սովետական ժողովուրդների եղբայրական դաշնադրության վերին աստիճանի հարուստ փորձը:

Ազգային քաղաքականության կոմունիստական սկզբունքների պետական ազդարարումով Հոկտեմբերը նոր դարագլուխ նշանավորեց մարդկության մեծ մասի՝ ճնշված ու շահագործող ազգերի ազատագրման պատմության մեջ: Սովետական Ռուսաստանի ժողովուրդների իրավահավասարություն ու սուվերենություն, նրանց ինքնորոշման և անջատ պետականության ստեղծման ազատություն, ազգային և ազգային-կրոնական ամեն կարգի արտոնությունների ու սահմանափակումների վերացում, ազգային փոքրամասնությունների ու էթնիկական հանրությունների անարգել զարգացում— ահա այն հաստատուն սկզբունքները, որոնց հաջող իրագործմամբ սովետական երկրում լուծվեց ազգային հարցը:

Անհաշտ պայքարելով նացիոնալ ուկլոնիզմի և մեծապետական ու տեղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, կոմունիստական կուսակցությունն ապահովեց ազգային շինարարության լենինյան հոյակապ պլանի կենսագործումը. այդ իսկ հիման վրա ստեղծվեցին բարեհաջող նախադրյալներ ազգերի սոցիալիստական վերափոխման ու զարգացման համար:

Տեղերում սովետական իշխանության օրգանների ու կուսակցական կազմակերպությունների հիմնավորումը մեծագույն երաշխիք հանդիսացավ ազգերի տնտեսական, քաղաքական և կուլտուրական համերաշխ գործակցության, նրանց ստեղծագործական ներթաքուն կարողությունների կատարյալ զարգացման համար:

Ամեն ինչ պետք էր սկսել հիմքից, ազգերի իրական վերածնության ու բարօրության կուլտուր-նյութական բազայի կառուցումից: Նոր կյանքի կերտման շեմին սովետական ազգերը դեմ հանդիման կանգնեցին իրենց ժառանգած տնտեսական, քաղաքական և մշակութային տարբեր մակարդակներով: Բավական է նշել, որ 1921 թվականին սովետական մոտ 150 ժողովուրդներ ու ցեղեր թևակոխեցին Հոկտեմբերը զարգացման կապիտալիստական փուլին չհասած: Քաղաքացիական պատերազմի ավարտից հետո նույնական շահեր ունեցող սովետական հանրապետություններն ազատակամ միավորվեցին հեղափոխության մեծ առաջնորդի մտահղացած ՍՍՀ Միության մեջ:

Տակավին 1919 թվականին ՌԿԲԿ Կենտկոմի բանաձևի նախագծում Լենինը նշել է. Ուկրաինայի տերիտորիայի վրա ապրող աշխատավորներն իրավունք ունեն սովորելու և սովետական բոլոր հիմնարկներում բացատրվելու մայրենի լեզվով, ամեն կերպ խափանելու ռուսիֆիկացման այն փորձերը, որոնք նպատակ ունեն ուկրաինական լեզուն երկրորդ պլանի վրա մղելու: Ուկրաինայի բանվորներին ու գյուղացիներին գրած իր նամակում նա ընդգծել է. Մենք ուզում ենք ազգերի կամավոր միություն, որում ո՛չ մի ազգ չբռնանա մյուսի վրա: Անշեղորեն ձգտելով ազգերի միասնությանը, անխնա հետապնդելով այն ամենը, ինչ նրանց անջատում է արհեստականորեն, մենք պետք է շատ զգույշ, համբերատար և զիջող լինենք ազգային անվստահության մնացուկների հանդեպ, որոնք շատ ուշ կվերանան:

ՍՍՀՄ ստեղծմամբ սովետական ազգերը թևակոխեցին իրենց ծաղկման երկրորդ փուլը. հավասարների այդ միությամբ ավելի քան հզորացավ սովետական ազգերի դաշնադրությունը: Արդարև, ազգային միանգամայն նոր պետությունների սոցիալիստական սկզբունքներով զոդված այդ ֆեդերացիան անցած հիսնամյակում սոցիալական համերաշխության ու եղբայրության անհամար օրինակներ է տվել: Երկրի ողջ տնտեսության սոցիալիստական վերակառուցմամբ սկսեցին վերանալ ազգերի միջև եղած անհավասար զարգացման իրական տարբերությունները: Սա մեծագույն, պատմական խոշոր նվաճում էր անցյալում հալածված ազգերի համար: Արտադրաուժերի ու սոցիալիստական արտադրահարաբերությունների բուռն զարգացման համընթաց, գնալով խորացավ կուլտուրական հեղափոխությունը, որի շնորհիվ ազգային բոլոր հանրապետություններում գոյավորվեց ազգային նոր ինտելիգենցիա:

Ընդամենը երկու տասնամյակում վիթխարի քայլերով առաջ ընթացավ սովետական բոլոր ազգերի կուլտուր-տնտեսական կյանքը: Եթե 1956 թվականին ՍՍՀՄ խոշոր արդյունաբերության արտադրանքը (1913 թ. համեմատությամբ) աճեց 43 անգամ, ապա Ղազախստանում՝ 97, Վրաստանում՝ 80, Հայաստանում՝ 135, Կիրգիզիայում՝ 717 և Տաջիկստանում՝ 1049 անգամ:

Այսպիսով, մեծ Հոկտեմբերի հողմերում ծնված Սովետակարգը կես դարի ընթացքում մեր բոլոր ժողովուրդներին կանգնեցրեց բարգավաճման բարձր պատվանդանի վրա: Շահագործողական դասակարգերի վերացմամբ վերացան և ազգամիջյան թշնամանքն ու անվստահությունը: Սոցիալիստական հասարակության կառուցման բովում արմատապես վերափոխվեց ազգերի հոգևոր կերպարը, որը բնորոշվում է ընդհանուր աշխարհայացքով, եղբայրական անքակտելի կապերով, փոխադարձ օգնության և միմյանց ազգային ավանդույթների նկատմամբ գիտակցված հարգանքով:

Որքան բնորոշ, նույնքան և ոգևորիչ է այն բուռն ծաղկումը, որն ապրում են ՍՍՀՄ անցյալի հետամնաց ազգերը տնտեսության, կուլտուրայի բոլոր ճյուղերում: Արդյունաբերության և գյուղատնտեսության աննախընթաց զարգացման շնորհիվ, Միջին Ասիայի հանրապետություններն այժմ տալիս են ողջ երկրի բամբակի 80 տոկոսը: Ուզբեկստանն այսօր հզոր ինդուստրիալ երկիր է՝ հազարից ավելի ժամանակակից խոշոր ձեռնարկություններով, որոնց արտադրանքը 90-ից ավելի երկրներ է արտահանվում: Սրևառատ այդ երկրի արտերում այժմ գործում են 120 հազար տրակտոր: Նման թափով չի զարգացել կապիտալիստական և ոչ մի երկիր:



Սովետական Միության բոլոր հանրապետությունների վիթխարի նվաճումները հարկադրված խոստովանում են բուրժուական շատ ականավոր գիտնականներ ու հասարակական գործիչներ: Վերցնենք լոկ մի փաստ. Սովետական Բելոռուսիան, Ղազախստանը, Թուրքմենիան, Հայաստանը, Ադրբեջանը, Կիրգիզիան և Ուզբեկստանը, որ մինչև սովետական կարգերը չունեին որևէ բուհ, այսօր իրենց կրթական գործի վիճակով ու ծավալով անհամեմատ առաջ են անցել մի շարք կապիտալիստական զարգացած երկրներից: Միայն Հայաստանի 12 բուհերում այս ուսումնական տարում սովորում են 48000 և 45 տեխնիկումներում ու հատուկ մասնագիտական միջնակարգ դպրոցներում՝ 43000 ուսանող: Նշենք, որ 1914—1915 թթ. Հայաստանի բոլոր դպրոցներում սովորել են 35 հազար պատանիներ, իսկ այս տարի՝ 550000...

Մի այլ հույժ բնորոշ իրողություն ևս: Սրանից 85 տարի առաջ ամբողջ աշխարհում հայոց լեզվով տպագրվում էին 20 պարբերական՝ 12 հազար բաժանորդով: Այժմ Սովետական Հայաստանում տպագրվում են 90-ից ավելի պարբերականներ՝ տարեկան 3 միլիոն և 62 թերթ՝ 108 միլիոն տիրաժով: Ահա կարգացո՛ւմ, ահա մեծ թռի՛չք:

Սովետական Միության յուրաքանչյուր հանրապետություն հանդիսանում է արդի տնտեսության, տեխնիկայի, գիտության ու կուլտուրայի ծաղկուն երկիր, որը քայլում է եղբայրական ռուս ժողովրդի հետ համընթաց:

Ազատարար Հոկտեմբերը մեզ ականատես դարձրեց այն պատմական իրողությանը, երբ այսօր սոցիալիստական ազգերի զարգացումը ՍՍՀՄ-ում նշանավորվում է, մի կողմից՝ նրանց համակողմանի ծաղկմամբ, մյուս կողմից՝ առավել մերձեցմամբ, կուլտուր-մտավոր փոխազդեցությամբ և փոխհարստացմամբ: Բուրժուական ազգային էգոիզմին ընդմիշտ փոխարինեց սոցիալապես համասեռ ազգերի եղբայրությունը, որը տոգորված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության վեհ գաղափարներով: Զարգացնելով ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, սովետական միաբան ազգերն այսուհանդերձ չեն գերագնահատում ազգային յուրահատկությունների դերը մեր կյանքում և մերժում են ազգային սահմանափակության ու պարծենկոտության հիվանդագին միտումները:

Ի դեպ, անհրաժեշտ է հիշատակել, որ այժմ սոցիալիստական համաշխարհային սիստեմի ներգործությամբ աշխարհում շատ բան է փոխվել: Ուստի, իրավացի են այն մարքսիստները, ովքեր նշում են, թե ազգային կուլտուրայի լոզունգն այժմ արդեն դադարում է բուրժուական լինելուց, ավելի շատ դառնալով դեմոկրատական, հայրենասիրական և հեղափոխական ուժերի լոզունգ: Այդպիսով, այն դառնում է ազգի մեծ մասի առաջավոր տրադիցիաներին հավատարիմ լինելու սիմվոլը:

Ահա թե ինչու մեր օրերում ինտերնացիոնալիստ լինել, բնավ չի նշանակում զոհել սեփական հայրենասիրությունն ու ազգային զգացումը: Զպետք է մոռանալ, որ սոցիալիստական Հոկտեմբերն աշխատավորներին երկրի կատարյալ տեր կարգելով, մեծապես զարգացրեց նրանց ինտերնացիոնալ գիտակցությունը, խորացրեց և բյուրեղացրեց ազգային զգացմունքները: Ուստի, սխալվում են նրանք, ովքեր դեռ գետը չհասած մերկանում են, չըմբռնելով, որ կոմունիզմի կառուցման տվյալ էտապում ազգային զգացմունքը ոչ թե մարում, այլ ավելի է զարգանում ու խորանում և այդպիսով հարստացնում ինտերնացիոնալ գիտակցության բովանդակությունը:

Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ ազատագրված և հոգեպես վերածնված հայ ժողովուրդը, որի ազգային ինքնագիտակցությունն ու հպարտությունն այժմ հասել են մի նոր բարձրության, խորապես ըմբռնում է, որ անդառնալիորեն անցել են այն ժամանակները, երբ նույնիսկ հայ մամուլում

գրում էին, թե ազգը միշտ եղել է խորթ մայր աշխատավորների համար, որպես թե ազգը միշտ եղել է ժողովրդի դեմ, իսկ ազգային ինքնագիտակցությունն ու հայրենասիրական զգացմունքը՝ հետադեմ ու վնասակար։

Հայ ժողովրդի գոյության աղետալի տարիներին վերստին երևաց ազգային հարցի լուծման երկու եղանակ՝ բուրժուական և պրոլետարական։ Իմպերիալիստական գիշատիչների թողտվությամբ և օբյեկտիվ սատարումով, օրը ցերեկով թուրքական իմպերիալիստների մտահղացած պլանով բնաջնջվեց արևմտահայության կեսը. դա ազգային հարցի բարբարոսական լուծում էր։ Մինչդեռ, Արևելյան Հայաստանում սովետական կարգերի հաստատմամբ հայությունը փրկվեց կործանումից և բռնեց իր ազգային վերածնության ու բարգավաճման սովետական ուղին։ Կարճ ժամանակամիջոցում Սովետական Հայաստանը դարձավ անպարտ ՍՍՀ Միության իրավահավասար ու հավատարիմ դաշնակիցներից մեկը։ Եվ այսօր մեր հայրենիքն իր պատշաճ տեղն ունի սոցիալիստական երկրների փայլուն համաստեղության մեջ։

Ինքզինքը հայոց ճակատագրի տնօրեն կարգած, իմպերիալիզմի դարաշրջանի բարդ հանրահաշվից բան չհասկացող, անհաղորդ դիվանագիտության այբուբենին, սորկամտաբար իմպերիալիստական գայլերին փարած, Սովետական Ռուսաստանին թշնամացած դաշնակցությունն ի վերջո ապավինեց հայությանը հոշոտող օսմանյան կեռ թրին։ Վիլսոնների մանդատին արժանանալու աղետալի մտադրությամբ տոգորված դաշնակցական կառավարությունը, մուսավաթականների ու վրաց մենշևիկների հետ սեյմ խաղալով, առանց լուրջ ռազմական դիմադրության, թշնամուն թողեց Հայաստանի տերիտորիայի մեծ տարածություններ։

> Ավելորդ չի լինի նշել, թե Հայաստանում սովետական կարգերի հաստատման նախօրեին ինչ էր քարոզում դաշնակցության պաշտոնական օրգան «Յառաջ» թերթն իր 1920 թվականի մի քանի խմբագրականներում.
>
> Ռուսական օրիենտացիան կտանի դեպի «հայ ժողովրդի ֆիզիկական ոչնչացումը» (24 նոյեմբերի)։ Սովետական Ռուսաստանը «գլորվում է դեպի գերեզման» (28 սեպտեմբերի)։ «Այսուհետև էլ մենք կխոսենք բոլշևիկների հետ պենքի փրկարար լեզվով» (8 հոկտեմբերի)։ «Բոլշևիկներն ամենավտանգավոր իմպերիալիստներն են մեզ համար» (17 հոկտեմբերի)։
>
> Ամեն ինչ անել, որպեսզի հայ աշխատավորությունը հեռու մնա ժամանակի ամենաառաջավոր շարժման՝ կոմունիզմի ազդեցությունից։ Սա էր պարոնայք դաշնակցականների սևեռուն մտահոգությունը։ Իսկ ո՞րն էր ազգի ինքնորոշման դաշնակցության բուն ըմբռնումը։ «Ամեն կերպ պետք է ձգտենք *ամենից առաջ և ամենից ավելի* ապահովել մեր հաշտությունը և *բարեկամությունը* մեր դարավոր թուրք հարևանների հետ»։ («Յառաջ», 24 նոյեմբերի)։
>
> Որդեգրելով այն սկզբունքը, «թե տաճիկը չէ մեր թշնամին, այլ ռուսը», դաշնակցությունը յուրովի լուծեց ազգային ինքնորոշման հարցը և հարկադրված «Յառաջ»-ը գրեց, որ իշխող կուսակցությունը (դաշնակցությունը) և «ամբողջ հայությունը վարակված է անհաղթահարելի մի մտայնությամբ, քաղաքական անուղղելի ռոմանտիզմով, որ թույլ չէր տալիս մեզ բոլորիս լինել խոհեմ ու չափավոր մեր քաղաքական ձգտումների մեջ, ունենալ մեր սեփական համեստ ուժերի կզաստ գիտակցությունը... հրաժարվել օտարների օգնության խաբուսիկ հույսերից և այդ միջոցով անմիջապես հաշտության *ընդհանուր լեզու գտնել տաճիկների հետ*» (17 հոկտեմբերի)։

Այսպիսով, փակվեց դաշնակցության անփառունակ գործունեության օղակը. նա վերադարձավ Թուրքիայի իշխողների գիրկը։ Սա ևս ազգային հարցի լուծում էր, բայց ողբերգական լուծում։ Դիմադարձ լինելով ազգերի ազատագրման՝ Հոկտեմբերի հռչակած արդար քաղաքականությանը, դաշնակցությունը վերջնական կրախի մատնվեց։



Այո՛, կոմունիստական կուսակցության վարած ազգային քաղաքականության շնորհիվ, աշխարհի առաջավոր ազգերի շարքում իր արժանավայել տեղը գտած հայ ժողովուրդը հպարտ է այն գիտակցությամբ, որ իր առաջավոր զավակների տառապանքների ու արյան գնով, դարավոր մաքառումների և մեծաթիվ զոհերի գնով, ի վերջո հասավ իր վերածնության ու բարգավաճման վեհ նպատակին։ Սոցիալիստական հայ ազգն այսօր լավ է գիտակցում, որ իր նոր կյանքի լուսավոր հասումներն ամենից առաջ ազգային հարցի լենինյան լուծման արգասիք են, որ «յոթնապատիկ խաչված Տիրամայր» Հայաստանը վաղուց է վար առնված իմպերիալիստական գիշատիչների խաչից, վար է առնված հայ ազգի կոմունիստների ձեռքով, ռուս ժողովրդի օգնությամբ։

Ազգային նոր պետականության, սոցիալիստական տնտեսության ու կուլտուրայի վիթխարի զարգացումը Հայաստանում, մի անգամ ևս ապացուցում է Հոկտեմբերյան մեծ հեղափոխության անմահ առաջնորդի այն կենսահաստատ և խոստումնալի հայացքի ճշմարտացիությունը, ըստ որի, միջազգային բուրժուազիայի խորտակումով ոչ թե կնվազի, այլ միլիոն անգամ կավելանա մարդկության «շերտավորումը» հոգևոր կյանքի բազմազանության և գաղափարական հոսանքների, ձգտումների ու նրբերանգների հարստության իմաստով։ Ահա թե որպիսի՜ հեռանկարներ է բացել Հոկտեմբերյան հեղափոխությունը սովետական ազգերի բարգավաճման համար։

Հիրավի, սոցիալիստական հեղափոխության վերջնական հաղթանակից հետո կարճատև, սակայն բարդ պրոցեսում Սովետական Միության բազմազգ հանրությունն ապրեց աշխատավորական զանգվածների գիտակցության և զգացմունքների դաստիարակության բյուրեղացման կամ մաքրման մի արգասալի ժամանակաշրջան, որի շնորհիվ մարդիկ ձերբազերծվեցին ազգայնական նախապաշարումներից, «մանրբուրժուական խարամից»։

Ընդամենը կես դարի ընթացքում կյանք առած սովետական ազգերի ու ժողովուրդների ստեղծարար առօրյա պաթոսում գերիշխողն այսօր նոր, սոցիալիստական եղբայրության ու բարեկամության զգացմունքն է, փոխադարձ օգնության և փոխադարձ ըմբռնման բարձր գիտակցությունը, մի գիտակցություն, որը հիմնված է մարքսիզմ-լենինիզմի անսասան պատվանդանին։ Այդ գիտակցությամբ սովետական ազգերը կառուցեցին սոցիալիստական սքանչելի աշխարհ։ Այդ գիտակցությամբ նրանք զգետնեցին մեր մեծ հայրենիքի վրա հարձակված ֆաշիստական հորդաներին։ Այդ գիտակցությամբ զինված նրանք այժմ կերտում են բազում ազգերի կոմունիստական դաշնադրությունը։ Նոր աշխարհի ընդերքում հիմնովին վերափոխվեցին ազատ ազգերը, դառնալով իրոք սոցիալիստական։

Ազատություն, կյանք, ազգային-ինտերնացիոնալիստական խոր ինքնագիտակցություն, ժողովուրդների եղբայրություն ու համագործակցություն, արարչագործ ու բերկրալի աշխատանք։ Ահա թե ինչ տվեց մեծ Հոկտեմբերը անցյալի կեղեքված սովետական ազգերին։

Սոցիալիստական միջազգային սիստեմի բոլոր ազգերի ու ժողովուրդների հետ ուս-ուսի ընթացող հայ ժողովուրդն ասում է իր հպարտության ու հավատի անկեղծ խոսքը մեծ Հոկտեմբերի անմահ երգիչ Եղիշե Չարենցի շուրթերով.

Եվ միասին ու միասիրտ՝ գնում ենք արդ հաղթական
Դեպի երգի՜, կյանքի՜, լույսի՜ մի անսպառ ապագա։




## ՍՈՒՐԵՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ

# ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակն ընդմիշտ վերջ տվեց դասակարգային կեղեքմանը երկրում, փշրեց ազգային ճնշման շղթաները, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների համար ազատության, առաջադիմության ու երջանկության պայծառ ապագայի ուղի բացեց։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի շնորհիվ հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական բնաջնջման վտանգից և դարձավ իր բախտի լիիրավ տերը։ Հայաստանը, ոչ-հեռավոր անցյալում ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկը, պատմականորեն կարճ ժամանակում դարձավ հզոր ու անընդհատ աճող էկոնոմիկայի, բարձր կուլտուրայի երկիր, ուր ամեն ինչ ծառայում է մարդու բարեկեցության բարձրացմանը։

Այդ բոլորի համար, իր երջանիկ կյանքի համար հայ ժողովուրդը պարտական է սովետական իշխանությանը, կոմունիստական կուսակցությանը, մեծ Լենինի հանճարին։

Տվյալ հոդվածում մենք կուզենայինք ընթերցողին ծանոթացնել այն հրսկայական հաջողություններին, որ ձեռք են բերել հանրապետության աշխատավորները Հայաստանում սովետական իշխանության հաստատման անցած 47 տարիների ընթացքում։ Իսկ թե ինչպիսին էր պատկերը մինչ այդ, դիմենք որոշ համադրությունների։

Հայաստանի արդյունաբերությունը յուրաքանչյուր երկուս ու կես օրում ավելի շատ արտադրանք է տալիս, քան 1913 թվականին՝ ամբողջ տարվա ընթացքում, իսկ եթե համեմատելու լինենք 1920 թվականի հետ, ապա արդ-



յունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է 442 անգամ, էլ չենք խոսում արտադրանքի որակի և նշանակության մասին։

Հանրապետության էլեկտրակայանները յուրաքանչյուր 8 ժամում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան նախահեղափոխական Հայաստանում արտադրվում էր ամբողջ տարվա ընթացքում (1913 թվական)։

Եթե նախասովետական ժամանակաշրջանում Հայաստանի արդյունաբերությունը ուներ մի քանի պղնձահանքեր՝ պրիմիտիվ փոքրիկ պղնձաձուլական գործարաններով, գինու-կոնյակի արտադրության և հումքի մշակման մանր ձեռնարկություններ, ուր իշխում էին արհեստն ու տնայնագործությունը, ապա այժմ ունի շատ առաջատար ճյուղեր, ինչպես էլեկտրաէներգետիկան, մեքենաշինությունը, գունավոր մետալուրգիան, շինարարական ինդուստրիան, քիմիական, թեթև արդյունաբերությունը՝ բավականաչափ լայն պրոֆիլով, սննդարդյունաբերությունը, որը նույնպես միավորում է շատ արտադրություններ, փայտամշակման արդյունաբերությունը և այլն։ Հանրապետության գործարաններն ու ֆաբրիկաները հագեցված են ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումներով, արտադրության մեջ կիրառվում են առաջավոր տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք համապատասխանում են գիտության ու տեխնիկայի զարգացման այժմյան մակարդակին։

Եթե նախահեղափոխական Հայաստանը, չունենալով սեփական արտադրություն, ներմուծում էր ամենահասարակ մեքենաներն ու սարքավորումները, ապա այսօր նա տասնյակ երկրների, այդ թվում զարգացած արդյունաբերություն ունեցող այնպիսի երկրների, ինչպիսիք են՝ Չեխոսլովակիան, Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան, ԳՖՆ-ն և այլն, մատակարարում է էլեկտրամեքենաներ, մետաղահատ հաստոցներ, ճշգրիտ չափիչ և արտադրության պրոցեսները կարգավորող սարքեր, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, արժեքավոր սինթետիկ քիմիական արտադրանքներ և այլն։

Եթե առաջ արդյունաբերության հատ ու կենտ մասնագետները օտարերկրացիներ էին, կամ, լավագույն դեպքում, արտասահմանում կամ Ռուսաստանում կրթություն ստացած հայեր, ապա այժմ հանրապետության բազմաթիվ բարձրագույն ուսումնական հաստատություններն ու տեխնիկումներն աճող բազմաճյուղ արդյունաբերությունն ապահովում են գրեթե բոլոր մասնագիտությունների ինժեներներով ու տեխնիկներով, իսկ Երևան քաղաքում բուհերի ուսանողների թիվը այժմ ավելի շատ է, քան 1920 թվականին այստեղ եղած բնակչությունն էր։ Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության մեջ աճել են բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների որակյալ կադրեր, որոնք ո՛չ միայն հաջողությամբ առաջ են տանում հայրենական արդյունաբերությունը, այլև, Սովետական Միության ընդհանուր պլանի հիման վրա, տեխնիկական օգնություն են ցույց տալիս մի շարք երկրների տնտեսության զարգացմանը։

Հանրապետության արդյունաբերության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը ներկայումս անցնում է 240 հազարից, իսկ նախահեղափոխական Հայաստանում՝ հինգ հազարի էլ չէր հասնում։

Ամեն մի երկրի համար արդյունաբերության զարգացման ցուցանիշներից մեկը նրա քաղաքների և քաղաքային բնակչության աճն է։ Նախկինում ունեցած չորս քաղաքների փոխարեն, որոնք միասին վերցրած ունեին 90 հազար բնակիչ, այժմ Հայաստանում կան 23 քաղաք և 27 քաղաքատիպ բնակավայր, ուր ապրում են 1250 հազար մարդ։ Քաղաքային բնակչության բա-

ժինը 1913 թվականի 9 տոկոսից 1967 թ. սկզբին հասել է 55,5 տոկոսի։
Իր սրընթաց աճի շնորհիվ այժմ արդյունաբերության բաժինը ազգային
եկամտի մեջ կազմում է 64 տոկոս, իսկ հանրային արտադրության մեջ՝ 71,
1913 թվականի 14 տոկոսի դիմաց։
Այսպիսիք են որոշ հանրագումարները։ Դրանք հիրավի վիթխարի են, և
հայ ժողովուրդը իրավամբ պարծենում է դրանցով։ Մենք ընտելացել ենք
զարգացման բարձր տեմպերին ու դրանք սովորական են թվում մեզ։ Սա-
կայն, երբ դրանց մասին պատմում ես արտասահմանի, ամենից առաջ, կա-
պիտալիստական երկրների ներկայացուցիչներին, նրանց դեմքերը հաճախ
զարմանք ու տարակուսանք են արտահայտում՝ մի՞թե այդ ամենը հնարա-
վոր է։ Այո՛, դա փաստ է, ճշմարտություն և միանգամայն հնարավոր սոցիա-
լիզմի պայմաններում։ Դրանք՝ այդ մեծ նվաճումները, որ ձեռք են բերվել
արդյունաբերության ու էկոնոմիկայի մյուս բոլոր բնագավառներում, գիտու-
թյան ու կուլտուրայի զարգացման, աշխատավորների բարեկեցությունը բա-
րելավելու ասպարեզում, վառ օրինակ են այն բանի, թե ինչեր կարող է նվա-
ճել իշխանությունը գրաված ժողովուրդը։
Այս ամենը վերաբերում է Սովետական Հայաստանի ինդուստրիայի
սրընթաց աճի մի քանի ընդհանուր ցուցանիշներին։ Բայց ինչպե՞ս են վե-
րափոխվել ինդուստրիայի առանձին ճյուղերը։
Էլեկտրաէներգետիկան ամեն մի երկրի արդյունաբերության տնտեսա-
կան առաջադիմությունը կանխորոշող ճյուղերից է, առավել ևս այնպիսի
երկրի համար, որը վառելանյութի և էներգիայի տեղական այլ աղբյուրներ
չունի։ Ուստի, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավա-
րությունը միշտ հատուկ ուշադրություն են նվիրել հանրապետության էներ-
գետիկ բազայի ստեղծմանն ու զարգացմանը։ Շնորհիվ այդ բանի, անցած
47 տարիների ընթացքում Հայաստանում ստեղծվել է հզոր էներգետիկ սիս-
տեմ, որն իր մեջ միավորում է հիդրոէլեկտրակայաններ, ջերմաէլեկտրակա-
յաններ, էլեկտրաենթակայաններ և էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծեր։
Ի՞նչ ուներ Հայաստանը 1913 թվականին։ 3100 կվտ/ժամ ընդհանուր կա-
րողությամբ մի քանի փոքրիկ էլեկտրակայաններ, որոնք տարեկան արտադրում
էին 5,1 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, և որոնց մեծ մասը առաջին համաշ-
խարհային պատերազմի տարիներին դադարեց գործելուց։
Սովետական Հայաստանում ժողովրդական տնտեսությունը վերականգ-
նելուց հետո մեծ աշխատանքներ սկսվեցին էլեկտրակայանների կառուց-
ման ասպարեզում։
Առաջինը շարք մտան համեմատաբար փոքրերը. 1926 թ. Երգէսը,
1928 թ.՝ Լենգէսը, 1932 թ.՝ Ձորագէսը, ապա՝ ավելի խոշորները՝ 1936 թ.
Քանաքեռգէսը և այլն։ Դրանց զուգընթաց շատ շրջաններում կառուցվում էին
տասնյակ միկրոգէսեր՝ առանձին գյուղերի կամ տնտեսությունների կարիք-
ները բավարարելու համար։
Հանրապետության հիդրոէներգետիկայի մեջ առաջատար տեղ է գրավում
1930—1962 թթ. կառուցված Սևան—Հրազդան էներգախիդրացիոն սիստեմը։
Վեցաստիճան հիդրոէլեկտրակայանների կասկադը, որի ընդհանուր միաժա-
մանակյա հզորությունը մոտ 560 հազար կվտ/ժամ է, աշխատում է Սևանա
լճից Հրազդան գետը տանող ջրերի արհեստական ուժով։ Մինչև 1962 թվակա-
նը, երբ Հայաստանի ողջ էլեկտրաէներգիան տալիս էին միայն հիդրոէլեկ-
տրոկայանները, Սևան—Հրազդան կասկադը տալիս էր ողջ արտադրանքի



մոտ 90 տոկոսը։ Այդ սիստեմի 17 խոշոր ջրանցք ոռոգում են ավելի քան 70
հազար հեկտար բերքատու հող, ուր մշակվում են գյուղատնտեսական արժե-
քավոր կուլտուրաներ։
Սևանա լճի՝ Հայաստանի բնության այդ մարգարտի, դարավոր պաշար-
ների մի մասի՝ էլեկտրաէներգիայի արտադրության, ինչպես և հողերի ոռոգ-
ման համար օգտագործումը հանրապետության ողջ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման համար ունեցել է վճռական նշանակություն։ Բայց մեր
օրերում, երբ երկիրն արդեն տնտեսապես ամրացել է, այսպես կոչված, Սե-
վանի պրոբլեմը նոր բովանդակություն է ստացել, այն զուգակցում է ինչպես
տնտեսության հետագա զարգացման շահերը, այնպես էլ Սևանա լճի բնա-
կան պայմաններին համապատասխան ջրի բարձր մակարդակի պահպանու-
մը։ Խոսքը Արփա գետի ջրերը Սևանա լիճը բերող 48 կիլոմետրանոց թունելի
մար կառուցվող մղիչ պոմպերի կայանների շինարարության մասին է, որոնց
բացման, Արարատյան դաշտավայրի ստորերկրյա ջրերի օգտագործման հա-
ավարտմամբ նորմալ կաշխատեն Սևան—Հրազդան կասկադի հիդրոկայան-
ները, իսկ գյուղատնտեսությունն առանց Սևանի դարավոր պաշարների օգ-
տագործման կապահովվի ոռոգող ջրով։
Սևան—Հրազդան կասկադի շինարարությունը ավարտելուց հետո սկըս-
վեց Զանգեզուրի հիդրոէլեկտրակայանների՝ Որոտանի կասկադի կառուցու-
մը, որի ընդհանուր հզորությունն է 400 հազար կվտ/ժամ, տարեկան 1100 մլն
կվտ/ժամ էլեկտրաէներգիայի արտադրողականությամբ։ Ավարտին է մոտե-
նում Տաթևգէսի կասկադի Տաթևի էլեկտրակայանի կառուցումը. միաժամանակ
սկսվել է Շամբի կառուցումը, իսկ եկող տարի կսկսվի, վերջին աստիճանի՝
Սպանդարյանգէսի շինարարությունը։ Այդ ամենի հետ մեկտեղ պատրաստ-
վում են Դեբեդի վրա կառուցվելիք 320 հազար կվտ/ժամ ընդհանուր հզորու-
թյամբ, տարեկան ավելի քան մեկ մլրդ կվտ/ժամ արտադրողականությամբ
հիդրոկայանների տեխնիկական փաստաթղթերը։
Սակայն, եղած ջրային ռեսուրսները և դրանց բազայի վրա գործող ու
կառուցվող հիդրոէլեկտրակայաններն ի վիճակի չեն ապահովելու էլեկտրա-
էներգիայի նկատմամբ հանրապետության ժողովրդական տնտեսության հա-
րաճուն պահանջները։ Ուստի, հիդրոէլեկտրակայանների շինարարության
հետ միասին ներկայումս մեծ աշխատանք է տարվում ջերմային էլեկտրա-
կայանների կառուցման ուղղությամբ։ Կարճ ժամկետում կառուցվեցին և շա-
հագործման հանձնվեցին Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները,
ինչպես նաև Հրազդանի էլեկտրակայանի առաջին ագրեգատները։ Ներկայու-
մըս գործող և ընդհանուր գումարով 700 հազար կվտ. ժամ կարողություն ունե-
ցող ջերմաէլեկտրակայանները երեք անգամ ավելի էլեկտրաէներգիա են ար-
տադրում, քան հանրապետության բոլոր հիդրոէլեկտրակայանները միասին
վերցրած։ Շահագործվող էլեկտրակարողությունները հարյուրավոր անգամ
գերազանցում են նախահեղափոխական Հայաստանի ունեցածին։
Նախատեսվում է մոտ ժամանակներս զգալիորեն ընդլայնել Հրազդանի
ջերմաէլեկտրակայանը։
Հանրապետության վառելիքա-էներգետիկ բազայի զարգացման գործում
էական նշանակություն ունեցավ գազամուղի կառուցումը, որն ապահովում է
Հայաստանի բնական գազի մատակարարումը Ադրբեջանից և Հյուսիսային
Կովկասից։

Գունավոր մետալուրգիան ծանր ինդուստրիայի ճյուղերից մեկն է, որը հին պատմություն ունի։ Սակայն, 1918 թվականին պղնձի հանքաքարի հանույթը և պղնձի ձուլումը ամենուր դադարեցվեց։

Հանրապետությունում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից բուռն աշխատանք սկսվեց հանքերն ու գործարանները վերականգնելու, իսկ քիչ ավելի ուշ՝ նոր լեռնահանքային և մետալուրգիական ձեռնարկությունների շինարարության ուղղությամբ։ Արմատապես վերափոխվեց գունավոր մետալուրգիան. մանր ձեռնարկությունների փոխարեն, ուր իշխում էր ձեռքի աշխատանքը, վեր խոյացան ժամանակակից, բարձր մեքենայացված ինդուստրիալ գիգանտները՝ Քաջարանի և Ագարակի պղինձ-մոլիբդենի, Ղափանի և Ախթալայի պղնձահանքի, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատները, Քանաքեռի ալյումինի գործարանը և այլն։ Այդ ճյուղի ձեռնարկությունները թողարկում են զտված պղինձ, ալյումին, մոլիբդեն, ցինկի, կապարի կոնցենտրատներ, ոսկի և արծաթ, մի շարք այլ արտադրանքներ։

Հայաստանը պոտենցիալ մեծ հնարավորություններ ունի ո՛չ միայն գունավոր, այլև սև, հազվագյուտ և ազնիվ մետաղների արտադրության արագ աճի համար։ Հաշվի առնելով հետազոտված հանքերի զգալի պաշարների և դրանց մշակման բարենպաստ պայմանների առկայությունը, մեծ աշխատանք է տարվում գործող լեռնահանքային ձեռնարկություններն ընդլայնելու, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը արմատապես վերակառուցելու, ինչպես նաև նոր ձեռնարկություններ կառուցելու ասպարեզում։

Կառուցված է և մոտակա տարիներին շարք կմտնի Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը։ Այդ գիգանտը կոմպլեքսային վերամշակման ենթարկելով տեղական հանքային նյութերը՝ նեֆելինային սիենիտները և կրաքարերը, թողարկելու է կավահող (որը ալյումինի ձուլման համար կիսաֆաբրիկատ է), ցեմենտ, մի շարք արժեքավոր քիմիական նյութեր, երկանիտ (որը հիանալի հումք է բարձրորակ ապակի և բյուրեղապակի արտադրելու համար)։ Այդ արտադրանքները երկրի ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում ուղղակի ներդրվելուց բացի, ելակետային հումք են ծառայելու մի շարք նոր արտադրությունների համար։

Վերջին տարիներս հայտնաբերված ոսկու հանքարանների բազայի վրա առաջանում է նոր ճյուղ՝ ոսկեհանույթի արդյունաբերությունը։ Նախապատրաստվում է շահագործման հանձնել Զոդի ոսկու հանքավայրերը. գործում է փորձնական հարստացուցիչ ֆաբրիկան, շուտով կսկսվի նաև ոսկու հանույթի մեծ ֆաբրիկայի շինարարությունը Արարատում։ Շինարարության համար նախագծվող Սևան—Շորժա—Բասարգեչար—Զոդ երկաթուղային ճյուղը ոսկու հանքերը կմիացնի Արարատի ֆաբրիկայի հետ։

Հնգամյա պլանով նախատեսվում է նաև Հայաստանում կառուցել առաջին քիմիամետալուրգիական գործարանը, որը մոլիբդենի կոնցենտրատների վերամշակումից տալու է մետաղի մոլիբդեն և մի շարք հազվագյուտ տարրեր։

Հայաստանի ընդերքը հարուստ է ո՛չ միայն հանքային, այլև բազմատեսակ ոչ-հանքային հումքով, որպիսիք են՝ կրաքարը, մարմարը, եղնջաքարը, դիատոմիտը, ագատը, հրակայուն և քիմիական հումքը, կավի հատուկ տեսակները, կերակրի աղը և այլ նյութեր։ Սովետական իշխանության տարիներին ոչ-հանքային օգտակար հանածոների հանքարանների բազայի վրա ստեղծված են այդ հանքանյութերի հանույթի և վերամշակման տասնյակ ձեռնարկություններ՝ Թումանյանի հրակայուն նյութերի գործարանը, Սևանի



էլեկտրապակեմեկուսիչ գործարանը, Սարիգյուղի բենտոնիտային կավահանույթի ձեռնարկությունը, Հայմարմար կոմբինատը և այլն։ Երևանի ծայրամասում՝ Ավանում, քարաղի պաշարների բազայի վրա կազմակերպվում են քարաղի հանույթը և վերամշակումը։

Բարձրորակ հրակայուն արտադրանքների, կաղապարման նյութերի և կղմինդրի արտադրանքների համար հիանալի հումք են Սևանա լճի հյուսիսարևելյան առափնյա, այսպես կոչված, ուլտրահիմնական ապարները։ Այժմ, երբ փորձնական գործարանում հաջողությամբ ավարտվել են տեխնոլոգիական հետազոտությունները, կազմվում են այդ հումքը հայթայթելու և վերամշակելու համար Շորժայում կառուցվելիք կոմբինատի նախագծային-տեխնիկական փաստաթղթերը։

Հրաբխային ծագում ունեցող պեռլիտ լեռնային ապարի հսկայական պաշարները թույլ տվին Արագածում ստեղծելու մի նոր արդյունաբերական ձեռնարկություն՝ այդ արժեքավոր հանքային հումքը հայթայթելու և վերամշակելու համար։

Չնայած սովետական երկրաբանների մեծ հայտնագործություններին, Հայաստանի ընդերքը դեռևս չի բացել իր բոլոր հարստությունները։ Մշտապես ծավալվող երկրաբանական որոնումները հայտաբերում են օգտակար հանածոների նորանոր հանքավայրեր, որ կարևորագույն պայման է լեռնային և մետալուրգիական արդյունաբերության հետագա զարգացման համար։

Հայաստանի քիմիական արդյունաբերությունը ամբողջապես ստեղծվել է սոցիալիստական կարգերի հաստատումից հետո։ Այն աչքի է ընկնում զարգացման բարձր տեմպերով և հանրապետության արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալում՝ իր աճող տեսակարար կշռով։ Անցյալ հընգամյակի տարիներին (1959—1965 թթ.) քիմիական արդյունաբերության արտադրանքը ավելացավ 3,1 անգամ, իսկ ընթացիկ հնգամյակում՝ 1966—1970 թվականներին, այն կաճի մոտավորապես երկու անգամ։ Արդյունաբերության ընդհանուր արտադրանքի մեջ այդ ճյուղի բաժինը ընթացիկ տարում, 1950 թվականի համեմատությամբ, կավելանա 9 տոկոսով։ Հայաստանի քիմիական ձեռնարկությունները արտադրում են ավելի քան հարյուր տեսակի արտադրանք՝ սինթետիկ կաուչուկ, քիմիական մանրաթել, սինթետիկ խեժեր ու պլաստիկ զանգվածներ, պարարտանյութեր և բույսերի պաշտպանության միջոցներ, սինթետիկ կորունդ, կալցիումի կարբիդ, զանազան լաքեր ու ներկեր, ավտոդողեր ու ռետինատեխնիկական արտադրանքներ, թիթեղաժապավեններ՝ պոլիմերային նյութերից, զանազան թթուներ և քիմիական ռեակտիվներ, կենցաղային քիմիայի ապրանքներ և այլն։

Մոտ ժամանակներս շարք կմտնեն քիմիական նոր ձեռնարկություններ՝ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի գործարանները, որոնք թողարկելու են նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ, ինչպես նաև Երևան քաղաքում կառուցվող պոտաշի, քացախաթթվի, կենցաղային քիմիայի գործարանները և այլն։

Բնական գազից ամիակ և ացետիլեն ստանալու նպատակով ներկայումս իրագործվող խոշոր միջոցառումները հնարավորություն կընձեռեն ստեղծելու կարբամիդի՝ բարձր խտացման ազոտային պարարտանյութի և պլաստիկ զանգվածներ պատրաստելու համար հումքի արտադրություն, մեծ չափերով ավելացնելու սինթետիկ կաուչուկի և մի շարք այլ արժեքավոր արտադրանքների արտադրությունը։ Հայաստանի քիմիական արդյունաբերության նորա-

կառույցներից մեկը լինելու է Մասիսի կոմբինատը, որը սինթեզ-գազի վերամշակման բազայի վրա արտադրելու է պլաստմասսաներ։

Նախասովետական Հայաստանում մեքենաշինությունը որպես այդպիսին գոյություն չուներ, կային միայն մի քանի վերանորոգման արհեստանոցներ և դարբնոցներ։ Այժմ Սովետական Հայաստանն ունի հզոր մեքենաշինական արդյունաբերություն, որը միավորում է մոտ 90 ձեռնարկություններ, այդ թվում Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, ուր աշխատում են ավելի քան 11 հազար բանվոր, ինժեներ և տեխնիկ, Հայէլեկտրալույս միավորումը՝ մոտ 9000 աշխատողով և այլն։

Մեքենաշինությունը, որը, ինչպես հայտնի է, առաջնակարգ նշանակություն ունի ամբողջ ժողովրդական տնտեսությունը տեխնիկապես վերազինելու գործում, կարճ ժամկետում դարձավ Սովետական Հայաստանի ինդուստրիայի առաջատար ճյուղերից մեկը։ Այն տալիս է Հայաստանի արդյունաբերական արտադրանքի ողջ ծավալի մոտ 23 տոկոսը։ Նրա աճման տեմպերը բոլոր ճյուղերում ամենաբարձրն են։ Անցյալ հնգամյակի տարիներին (1959—1965 թթ.) ձեռնարկությունների թիվը համարյա կրկնապատկվեց, իսկ արտադրանքի թողարկումը աճեց 3,5 անգամ։ Ընթացիկ հնգամյակում՝ 1966—1970 թվականներին, մեքենաների, հաստոցների, գործիքների և սարքավորումների թողարկումը կմեծանա 2,3 անգամ։

Հայաստանի մեքենաշինությունը բազմաճյուղ է, նրա ամենագլխավոր ճյուղերն են՝ էլեկտրատեխնիկական, հաստոցագործիքաշինական արդյունաբերությունը, սարքաշինությունն ու ավտոմատացման միջոցների արտադրությունը, ինչպես նաև ռադիոտեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությունը։ Միաժամանակ կան և այլ ճյուղերի գործարաններ՝ քիմիական մեքենաշինության, ավտոմոբիլաշինության, ճանապարհային և կոմունալ մեքենաշինության։ Էլեկտրատեխնիկական արտադրանքների արտադրությամբ Հայաստանը Սովետական Միության հանրապետությունների մեջ գրավում է երրորդ տեղը՝ ՌՍՖՍՀ-ից և Ուկրաինական ՍՍՀ-ից հետո։

Ավտոմոբիլային արդյունաբերության ձեռնարկությունները վերջերս լավ նվեր տվին երկրին. նրանք յուրացրին փոքրատոննաժ ապրանքատար ավտոմոբիլների արտադրությունը, միաժամանակ արտադրում են ավտոբեռնիչներ, հեծանիվներ, ավտոմոբիլային պահեստամասեր։

Հանրապետության էկոնոմիկայի սրընթաց զարգացումը, ժողովրդի կենցաղի անշեղ բարելավումը և նրա կուլտուրայի բարձրացումը պայմանավորված են կապիտալ շինարարության հսկայական մասշտաբներով, որի ծավալը տարեցտարի աճում է։ Հանքարանների ու էլեկտրակայանների, գործարանների ու ֆաբրիկաների, ոռոգիչ սիստեմների ու ճանապարհների, բնակելի տների, դպրոցների, հիվանդանոցների ու այլ օբյեկտների շինարարության վրա 1966 թվականին 2,3 անգամ ավելի շատ պետական միջոցներ է ներդրված, քան 1960 թվականին։

Հանրապետության ժողովրդական տնտեսության կապիտալ շինարարության ծավալը ընթացիկ տարում կգերազանցի 530 մլն ռուբլուց։

Շինարարության կարիքները լիովին բավարարելու համար մշտապես ընդլայնվում է շինանյութերի արդյունաբերությունը։ Դրա համար Հայաստանը շատ բարենպաստ պայմաններ ունի։ Առատ բնական հարստությունների բազայի վրա սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվել է շինանյութերի հզոր արդյունաբերություն, որն ապահովում է ո՛չ միայն



հանրապետության կարիքները, այլև որոշ արտադրանքներ է մատակարարում հարևան տնտեսական շրջաններին։

1961—1965 թվականների ընթացքում շինանյութերի արտադրությունը մեծացավ 1,8 անգամ։ Նոր հնգամյա պլանով (1966—1970 թթ.) նախատեսվում է շինանյութերի արտադրանքն ավելացնել 1,9 անգամ։ Այդ կապահովվի գործող ձեռնարկություններն ընդլայնելու և ժամանակակից տեխնիկայով հագեցնելու, ինչպես նաև նոր ձեռնարկություններ կառուցելու միջոցով։ Ցեմենտի նոր գործարանը, որ կառուցվում է Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի կազմում և շարք կմտնի առաջիկա տարիներին, տարեկան տալու է 1,5 մլն տոննա արտադրանք այն դեպքում, երբ Արարատի գործարանում ցեմենտի տարեկան արտադրությունը 660 հազար տոննայից չի անցնում։

Ընթացիկ տարում շահագործման է հանձնվելու Արթիկի տուֆաբլոկի գործարանը՝ 250 հազար խոր. մետր պատի բլոկների կարողությամբ. սրանք պետք է պատրաստվեն տուֆի մնացուկներից ու թափոններից։ Տեխնիկական փաստաթղթեր են պատրաստվում Լենինականում ու Պեմզաշենում հենց այդպիսի երկու գործարան կառուցելու համար։ Տարբեր շինարարական արտադրանքների արտադրության գծով ձեռնարկություններ են կառուցվում Կարմրաշենի հրաբխային մնացորդների հանքարանների բազայի վրա։

Երևանից ոչ հեռու, Սպանդարյանում, ստեղծվում է քարհանքերի, բազալտի հանույթի և վերամշակման ֆաբրիկա։ Կիրովականում շուտով շահագործման կհանձնվի երկաթ-բետոնե կառուցվածքների նոր գործարանը։

1968 թվականին կսկսվի մի շարք նոր ձեռնարկությունների, այդ թվում Արզնու մարմարի և գրանիտի մշակման ֆաբրիկայի, տուֆի և պեմզային նյութերի հանույթի համար նոր քարհանքերի, երկաթբետոնի գործարանների շինարարությունը։

Մեծ ուշադրություն է նվիրվում ապակու և հախճապակու-ֆայանսի արտադրանքների ընդլայնմանը։ Ավարտվում է Արզնու տեսակային ապաքի և բյուրեղյա արտադրանքների գործարանի շինարարությունը, կառուցվում է Հոկտեմբերյանի ապակու տարայի գործարանը՝ 200 մլն պահածոների նոր տուփերի և կոնյակի շշերի տարողությամբ։ Կազմվում է Ջերմուկի ապակետարայի գործարանի շինարարության նախագիծը։

Ահա (անշուշտ, ոչ-լրիվ) այն օբյեկտների ցանկը, որոնք մոտակա տարիներին կհամալրեն հանրապետության շինանյութերի արդյունաբերության գործող ձեռնարկությունների շարքը։

Անտառային արդյունաբերությունը Հայաստանում լայն զարգացում չի ստացել և չի կարող ստանալ, քանի որ անտառները շատ չեն և, բացի դրանից, դրանք հողապաշտպանման և ջրակարգավորման գործում կարևոր դեր են խաղում։ Այդ պատճառով էլ անտառահատումը մեզ մոտ զուտ անտառատնտեսական բնույթ ունի։ Այնուամենայնիվ, մասամբ տեղական ռեսուրսների, մասամբ էլ դրսից փոխադրվող անտառանյութի բազայի վրա հանրապետությունում ստեղծվել է բավական հզոր փայտամշակման արդյունաբերություն (ավելի քան երեք տասնյակ ձեռնարկություններով), որոնք արտադրում են կահույք, դանակով կտրված տախտակաթերթ, ֆաներա, փայտա-տաշեղային սալիկներ, պարկետ, դռների, պատուհանների ապակեկալներ և շինարարության համար ատաղձագործական այլ ապրանքներ։

Հայաստանի արդյունաբերությունը մասսայական սպառման համար թողարկում է մեծ քանակությամբ բազմատեսակ արտադրանք։ Բնակչու-

թյան պահանջների բավարարմամբ զբաղվում են արդյունաբերության բոլոր ճյուղերը, մասնավորապես՝ թեթև և սննդի արդյունաբերությունը:

Հայաստանի թեթև արդյունաբերության կազմի մեջ մտնում են ավելի քան 110 ձեռնարկություն, ուր իրենց ուրույն տեղն ունեն Լենինականի տեքստիլ, Երևանի բրդի-մահուդի և մետաքսի կոմբինատները, կոշիկ արտադրող Մասիս միավորումը, Կիրովականի տրիկոտաժի, Իջևանի գորգագործական ֆաբրիկաները և այլն:

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման շնորհիվ վերջին ժամանակներս զգալի չափով ավելացել է բնակչության համար անհրաժեշտ ապրանքների արտադրությունը: Թեթև արդյունաբերությունը արտադրանքի թողարկումը 1966 թվականին ավելացրեց 13,6 տոկոսով, իսկ ընթացիկ տարվա յոթ ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, 22 տոկոսով: Հանրապետության թեթև արդյունաբերության աշխատողները հաջողությամբ կատարում են պետական պլանը և Հոկտեմբերյան մեծ հեղափոխության 50-ամյակի պատվին ստանձնած իրենց սոցիալիստական պարտավորությունները: Հոբելյանական տարում նրանք երկրին կտան 74 մլն քառ. մետր բամբակի գործվածք, 11 մլն քառ. մետր մետաքսյա գործվածք, ավելի քան 7 մլն քառ. մետր բրդե գործվածք, 8 մլն զույգ կաշվե կոշիկ, 55 մլն հատ բամբակե գործվածքեղեն, 50 մլն զույգ գուլպա և շատ այլ արտադրանքներ:

Հայաստանում սինթետիկ մանրաթելի, պլաստմասսաների, պոլիէթիլենային և պոլիքլորովինիլային թիթեղաժապավենների խոշոր մասշտաբի արտադրությունների ստեղծումը, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրանքների անշեղ աճը կարևորագույն պայման են՝ ավելի մեծ չափերով ավելացնելու գործվածքեղենի, հագուստեղենի և կոշկեղենի թողարկումը:

Ընթացիկ տարում Գորիսի և Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկաներում շահագործման կհանձնվեն նոր կարողություններ, կավարտվի Արտաշատի մանվածագործվածքային կոմբինատի շինարարությունը: Ալավերդում կառուցվում է թիկնոցներ թողարկող ֆաբրիկա: 1968 թ. Երևանում կսկսվի նորաձև կոշիկների նոր ֆաբրիկայի շինարարությունը, կավարտվի Երևանի կաշվի գործարանի և մետաքսի կոմբինատի մի մասի վերակառուցումը:

Հայաստանի էկոնոմիկայի մեջ կարևոր դեր ունի սննդարդյունաբերությունը, որն արտացոլում է հանրապետության գյուղատնտեսության բազմաճյուղ բնույթը և իր մեջ է միավորում մսի և կաթի արդյունաբերության, գինեգործության ու կոնյակի արտադրության, պահածոների, հացաբուլկեղենի, հրուշակեղենի և գարեջրա ոչ-ալկոհոլ արդյունաբերության, շաքարի, յուղա-ճարպային, եթերա-յուղային արտադրության ավելի քան 160 ձեռնարկություն: Սննդի արդյունաբերությունը հանրապետությանն ապահովում է անհրաժեշտ սննդամթերքներով և իր արտադրանքի մի մասը արտահանում Միության մյուս հանրապետությունները, ինչպես նաև արտասահման:

Գյուղատնտեսական հումքի արտադրության աճի և վերամշակող արդյունաբերության ընդլայնման բազայի վրա հանրապետությունը տարեցտարի մեծացնում է մրգերի ու բանջարեղենի պահածոների, գինու և կոնյակի, թարմ և չոր մրգերի, ծխախոտի, ինչպես նաև հանքային ջրերի մատակարարման համամիութենական ֆոնդը:

Սննդարդյունաբերության շատ արտադրանքներ՝ խոշոր պանիրները,



մրգի պահածոները, գինիները և հատկապես կոնյակն ու հանքային ջրերը,
արժանի փառք են վայելում:
Հանրապետության արդյունաբերության բարձր մակարդակի մասին է
խոսում նրա արտադրանքների նկատմամբ այն աճող հետաքրքրությունը, որ
ցուցաբերում է արտասահմանը: Հայաստանից մոտ 150 տեսակի արտադ-
րանք է արտահանվում աշխարհի ավելի քան 70 երկրներ: Վերջին հինգ տարի-
ների ընթացքում արտահանման ծավալի տարեկան միջին աճը կազմել է
ավելի քան 20 տոկոս: Արտահանվող ապրանքների արտադրությամբ և մա-
տակարարմամբ զբաղվում են արդյունաբերական 70 ձեռնարկություն: Ընդ
որում, չափազանց բնորոշ է, որ արտահանվող ապրանքների կեսից ավելին
մեքենաշինության արտադրանքներ են՝ էլեկտրամեքենաներ, մետաղամը-
շակման հաստոցներ, գործիքներ ու այլ արդյունաբերական սարքավորում-
ներ, որոնց նկատմամբ պահանջարկ կա ինչպես նոր զարգացող, այնպես և
արդյունաբերական տեսակետից առաջավոր երկրների կողմից:
Հանրապետության արդյունաբերության բարձր տեխնիկայի մասին է
վկայում նաև այն հանգամանքը, որ նրա արտադրանքի շատ տեսակներ լավ
գնահատական են ստանում միջազգային տոնավաճառներում և ցուցահան-
դեսներում: Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանը յուրացրել է
ճշգրտության բարձր կարգի դետալների էլեկտրակայծային մշակման նոր
հաստոցի թողարկումը, որը երեք մեծ ոսկե մեդալ է ստացել Մոսկվայի,
Լայպցիգի և Պլովդիվի միջազգային ցուցահանդեսներում:
Համառոտակի սրանք են Սովետական Հայաստանի ինդուստրիալ զար-
գացման արդյունքները նրա գոյության 47 տարիների ընթացքում: Հիրա-
վի, հսկայական առաջընթաց թռիչք է կատարված: Ավելի սքանչելի են մեր-
ձավոր հեռանկարները: ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր
հնգամյա պլանով նախատեսվում են մեր հանրապետության արդյունաբե-
րության աճի ավելի բարձր տեմպեր: 1966—1970 թվականների ընթացքում
նրա արտադրանքն ավելանալու է մոտավորապես 1,8 անգամ: Դա նշանա-
կում է 12,5 տոկոս միջին տարեկան աճ՝ նախորդ հնգամյակի տարիներին
ձեռք բերած 9,9 տոկոս աճի փոխարեն:
Հնգամյակի առաջադրանքները կատարվում են հաջողությամբ: 1966 թվա-
կանին արդյունաբերական արտադրանքը, 1965 թվականի համեմատությամբ,
ավելացավ 13,1, իսկ 1967 թվականի ութ ամիսների ընթացքում, անցյալ տար-
վա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, 15 տոկոսով:
Հանրապետության արդյունաբերությունը նոր բարձունքների կհասնի
հնգամյակի վերջում՝ 1970 թվականին, երբ կլրանա Սովետական Հայաստանի
50 տարին. նա կթողարկի 200 անգամ ավելի արտադրանք, քան 1913 թ.:
Սովետական կարգերի պայմաններում Հայաստանի ինդուստրիալ զար-
գացումն այն բանի վառ օրինակն է, թե ինչպիսի առաջադիմության կարող է
հասնել սոցիալիզմի ուղիով ընթացող երկիրը, ինչպիսի բարիքներ է բերում
հասարակական զարգացման սոցիալիստական ուղին, թե ՍՍՀՄ-ում սոցիա-
լիզմի հաղթանակի և կոմունիստական շինարարության նվաճումների շնոր-
հիվ սովետական բոլոր ժողովուրդների համար հետագա առաջընթացի ինչ-
պիսի ասպարեզներ են բացվել:



### ԲԱԿՈՒՆՑ ԱՆԱՆԻԿՅԱՆ

# ԱԶԱՏ ՀԱՅՐԵՆԻՔԻ — ՀԱՐՈՒՍՏ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ճեղքելով իմպերիալիզմի ճակատը, մեր հայրենիքը դուրս բերեց սոցիալիզմի շինարարության ճանապարհը։ Անծանոթ ու դժվարին էր այն ուղին, որով պետք է անցներ սովետական ժողովուրդը։ Սովետների երիտասարդ հանրապետությանը վիճակված ծանր փորձությունները՝ ինտերվենցիան ու քաղաքացիական պատերազմը, սովը, տնտեսական բլոկադան ու քայքայումը, դիվերսիաները, սաբոտաժն ու տեռորը, երկրի սոցիալ-տնտեսական, տեխնիկական ու կուլտուրական հետամնացությունը տասնապատկում էին սոցիալիզմի կառուցման դժվարությունները։ Այդպիսի արտակարգ պայմաններում կուսակցությունից ու բանվոր դասակարգից պահանջվում էր իմաստուն, խորաթափանց քաղաքականություն, անհողդողդ կայունություն, անսասան հավատ իրենց ուժերի, ժողովրդի անսպառ ստեղծագործական ուժերի նկատմամբ։

Լենինյան անմահ գաղափարներով զինված, դասակարգային դաժան մարտերի ու ծանր փորձությունների քուրայում թրծված կոմունիստների մեծագործ կուսակցությունն իր հանճարեղ առաջնորդի իմաստուն ղեկավարությամբ, թեորիական ապշեցուցիչ խորությամբ մշակեց պրոլետարական հեղափոխության հրատապ պրոբլեմները, կանխագծեց երկրի արմատական վերափոխման, սոցիալիզմի կառուցման պլանը, որի հիմնական օղակներից մեկն էլ կուլտուրական հեղափոխությունն էր։ Պատմական կարճ ժամանակամիջոցում երկրի ինդուստրացման, մանր փոշիացած գյուղատնտեսության սոցիալիստական կոոպերացման հետ մեկտեղ իրագործվեց կուլտուրական մեծ հեղափոխությունը, որն աշխատավոր մասսաներին դուրս բերեց հոգևոր խավարից, նրանց հաղորդակից դարձրեց մարդկության բազմադարյան կուլտուրայի հարստություններին։ Այդ հեղափոխության շնորհիվ կուլտուրայի բոլոր գանձերը և գիտության նվաճումները, որոնք դարերով ծառայել էին միայն հասարակության «վերին խավերի» շահագիտական նպատակներին, դարձան



նյութական ու հոգևոր արժեքների իսկական ստեղծողի՝ ժողովրդի սեփականությունը, վերադարձվեցին նրան, ում հանճարով դրանք ստեղծվել էին և ում իրավամբ պատկանում էին։

## ՈՒՂԻՆ ՀԱՐԹՎԵՑ ՊԱՅՔԱՐԻ ՄԻՋՈՑՈՎ

Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին, քաղլուսվարների համառուսաստանյան II համագումարում իր զեկուցման մեջ Վ. Ի. Լենինը սրտի անհուն ցավով էր խոսում երկրի կուլտուրական հետամնացության, հին հասարակությունից ժառանգություն մնացած ցածր կուլտուրայի մասին, տիրող մասսայական անգրագիտությունը վերացնելու համար արտակարգ հանձնաժողով ստեղծելու անհրաժեշտության մասին։ «Արդեն իսկ այն հանգամանքը,—ասում էր նա,—որ կարիք եղավ անգրագիտության վերացման հանձնաժողով ստեղծել, ապացուցում է, որ մենք (ինչպես ասենք, որ մեղմ դուրս գա) մի տեսակ կիսավայրենիներ ենք, որովհետև մի երկրում, որտեղ կիսավայրենի մարդիկ չեն ապրում, այնտեղ ամոթ կլիներ անգրագիտության վերացման արտակարգ հանձնաժողով ստեղծել...» (Երկեր, հ. 33, էջ 67)։

Կալվածատերերի և կապիտալիստների իշխանության ջախջախումը, արտադրամիջոցների հանրայնացումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումը՝ աշխատավոր մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման, նոր կուլտուրայի ստեղծման կարևորագույն և վճռական պայմաններն էին։ Սակայն Լենինը միաժամանակ ընդգծում էր, որ առանց կուլտուրական հեղափոխության, առանց նոր կուլտուրայի շինարարության անհնարին է պատկերացնել սոցիալիզմի կառուցումը։ Սա խիստ դժվարագույն և ծանր խնդիր էր, որը կուսակցությունից և բանվոր դասակարգից պահանջում էր մեծագույն հմտություն, անցյալի կուլտուրական արժեքների ճիշտ գնահատում, անողոք պայքար ոչ միայն բուրժուական գաղափարախոսության, այլև բոլոր նրանց դեմ, ովքեր թերահավատորեն էին տրամադրված ժողովրդի ստեղծագործական ուժերի նկատմամբ, ովքեր նվնվում ու զինաթափվում էին դժվարությունների առջև, հորինում էին մարքս-լենինյան գաղափարախոսությանը խորթ «տեսություններ», բոլոր նրանց դեմ, ովքեր վարակված էին ինդիվիդուալիզմի ու անարխիզմի թույնով։

Կուլտուրական հեղափոխության լենինյան տեսությունն ու պրակտիկան հիմնովին հերքեցին մենշևիկների, տրոցկիստների, բուրժուական նացիոնալիստների և լենինիզմի մյուս հակառակորդների այն «տեսությունը», թե իբր բանվորների և գյուղացիների կուլտուրական հետամնացությունը, պրոլետարիատի կրթված կադրերի բացակայությունը նրան զրկում են իր նոր կուլտուրան կերտելու հնարավորությունից։

Կուլտուրական հեղափոխության լենինյան պլանի հաջող կենսագործումը լրջորեն խոչընդոտում էր նաև պրոլետարական կուլտուրայի այն «տեսությունը», որ առաջադրել և պաշտպանում էին Ա. Բոգդանովը և մյուս «ձախերը»։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո «պրոլետկուլտի» դեմ կուսակցության մղած պայքարն ուներ իր պատմական արմատները, որն, ըստ էության, սկսվել էր հեղափոխությունից շատ առաջ։ Պրոլետկուլտականները գտնում էին, որ հեղափոխությունը կարիք չունի անցյալի կուլտուրայի ժառանգությանը, նա պետք է ամբողջությամբ դեն նետի այն և բոլորովին մաքուր տեղում կառուցի իր նոր կուլտուրան։ Պրոլետարական կուլտուրայի բոգ-

դանովյան լոզունգն իր բուն էությամբ ռեակցիոն էր, որը պահանջում էր խլել
առաջավոր դասակարգի կապերը ժողովրդից ու մարդկության դարավոր կուլ-
տուրայից, պրոլետարական կուլտուրան՝ դեմոկրատական, համամարդկային
կուլտուրայից։

Միանգամայն հասկանալի է, որ Լենինը, կոմունիստները ոչ միայն չէին
կարող հաշտվել նման տեսակետի հետ, այլև, ելնելով սոցիալիստական հե-
ղափոխության կենսական շահերից, անողոք պայքար էին մղում դրանց դեմ։
1920 թվականի հոկտեմբերին, պրոլետկուլտի առաջին համագումարի համար
պատրաստած բանաձևի նախագծում, Լենինը հենց մարքսիզմի օրինակով
ցույց տվեց, որ մարքսիզմը, որպես ուսմունք, ոչ միայն չի մերժում անցյալի
ժառանգությունը, այլև յուրացնում, ճննադատորեն վերաիմաստավորում է
այն ամեն արժեքավորը, ինչ ստեղծել է մարդկային միտքը դարերի ըն-
թացքում։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ չնայած այն հակասականու-
թյանը, որի պայմաններում տեղի է ունենում կուլտուրայի զարգացումը դա-
սակարգային հասարակությունում, այն միշտ էլ աշխարհի ճանաչողության և
իրականության վերափոխման համար ձեռք բերված գիտելիքների օգտագործ-
ման անընդմեջ պրոցես է և այստեղ պրոլետարիատը չի կարող բացառու-
թյուն կազմել, ընդհատել պրոցեսը, դեն նետել անցյալում ստեղծված ամեն
ինչ։

Բացի այդ, հանրահայտ է, որ յուրաքանչյուր նոր սերունդ իր կյանքը
ստեղծում է նախորդ սերունդների ստեղծած նյութական ու հոգևոր աշխար-
հում և, բնականաբար, առաջին հերթին պետք է յուրացնի այդ աշխարհի
հարստությունները։

Ամեն մի նոր դարաշրջան նախորդ կուլտուրայից վերցնում է այն ամենը,
ինչ այդ դարաշրջանի մարդիկ կարող են օգտագործել իրենց պրակտիկ շա-
հերի ու նպատակների համար։ Իսկ դա հնարավոր է ոչ միայն այն պատճառով,
որ կուլտուրայի զարգացումը անընդմեջ պրոցես է, այլև այն պատճառով, որ
ամեն մի դարաշրջանի ստեղծած կուլտուրայի մեջ կա նաև օբյեկտիվ, հա-
մամարդկային բովանդակություն։ Ավելին, Լենինը նշում էր, որ կուլտուրայի
մեջ կան այնպիսի կոմպոնենտներ, որոնք դասակարգային բնույթ չեն կրում։
Բոլորովին այլ հարց է, թե տվյալ սերունդը նախորդ ժառանգությունից ինչն
է վերցնում և ինչն է մերժում։ Դա ամենից առաջ կախված է տվյալ հասարա-
կության զարգացման պատմական աստիճանից, տվյալ դասակարգի տնտե-
սական դրությունից և նրա շահերից։ Այնքանով, որքանով պրոլետարիատը
պատմության մեջ առաջին ամենահետևողական, հեղափոխական, դասակար-
գային սահմանափակություններից ազատ դասակարգն է, որի պատմական
միսիան անդասակարգ հասարակության ստեղծումն է, այդքանով էլ նրա
շահերը համընկնում են պատմական պրոգրեսի օբյեկտիվ տենդենցներին,
այդքանով էլ նա օրինավոր ժառանգորդն է այն ամեն լավագույնի, ինչ մարդ-
կությունն ստեղծել է իր բազմադարյան պատմության ընթացքում։

Մերժելով անցյալի կուլտուրական ժառանգության նկատմամբ նիհիլիս-
տական, անարխիստական մոտեցումը, կուսակցությունը բանվոր դասակար-
գին, սովետական ժողովրդին զինեց լենինյան գաղափարներով, երկրում իրա-
կանացվող կուլտուրական հեղափոխությունը տարավ Լենինի նշած ուղիով։
«Կուսակցությունը,— ասված է Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի
առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— ղեկավարվում էր Լենինի այն ցու-



ցումներով, որ սոցիալիստական կուլտուրան կարող է ստեղծվել անցյալի հո-
գևոր ժառանգության, համաշխարհային մշակույթի բոլոր արժեքների յու-
րացման և քննադատական վերամշակման հիման վրա»։

Վերևում շարադրվածը երբեք էլ չի նշանակում, թե բանվոր դասակար-
գը, նոր հասարակարգը ամբողջությամբ վերցնում են անցյալի կուլտուրական
ժառանգությունը։ Պատմության մեջ և ոչ մի հեղափոխության ժամանակ կուլ-
տուրական ժառանգության այնպիսի սկզբունքային վերագնահատում չի կա-
տարվել, ինչպես սոցիալիստական հեղափոխության պրոցեսում։ Սոցիալիզմը
վճռականորեն մերժում է կուլտուրայի մեջ այն ռեակցիոնն ու հակաժողովր-
դականը, որը կապված է տիրապետող դասակարգերի շահագիտական նպա-
տակների հետ։ Վ. Ի. Լենինը խորաթափանց կերպով նկատում էր, որ ամեն
մի ազգային կուլտուրայի մեջ կա երկու կուլտուրա։ Նա միաժամանակ ընդ-
գծում էր, որ պրոլետարական կուլտուրան իր զարգացման մեջ չի կարող
չհենվել արդեն ստեղծված կուլտուրայի դեմոկրատական ու սոցիալիստական
քիչ թե շատ զարգացած էլեմենտների վրա, որ սոցիալիզմի կառուցման հա-
մար անհրաժեշտ է վերցնել կապիտալիստական հասարակարգում ստեղծված
ու ստեղծվող ամեն արժեքավորը, ընդհուպ պահանջում էր «օգտագործել տեխ-
նիկայի և կուլտուրայի այն նվաճումները, որ ձեռք են բերված խոշորագույն
կապիտալիզմի կողմից»։

Կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը, մեր հայրենիքի
բազմազգ ժողովուրդներն անշեղորեն կենսագործեցին մեծ առաջնորդի պատ-
գամները, իրենց պրակտիկ գործունեությամբ հաստատեցին համամարդկային
կուլտուրայի ժառանգորդի, նրա շարունակողի ու զարգացնողի իրենց իրա-
վունքը։

Այս ամենից հետո միայն զարմանք և օրինական զայրույթ կարող են
առաջացնել «պրոլետարական կուլտուրական մեծ հեղափոխության» անվան
տակ Մաո Ցզե-դունի և նրա խմբի անցկացրած գաղափարական պլատֆորմը
և պրակտիկ գործունեությունը։ Մաո Ցզե-դունի և նրա խմբի կողմից հովանա-
վորվող խունվեյբինների անցկացրած, այսպես կոչված, «պրոլետարական կուլ-
տուրական մեծ հեղափոխությունը» ո՛չ պրոլետարական է, ո՛չ կուլտուրական
և ո՛չ էլ հեղափոխություն։ Դա, ըստ էության, միայն քող է կուսակցական
կադրերի, ստեղծագործական ինտելիգենցիայի հետ հաշվեհարդար տեսնելու
համար։

Չինական ղեկավարների որդեգրած քաղաքական պլատֆորմն ու պրակ-
տիկ գործունեությունը ոչ մի կապ չունեն մարքսիզմ-լենինիզմի հետ, անցյա-
լի ժառանգության, համամարդկային կուլտուրայի լենինյան գնահատման
հետ։ Այդ քաղաքական կուրսն այլ բան չէ, եթե ոչ ժողովրդական հոծ մասսաներին զրկել մարդկային կուլտուրայի հոյակապ նվաճումները յուրացնելու,
համաշխարհային քաղաքակրթությանը հաղորդակից դառնալու հնարավորու-
թյունից։

## ՀՐԱՇԱԼԻ ԱՅԳՈՒ ԱՌԳԱՍԱԲԵՐ ՊՏՈՒՂՆԵՐԸ

Կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի անդուլ ջանքե-
րով սոցիալիզմի պատմական հաղթանակները կուլտուրայի ասպարեզում
նշանավորվեցին ամենից առաջ նրանով, որ ՍՍՀՄ-ում հաղթահարվեց հին,
շահագործողական հասարակարգերին հատուկ խզումը գիտության ու ժողո-

վրդի, կրթության ու աշխատանքի միջև։ Սոցիալիզմը գիտության բոլոր նվաճումները, կուլտուրայի բոլոր գանձերը ի սպաս դրեց ժողովրդին, որը նպաստավոր հող ստեղծեց մտավոր և ֆիզիկական աշխատանքի դարավոր հակադրությունը լիկվիդացնելու համար։ Սոցիալական այդ կնճռոտ պրոբլեմի լուծման ժամանակ կուսակցությունը ելնում էր հասարակական կյանքի մարքս-լենինյան խոր գիտական, մատերիալիստական վերլուծությունից։ Դա ոչ թե «վերադարձ էր դեպի աղքատի և պահանջմունքներ չունեցող մարդու անբնական պարզությունը» (К. Маркс, Ф. Энгельс, Из ранних произведений, стр. 586—587), այլ վիթխարի թռիչք աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման, անհատի բազմակողմանի զարգացման բնագավառում։

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ մենք նոր հասարակարգի կառուցումը պետք է սկսենք ոչ թե ֆանտաստիկ, ջերմոցներում աճեցրած հատուկ մարդկային մատերիալից, այլ նրանից, ինչ ժառանգություն է թողել մեզ կապիտալիզմը։ Իսկ կապիտալիզմը Ռուսաստանում թողել էր խիստ տխուր ժառանգություն։ 1897 թվականի մարդահամարի տվյալներով երկրի 9—49 տարեկան ազգաբնակչության միայն 26,3 տոկոսն էր գրագետ, ընդ որում, ֆիզիկական աշխատանքով զբաղվողների կազմում չկար միջնակարգ և բարձրագույն կրթությամբ և ոչ մի մարդ։ Ահա թե ինչու ՍՍՀՄ-ում կուլտուրական հեղափոխության առջև կանգնած էր երկրում մասսայական անրագիտությունը վերացնելու, ժողովրդի կուլտուր-կրթական մակարդակի մեջ արմատական հեղաբեկում մտցնելու արտակարգ կարևոր խնդիրը։

Երկրի կուլտուրական հետամնացության, որակյալ կադրերի ու միջոցների սուր պակասության դժվարին պայմաններում պետությունը, Վ. Ի. Լենինի անմիջական նախաձեռնությամբ, ստեղծեց ժողովրդական կրթության նոր սիստեմ, որն ապահովեց բնակչության ընդհանուր գրագիտությունը, գիտության ու կուլտուրայի արագ վերելքը։ Պատմական կարճ ժամանակամիջոցում Իլյիչի երազանքն իրականություն դարձավ։ Ներկայումս ՍՍՀՄ-ը ամենակրթված հասարակությունն է աշխարհում։ Այժմ ուսուցման տարբեր հաստատություններում ընդգրկված է երկրի 7 տարեկանից բարձր ազգաբնակչության ավելի քան մեկ երրորդը։ Եթե մինչև հեղափոխությունը ցարական Ռուսաստանի բուհերում սովորում էին միայն 127 հազար ուսանող, ապա այժմ երկրի բուհերում սովորում են ավելի քան 4 միլիոն 125 հազար մարդ, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 4 միլիոն մարդ։ Աշխատող ազգաբնակչության ավելի քան կեսն ունի ոչ լրիվ միջնակարգ, միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Սա իրոք առաջընթաց վիթխարի թռիչք էր։

ՍՍՀՄ-ում կուլտուրական հեղափոխության մեծագույն նվաճումներից մեկն էլ այն էր, որ պատմական խիստ կարճ ժամանակամիջոցում ձևավորվեց սոցիալիզմի գործին անսահմանորեն նվիրված բանվորա-գյուղացիական մտավորականությունը։ ՍՍՀՄ կազմի մեջ մտնող բոլոր ազգությունները, ընդհուպ նաև այն ազգերը, որոնք մինչև հեղափոխությունը չունեին անգամ սեփական գիր ու գրականություն, արդեն 30-ական թվականների կեսերին ունեին ժողովրդական մտավորականության սեփական կադրեր, ժողովրդական տնտեսության բարձրորակ մասնագետներ։ Եթե ցարական Ռուսաստանում բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մտավորականությունը ընդամենը 290 հազար էր, ապա ներկայումս մեր երկրում միայն գիտա-



կան աշխատողների թիվը անցնում է 700 հազարից։ Սովետական բազմամիլիոն մտավորականության ջանքերի շնորհիվ այժմ մեր երկիրը քայլում է համաշխարհային գիտության, գրականության, տեխնիկայի ու կուլտուրայի ավանգարդում։ Սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է, որ կարճ ժամանակամիջոցում ստեղծեց կարկառուն գիտնականների մի հրաշալի կաճառ, որոնք վիթխարի ավանդ են ներդնում մարդկության գիտատեխնիկական առաջադիմության գործում, որոնց հրաշագործ աշխատանքը համաշխարհային լայն ճանաչում է գտել։

Սոցիալիզմի հաղթանակը, երկրում իրականացվող կուլտուրական հեղափոխությունը լայն ասպարեզ բացեցին գրականության ու արվեստի զարգացման համար։ Այդ ժամանակաշրջանում ձևավորվեց սոցիալիստական ռեալիզմի արվեստը, որի բնորոշ գծերն են՝ խոր ժողովրդայնությունն ու կուսակցականությունը, հեղափոխական հումանիզմն ու քաղաքացիականությունը, հշմարտացիությունը, անհաշտվողականությունը բուրժուական գաղափարախոսության ու բարոյախոսության նկատմամբ։ Սովետական արվեստն ու գրականությունը խորապես մարմնավորեցին մեր ժողովրդի հերոսական գործերն ու պայքարը։

Կուլտուրական հեղափոխության պատմական արդյունքներից մեկն էլ մեր բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների կուլտուրաների աննախընթաց ծաղկումն ու բարգավաճումն է։ Սովետների մեր մեծ հայրենիքը դարձել է մշակված մի հրաշալի այգի, ուր յուրաքանչյուր ժողովրդի պտուղն իր բույրն ու համն ունի։

Կոմունիստական կուսակցությունը լենինյան իմաստունությամբ լուծելով ազգային հարցը, անսահման հորիզոններ բացեց երկրում ապրող բոլոր ազգերի ու ազգությունների ստեղծագործական ուժերի ծաղկման համար։ Մեր հայրենիքի ժողովուրդներն իրենց ուղին սկսելով կուլտուրայի զարգացման տարբեր աստիճաններից, եղբայրական բարեկամության և փոխադարձ օգնության շնորհիվ, նոր հասարակարգի կառուցման ընթացքում աստիճանաբար հաղթահարեցին տնտեսական փաստական անհավասարությունը, տնտեսական բազմակացութաձևությունը, ստեղծեցին ընդհանուր տնտեսական բազիս, որը և հանդիսացավ միասնական սոցիալիստական կուլտուրայի զարգացման գրանիտյա պատվանդանը։

Հոկտեմբերյան հեղափոխության մեծագույն արգասիքն է անշուշտ այն, որ այսօր աշխարհով մեկ տարածվում է սովետական գիտության ու արվեստի համբավը. առաջավոր գիտության բոլոր ճյուղերի աշխատողների ավանգարդում ընթանում են մեր գիտնականները, տիեզերքը մտքի թևերով նվաճող սովետական հանճարները։ Չկա աշխարհում մի այլ երկիր, որը կարողանա համեմատվել ՍՍՀՄ-ի հետ անցյալի կուլտուրայի արժեքների հայտաբերման, մշակման, պահպանման և օգտագործման ասպարեզներում։ Այն ամեն ռացիոնալը, ինչ ստեղծվել է բանականության կախարդիչ ուժով, եղել ու մնում է սովետական մտքի հետազոտման և գուրգուրանքի առարկան՝ հօգուտ ժողովրդի հոգևոր հարստացման։

Պատահական չէ, որ մեր դարում համամարդկային կուլտուրայի բոլոր գանձերի միակ օրինական ժառանգորդները Հոկտեմբերի սերունդներն են հանդիսանում։ Օրինաչափ էր, որ զառամյալ Եվրոպայի ժողովուրդներին Հոկտեմբերի սերունդները փրկեցին ֆաշիզմի ժանտախտից։ Նույնչափ և բնականոն

է, որ այժմ Սովետական Միությունն է դարձել մարդկության անցյալ ու ներկա հոգևոր գանձերի հարուստ շտեմարանը։

Անցած կես դարի ընթացքում ուսումնասիրվել, մշակվել ու գիտական ապարատով հրապարակվել է ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների ֆոլկլորը՝ նրանց կոլեկտիվ ստեղծագործության հանճարի պտուղը։

Հոկտեմբերի հեղափոխական ոգու ուժով բնականաբար ազգամիջյան հաղորդակցության միջոց դարձավ ռուսերենը, որը մեծ ազդակ եղավ եղբայրական ժողովուրդների հոգևոր ծաղկման և համաշխարհային կուլտուրայի գանձերի յուրացման համար։ Սովետական կուլտուրայի մեծագույն նվաճումը պետք է համարել և այն, որ մեր ազգամիջյան հարուստ ռուսաց լեզուն դարձել է համաշխարհային ազդեցիկ լեզուներից մեկը։

Սովետական իշխանության տարիներին ՍՍՀՄ-ում Վ. Ի. Լենինի աշխատությունները հրատարակվել են ավելի քան ինը հազար անգամ՝ ՍՍՀՄ 95 և արտասահմանյան շատ ժողովուրդների լեզուներով, ընդամենը 3.354.274.000 տիրաժով։ Նրա Երկերի ժողովածուն 20 հատորով առաջին անգամ լույս տեսավ 1920—1926 թթ. 2.662.000, իսկ Երկերի լիակատար ժողովածուն՝ 55 հատորով ավարտվեց 1965 թվականին՝ 11.871.000 տիրաժով։ Անմահ առաջնորդի երկերը անցած 47 տարիների ընթացքում հայերեն լեզվով լույս են տեսել շուրջ երկու միլիոն օրինակով։

Բազմաթիվ լեզուներով և մեծ տիրաժներով տպագրվել ու ժողովուրդների հոգևոր սննդի աղբյուր են դարձել Մարքսի, Էնգելսի, Պլեխանովի, սոցիալիստական մտքի անցյալի ու ներկա բոլոր ականավոր ներկայացուցիչների երկերը։ Հիսուն տարիների ընթացքում երկու անգամ հրատարակվել են Սովետական մեծ և երկու անգամ փոքր հանրագիտարանները, գրական, փիլիսոփայական, պատմական, բժշկագիտական, տեխնիկական և գիտության մի շարք ճյուղերի հանրագիտարաններ, տարեգրքեր, տեղեկագրքեր, բառարաններ՝ աննախընթաց տիրաժներով։ Պարբերական մամուլի ու բազմալեզու գրականության ծավալով ու տիրաժով աշխարհում ՍՍՀՄ-ը վաղուց առաջին տեղն է գրավում։

Գիտության բոլոր ճյուղերի, գրականության, արվեստի, կերպարվեստի, համաշխարհային մտքի լավագույն երկերը ռուսերեն ու մայրենի լեզուներով դարձել են Հոկտեմբերի սերունդների անկապտելի սեփականությունը։

Ստեղծելով արվեստի ու գրականության կենսահաստատ իր ուղղությունը՝ սոցիալիստական ռեալիզմը, Հոկտեմբերյան հեղափոխության շնչով կյանքի կոչված սովետական երաժշտությունը, թատրոնը, կերպարվեստը, կինոն և պարարվեստը, գրականությունը, սովետական ժողովուրդը վաղուց ի վեր նվաճել է ողջ աշխարհի տառապող ու ստեղծագործող մարդկության խոր համակրանքը։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական մեծ ընտանիքում իսկական վերածնունդ և բուռն ծաղկում ապրեց հայ ժողովրդի կուլտուրան։ Ներկայումս մեր հանրապետությունում գործում են 1600 դպրոց, 53 տեխնիկում և ուսումնարան, 12 բուհ։ Համեմատությունը մեզ հնարավորություն կտա ավելի խոր բացահայտելու առկա պատկերը։ Եթե այժմ մեր հարևան Թուրքիայում յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 24 ուսանող, իսկ Պարսկաստանում՝ 11, ապա մեզ մոտ այն անցնում է 180 ուսանողից։ Յուրաքանչյուր տարի մեր հանրապետությունում լույս է ընծայվում ավելի քան 800 անուն գիրք՝ 4—5 միլիոն տիրաժով, իսկ Սովետական Հայաստանի գրքային



ֆոնդն այսօր գերազանցում է 1913 թվականի ցարական Ռուսաստանի գրքային ֆոնդը ամբողջությամբ վերցրած։ Եթե այս ամենին ավելացնենք նաև կուլտուր-լուսավորական հիմնարկների՝ ակումբների, գրադարանների, կուլտուրայի պալատների, կինոների, թատրոնների, ստեղծագործական միությունների և կուլտուրայի բազմաթիվ ու բազմապիսի այլ օջախների այն լայն ցանցը, որ այսօր տարածվել է մեր հանրապետությունում, ապա պատկերն ավելի լրիվ կլինի։ Սա կուլտուրայի ասպարեզում փոքրաթիվ, բայց տաղանդավոր հայ ժողովրդի այնպիսի առաջընթաց էր, որը երազել անգամ անհնար էր սոցիալական մեկ այլ կարգի պայմաններում։

Սոցիալիզմի ժամանակ կուլտուրաների համագործակցության հիանալի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ մեծ ազգի կուլտուրան ոչ միայն չի ճնշում, չի կլանում փոքր ազգերի կուլտուրան, այլ, ընդհակառակը, իր բարերար ներգործությամբ դրանք հարստացնում է նոր տրադիցիաներով ու գաղափարներով, առավել նպաստավոր պայմաններ է ստեղծում փոքր ազգերի համար՝ հաղորդակից դառնալու համաշխարհային քաղաքակրթությանը։ Ավելին, ՍՍՀՄ ժողովուրդների կուլտուրաների փոխազդեցությունը նշանակում է ոչ միայն մեկ ազգի կուլտուրայի բարերար ներգործություն փոքր ազգերի կուլտուրայի վրա, այլև այն, որ մեծ ազգի կուլտուրան նույնպես կրում է փոքր ազգերի կուլտուրայի դրական ներգործությունը, նրանցից վերցնում է այն ամեն նորն ու կատարյալը, ինչ ունեն նրանք։

Մեր ժամանակաշրջանի առանձնահատկություններից մեկն էլ հենց այն է, որ կուլտուրական հեղափոխության շնորհիվ անցյալի գիրկն է անցել փաստական հավասարություն ձեռք բերելու համար երկրի զարգացած ազգերի կողմից ետ մնացողներին միակողմանի օգնություն ցույց տալու անհրաժեշտությունը։ Այդպիսի հավասարություն ձեռք է բերվել, և այժմ Միության մեջ մտնող բոլոր ազգերն ու ազգությունները իրենց մեծ ու արժեքավոր ներդրումն են կատարում սոցիալիստական ինտերնացիոնալ կուլտուրայի ընդհանուր գանձարանը։

ՍՍՀՄ-ում կուլտուրական հեղափոխության գլխավոր նվաճումը ժողովրդական մասսաների հոգևոր կյանքի փարթամ ծաղկումն է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հիմքի վրա, նրանց գիտակցության արմատական վերափոխումը։ Հայտնի է, թե Լենինն ինչպիսի վիթխարի նշանակություն էր տալիս մասսաների գիտակցության վերափոխմանը, նրանց կոմունիստական դաստիարակությանը։ Նա միաժամանակ տեսնում էր այդ խնդրի լուծման մեծ դժվարությունները, որովհետև դա նշանակում էր արմատապես վերամշակել արյունալի, կեղտոտ, կողոպտչական, խանութպանական կապիտալիզմի կողմից դարերով այլասերված մարդկային նյութը, նշանակում էր տեղից շարժել չտեսնված ծանրության մի ապառաժ՝ հաղթահարել սեփական անշարժությունը, սանձարձակությունը, մանրբուրժուական էգոիզմը։

Կոմունիստական կուսակցության վարած իմաստուն քաղաքականության շնորհիվ, որի հիմնական օղակներից մեկն էլ կուլտուրական հեղափոխությունն էր, երկրում աճեց մարդկանց մի նոր սերունդ, որը դաստիարակված է կոմունիզմի իդեալներին անսահման նվիրվածության ոգով, համոզված է մեր մեծ գործի արդարությանը։ Կուլտուրական հեղափոխությունը մեծապես նպաստեց սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր ընդհանրության ձևավորմանը, որն ունի մեկ ընդհանուր աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը, մեկ միասնական նպատակ՝ կոմունիզմի կառուցումը։

## ՀՈՅԱԿԱՊ ԽՆԴԻՐՆԵՐ, ԼՈՒՍԱՎՈՐ ՀՈՐԻԶՈՆՆԵՐ

Գաղափարախոսության և կուլտուրայի բնագավառում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը դեռևս չի նշանակում, թե կուլտուրական հեղափոխությունը լիովին ավարտված է, թե նրա բոլոր խնդիրները լուծված են։ ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ «Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում տեղի ունեցող կուլտուրական զարգացումը կհանդիսանա կուլտուրական մեծ հեղափոխության եզրափակիչ էտապը։ Այդ էտապում ապահովվում է բոլոր անհրաժեշտ գաղափարական ու կուլտուրական պայմանների ստեղծումը կոմունիզմի հաղթանակի համար»։

Որո՞նք են կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի գլխավոր խնդիրները և դրանց լուծման անհրաժեշտ նախադրյալները։

Կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի գլխավոր խնդիրներից մեկը՝ բանվորների և գյուղացիների կուլտուր-տեխնիկական մակարդակի հետագա բարձրացումն է մինչև ինտելիգենցիայի մակարդակը, կրթության սիստեմի կատարելագործումը՝ արտադրողական աշխատանքը և ուսուցումը միավորելու նպատակով, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարումը։ Վերջին պրոբլեմը, որին ենթարկված են վերը նշված մյուս խնդիրները, չի կարող լուծվել միանգամից, ինքնահոսի կարգով։ Անհատի մեջ նիրհող մտավոր ու ֆիզիկական կարողությունները զարգացնելու և գործադրելու համար անհրաժեշտ է վերը նշված խնդիրների կենսագործման հետ մեկտեղ, մարդուն ազատել ոչ ստեղծագործական, մեխանիկական, ծանր աշխատանք կատարելու անհրաժեշտությունից, արդի տեխնիկայի և գիտության հիմքի վրա օբյեկտիվ նախադրյալներ ստեղծել անխուսափելի մեխանիկական աշխատանքը մինիմումի հասցնելու համար։ Ահա թե ինչու կուսակցությունը զարգացման արդի էտապում այնքան մեծ ուշադրություն է նվիրում արտադրության կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացմանը, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի լայն կիրառմանը, որպես աշխատանքի բնույթի փոփոխման, մտավոր և ֆիզիկական աշխատանքի մերձեցման նյութական հիմքի։

Արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը հաստատուն հիմքեր են ստեղծում մարդու մտավոր ու ֆիզիկական գործունեության շատ ու շատ տեսակներ վերածելու իսկական ստեղծագործության։ Իսկ դա մեզ ընդհուպ կմոտեցնի սոցիալական մի չափազանց կարևոր պրոբլեմի լուծմանը՝ բոլոր բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի համար ստեղծելու աշխատանքի, մտավոր և ֆիզիկական գործունեությունը ներդաշնակորեն զուգորդելու հավասար պայմաններ, հասարակության բոլոր անդամների համար ստեղծագործական աշխատանքի և կրթության հավասար հնարավորություններ։

Վերևում նշված խնդիրները հաջողությամբ կենսագործելու, ժողովրդի ստեղծագործական նախաձեռնությունը բազմակողմանիորեն բացահայտելու համար վիթխարի հնարավորություններ է ստեղծում ՍՍՀՄ-ում իրագործվող տնտեսական ռեֆորմը։ Ռեֆորմի հաջող իրագործումը կարևորագույն գործոն կլինի ոչ միայն երկրի տնտեսական զարգացման, այլև կուլտուրական հեղափոխության հետագա ծավալման համար։

Կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի արմատական պրոբ-



լեմներից մեկը գյուղի և քաղաքի միջև կուլտուր-տեխնիկական-կենցաղային տարբերությունների լիկվիդացումն է, կուլտուր-կենցաղային մակարդակի տեսակետից գյուղի և քաղաքի բնակչության միջև տարբերությունների հաղթահարումը։

Կոմունիստական կուսակցությունը հաջողությամբ կենսագործեց գյուղի կուլտուրական դարավոր հետամնացությունը հաղթահարելու մասին Լենինի պատգամը։ Սովետական գյուղացիությունն աշխատանքի պայմաններով, որակավորմամբ, կուլտուր-տեխնիկական մակարդակով մոտենում է բանվոր դասակարգին, իսկ գյուղատնտեսական աշխատանքն աստիճանաբար վեր է ածվում ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի։ Սակայն պետք է նշել, որ ընդհանուր առմամբ գյուղական ազգաբնակչության կուլտուր-տեխնիկական մակարդակը դեռևս զգալիորեն ետ է մնում քաղաքային բնակչության մակարդակից։ Գաղտնիք չէ, որ մեր գյուղը կուլտուր-լուսավորական հիմնարկների և մի շարք այլ բնագավառների գծով դեռևս բավականին ետ է մնում քաղաքից։

Ահա թե ինչու կուսակցությունը զարգացման արդի էտապում ծրագրային խնդիր է առաջադրել՝ վերափոխել գյուղերն ու շեները, դրանք դարձնել բարեկարգ բնակելի տներով, կոմունալ սպասարկմամբ, կենցաղային ձեռնարկություններով, կուլտուրական ու բժշկական հիմնարկներով քաղաքատիպ խոշորացված բնակավայրեր։ «Քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացումը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— կհանդիսանա կոմունիզմի կառուցման մեծագույն արդյունքներից մեկը»։

Կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի բարդ ու բազմակողմանի խնդիրների լուծման գործում բացառիկ մեծ է գիտության, արտադրության մեջ նրա նվաճումների ներդրման նշանակությունը, մասսաներին գիտական գիտելիքներով զինելը։ Սոցիալիզմի կառուցմամբ հեղափոխական փոփոխություններ կատարվեցին գիտության դերի ու նշանակության մեջ։ Սոցիալիզմը լայն հորիզոններ բացեց աշխատավորական մասսաներին գիտությանը հաղորդակից դարձնելու, նրանց գիտության նորագույն նվաճումներով զինելու համար։ Գիտության դերը բացառիկ մեծ է հատկապես այժմ, երբ աշխարհը կանգնած է գիտական ու տեխնիկական ամենախոր հեղաշրջման շեմին։ Մեր օրերում տեղի է ունենում գիտությունը անմիջական արտադրողական ուժի վերածվելու արագ պրոցես։ Գիտական հետազոտությունների բուռն զարգացումը արմատապես փոխում է աշխատանքի բնույթը, նպաստում մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մերձեցմանը, մարդուն տալիս էներգիայի վիթխարի ռեսուրսներ, նրան դարձնում բնության իսկական տիրակալը։ Գիտության յուրացումը մեծ չափերով ընդլայնում է մարդու կուլտուրական մտահորիզոնը, հարստացնում նրա հոգևոր աշխարհը, ամրապնդում գիտական աշխարհայացքը, նրա գիտակցության մեջ տեղ չի թողնում նախապաշարմունքների ու սնոտիապաշտության համար։

Զարգացման արդի էտապում կուսակցության և սովետական ամբողջ ժողովրդի ուշադրության կենտրոնում են գտնվում մարդկանց կոմունիստական գիտակցության դաստիարակման, մարդկային անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման խնդիրները, խնդիրներ, որոնք չի դրել և չէր էլ կարող դնել սոցիալական մեկ այլ հասարակարգ։ Սա իհարկե չափազանց բարդ, դժվարին, դիալեկտիկական բազմակողմանի պրոցես է, որը և կազմում է

կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի առանցքը:

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ անհատի իսկական ազատությունը նախատեսում է հեղափոխություն ոչ միայն հասարակության մեջ, ամբողջությամբ վերցրած, այլև յուրաքանչյուր անհատի ներքին աշխարհում, նրա պատկերացումներում, հայացքներում, բարոյական ըմբռնումներում, այլ խոսքով՝ նրա աշխարհըմբռնողության մեջ: Այս կապակցությամբ կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապում մեզ մոտ նկատելի են երկու միմյանց հետ սերտորեն կապված ու փոխպայմանավորված պրոցեսներ: Մի կողմից՝ տեղի է ունենում սոցիալիստական գաղափարախոսության և կուլտուրայի նվաճումների լայն տարածում, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների, հին հոգեբանության ու բարոյականության մնացուկների հաղթահարում: Սա, ըստ էության, սոցիալիզմի ժամանակ հասարակական գիտակցության զարգացման մեջ անհամաչափության հաղթահարման պրոցես է, հաստատված սոցիալիստական գիտակցականության և կապիտալիզմի դեռևս կենսունակ մնացուկների միջև հակասության հաղթահարման պրոցես: Մյուս կողմից՝ տեղի է ունենում մարդկանց հոգևոր ու բարոյական կերպարի կոմունիստական գծերի ձևավորման, սոցիալիստական գիտակցականության՝ կոմունիստականի վերաճման հարաճուն պրոցես:

ՍՄԿԿ ծրագիրը ամենայն որոշակիությամբ նշել է այն ուղիները, որոնցով ընթանում է կոմունիստական գիտակցականության զարգացման ու արմատավորման պրոցեսը: Դա ամենից առաջ գիտական աշխարհայացքի ձևավորումն է, որի հիմքը մարքսիզմ-լենինիզմն է: Այնուհետև, դա աշխատանքային դաստիարակությունն է, հասարակության բոլոր անդամների մոտ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի արմատավորումը: Կոմունիստական գիտակցականության արմատավորման գլխավոր ուղիներից մեկն էլ կոմունիստական բարոյականության հաստատումն է, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության զարգացումը: Վերջապես դա մարդկային անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումն է, անհատ, որն իր մեջ մարմնավորում է հոգևոր հարստությունը, բարոյական և ֆիզիկական կատարելությունը:

Կուլտուրական հեղափոխության եզրափակիչ էտապի առանցքային խնդիրներից մեկն էլ ՍՍՀՄ ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի հետագա բազմակողմանի ծաղկումն է: ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ վճռական նշանակություն տալով ՍՍՀՄ ժողովուրդների կուլտուրաների սոցիալիստական բովանդակության զարգացմանը, կուսակցությունը կնպաստի նրանց հետագա փոխհարստացմանն ու մերձեցմանը, նրանց ինտերնացիոնալ հիմքի ամրապնդմանը և դրանով իսկ կոմունիստական հասարակարգի ապագա համամարդկային միասնական կուլտուրայի ձևավորմանը:

Ազգային կուլտուրաների հետագա մերձեցումն ու փոխհարստացումը, սոցիալիստական կուլտուրայի ազգային և համամարդկային ձևերի փոխներթափանցումը ոչ միայն չեն նեղացնում ու սահմանափակում ազգային կուլտուրաներն ու լեզուները, այլ, ընդհակառակը, նրանց նվաճումները դարձնում են ամբողջ սովետական ժողովրդի սեփականությունը, նրանց բերում են համաշխարհային ճանաչում: Ավելին, դրանով հաղթահարվում են ազգային մեկուսացվածության ու սահմանափակության նախկին մնացուկները, ազգային էգոիզմը: Ահա թե ինչու կուսակցությունը պահանջում է վճռական պայքար մղել մեզ մոտ դեռևս տեղ գտած երկու ոչ ճիշտ մտայնության դեմ:



Դրանցից մեկն իր արտահայտությունն է գտնում այն պարզ փաստի թյուրըմբռնման մեջ, որ ազգային կուլտուրաների մերձեցումը կարիք չունի արհեստական, վարչարարական միջոցների կիրառման, որ բնական, օրինաչափ ընթացքից ամեն մի վաղանցում կարող է միայն վնասել գործին:

Մյուս սխալ մտայնությունը կապված է այն անհիմն վախի հետ, թե կուլտուրաների փոխներթափանցումը, նրանց մերձեցումը կարող է հասցնել ազգային կուլտուրաների ինքնուրույնության, ազգային լեզուների պրակտիկ նշանակության կորստի:

Նման տեսակետները ոչ մի կապ չունեն մարքսիզմ-լենինիզմի հետ և դրանց հեղինակները չեն ըմբռնում կոմունիստական կուսակցության վարած ազգային քաղաքականության էությունը, խորամուխ չեն լինում զարգացման փոփոխված պայմանների մեջ:

Գիտության, տեխնիկայի, կապի ու հաղորդակցության միջոցների բուռն զարգացման մեր դարում, երբ ամեն օր, ամեն ժամ տեղի է ունենում ազգերի կենդանի շփում բառիս բուն իմաստով, ազգը մեկուսացնել մյուս ժողովուրդներից, նրանց հետ հաղորդակցվելու, մերձենալու, կուլտուրական արժեքներ փոխանակելու, ստեղծված լավն ու արժեքավորը վերցնելու հնարավորությունից, կնշանակի նրան դատապարտել հետամնացության, նրան հեռու պահել համաշխարհային քաղաքակրթության նվաճումներից:

Սոցիալիզմի պայմաններում ազգային կուլտուրաների մերձեցումն անհաղթահարելի առաջընթաց շարժում է, որը հենված է հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների վրա:

***

Դեռևս հոկտեմբերի արշալույսին Վ. Ի. Լենինը կանխատեսում էր, թե ինչպիսի արձագանք կգտնի մեր հեղափոխությունը համայն աշխարհում: Այսօր մենք ականատեսն ենք այն մեծ իրողության, երբ սոցիալիստական կուլտուրայի պատմական նվաճումները հեղափոխականացնող ներգործություն են ունենում բովանդակ մարդկության հոգևոր կյանքի վրա: Մեր ժամանակաշրջանի հրաշալի գծերից մեկն այն է, որ ազգային կուլտուրաների ծաղկման ու նրանց մերձեցման տենդենցները հատուկ են ոչ միայն Սովետական Միության, այլև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ մտնող բոլոր ազգերին: Միջազգային մասշտաբով ազգային կուլտուրաների մերձեցումն ու փոխհարստացումը իրենով նշանավորում է միասնական համամարդկային կուլտուրայի ձևավորման համաշխարհային մեծ պրոցեսի սկիզբը:

ՍՍՀՄ-ում կուլտուրական մեծ հեղափոխությունը համաշխարհային հասարակայնությանը ցույց տվեց, թե ինչի են ընդունակ ճնշումից ու շահագործումից ազատագրված, եղբայրական անխզելի կապերով միմյանց հետ կապված ժողովուրդները, որոնք պատմական ոչ-վաղ անցյալում խարխափում էին խավարի ու տգիտության մեջ:

Հիսնամյա մեր մեծ հայրենիքն ապրում է իր ուժերի լիակատար ծաղկման շրջանը, իր իսկական երիտասարդությունը: Զինված արդիականության ամենաառաջավոր գաղափարներով՝ Հոկտեմբերի գաղափարներով, սովետական ժողովուրդն իր փորձված առաջնորդ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ վստահորեն գնում է դեպի մարդկության գալիքը, որը նոր հաղթանակներ կբերի Մարքսի, Էնգելսի, Լենինի անմահ ուսմունքին:



ՄԱՌԼԵՆ ԱՆՏՈՆՅԱՆ

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՍՍԱՆԵՐԻ ԳԻՏԱԿՑԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ ժողովրդական մասսաները միշտ, պատմության բոլոր էտապներում հանդիսացել են հասարակության գլխավոր արտադրողական ուժը, նրա պատմության կերտողը։ Աշխատավոր մարդը, սակայն, ոչ միայն կերտում է պատմությունը, այլև հաստատում է ինքն իրեն որպես պատմության սուբյեկտի, որպես անհատի։

Էնգելսը, նշելով գիտակցականության հարաճուն դերի ընդհանուր տենդենցը, միաժամանակ ցույց էր տալիս, որ մինչսոցիալիստական ֆորմացիաներում «գոյություն ունի հսկայական անհամապատասխանություն առաջադրված նպատակների ու ձեռք բերած արդյունքների միջև, որ շարունակում են գերակշռել չնախատեսված հետևանքները, որ չվերահսկվող ուժերն ավելի հզոր են, քան պլանաչափորեն շարժման մեջ դրվող ուժերը» (Բնության դիալեկտիկա, 1957, էջ 2)։

Այստեղից հասկանալի է, որ մարդկանց գիտակցական ստեղծագործությունը, նրանց սոցիալական ակտիվությունը պատմական բոլոր աստիճաններում չի կարող միատեսակ լինել։ Առավել բարձր, առաջադեմ հասարակարգի անցնելիս մասսաների ստեղծագործական ակտիվությունն ավելի խոր ազդեցություն է գործում հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքի վրա։ Այստեղ գոյություն ունի դիալեկտիկական փոխադարձ կապ արտադրության եղանակի և մարդկանց սոցիալական ակտիվության, նրանց գիտակցականության միջև։ Որքան առաջադեմ են հասարակարգը, հասարակական իդեալները, որոնց համար պայքարում են մարդիկ, այնքան վերջին հաշվով բարձր է մասսաների ակտիվությունը, նրանց գիտակցականությունը պատմության պրոցեսում։

Ի տարբերություն կապիտալիզմի, մեծ Հոկտեմբերը ստեղծելով առավել առաջադեմ հասարակական-քաղաքական կարգ, մասսաների սոցիալական ստեղծագործական ակտիվության նոր դարաշրջան բացեց։



Պատմությունը չգիտե ժողովրդի ավելի մեծ սխրագործություն, քան կոմունիզմի կառուցման համար սովետական մարդկանց պայքարի կեսդարյա ուղին։ Այդ ուղին ցույց տվեց, որ սոցիալիզմը, կոմունիզմը ժողովրդական մասսաների գիտակցական ստեղծագործությունն է։ Համաշխարհային մասշտաբով մեր դարաշրջանը խիստ ընդլայնեց ժողովրդական մասսաների հնարավորությունները պատմական ստեղծագործության ոլորտներում։ Ընդարձակվել են ազգային անկախության և սոցիալական առաջադիմության համար աշխատավորների ծավալուն, նպատակասլաց ելույթների աշխարհագրական սահմանները։ Գիտակցական ստեղծագործությանը հաղորդակից են դարձել նորանոր ժողովուրդներ, արագացել են հասարակական առաջադիմության տեմպերը։ Այդ բոլորի հիմքը մեծ Հոկտեմբերի ստեղծարար ուժն է։

## 1.

Մեր երկրի ժողովրդական մասսաների գիտակցական ստեղծագործությունը, սոցիալական ակտիվությունն անցել են մի շարք էտապներ, որոնցից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկություններն ու կոնկրետ բովանդակությունը։

Առաջին էտապը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն էր։ Դրա առանձնահատկությունն այն էր, որ մասսաները լենինյան կուսակցության ղեկավարությամբ պայքարում էին սոցիալիզմի իդեալների համար, պրակտիկայում դեռ չիմանալով ու չզգալով դրանց առավելությունները։ Չնայած դրան, բանվոր դասակարգը և նրա դաշնակից աշխատավոր գյուղացիությունը Հոկտեմբերի օրերին դրսևորեցին բարձր գիտակցականություն, կազմակերպվածություն, նվիրվածություն սոցիալիզմին։

Պատմությունը ցույց է տալիս, որ ոչ մի սոցիալական հեղափոխություն չէր կարող իրագործվել առանց ժողովրդական լայն մասսաների ակտիվ և գիտակցական մասնակցության։ Դա առավել ևս վերաբերում է սոցիալիստական հեղափոխությանը, որը հենց այդ մասսաների արմատական և կենսական շահերն է արտացոլում։ Կ. Մարքսը իր Փիլիսոփայության աղքատությունը աշխատությունում սոցիալիստական հեղափոխությունը բնութագրում է որպես բանվոր դասակարգի «մեծ պատմական շարժում», որպես «մասսաների պրակտիկ գործունեություն»։

Վ. Ի. Լենինը, շարունակելով և զարգացնելով Մարքսի այդ մտքերը, նշում էր, որ հեղափոխությունը ճնշված և հարստահարված դասակարգերի տոնն է, որ ժողովրդական մասսան երբեիցե հանդես չի գալիս որպես նոր կյանքի գիտակցական կերտող, ինչպես դա կատարվում է հեղափոխության ժամանակ։ Վ. Ի. Լենինը գրել է, որ «հատկապես հեղափոխական շրջաններն են աչքի ընկնում պատմական ստեղծագործության ավելի մեծ լայնությամբ... ավելի մեծ պլանաչափությամբ, ավելի մեծ սիստեմատիկությամբ, ավելի մեծ հանդգնությամբ ու պայծառությամբ, համեմատած քաղքենիական, կադետական, ռեֆորմիստական պրոգրեսի շրջանների հետ» (Երկեր, հատ. 10, էջ 312)։

Ահա թե ինչու մեր կուսակցությունը միշտ ղեկավարվում է լենինյան այն դրույթով, որ միայն նա կհաղթի և իշխանությունը կպահի իր ձեռքում, ով հավատում է ժողովրդին, ով սուզվում է կենդանի ժողովրդական ստեղծագործության աղբյուրի մեջ և ղեկավարում նրա պայքարը։ Դրա լավագույն ապացույցներից մեկն է մեծ Հոկտեմբերը։

Ժողովրդական մասսաների պատմության մեջ չտեսնված սոցիալական գիտակցական ակտիվությունը Հոկտեմբերի օրերին պատահական չէ, այլ օրինաչափորեն պայմանավորված է սոցիալիստական հեղափոխության արմատական առանձնահատկություններով։ Նախ, մարդկային ամբողջ պատմության ընթացքում առաջին անգամ միայն սոցիալիստական հեղափոխության մեջ է, որ աշխատավոր մասսաները հանդես են գալիս որպես նոր, սոցիալիստական արտադրահարաբերությունների գիտակից արտահայտիչները։

Անցյալում և ոչ մի սոցիալական հեղափոխություն իր առջև խնդիր չէր դնում ոչնչացնել արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։ Այդպիսի խնդիր իր առջև դնում և լուծում է միայն սոցիալիստական հեղափոխությունը։ Հենց այդտեղ է երևում սոցիալիստական հեղափոխության խորությունը, հեղափոխություն, որն իր շուրջն է համախմբում աշխատավոր մասսաների լայն խավերը։ Պրակտիկայում հաստատվեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի այն հանճարեղ կանխատեսությունը, որ պատմական գործողության հիմնավորվածության հետ միասին, կհզորանա նաև աշխատավորական այն զանգվածը, որը պետք է կատարի այդ պատմական գործողությունը։ Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ այս խոսքերի մեջ արտահայտված է պատմական մատերիալիզմի ամենախոր և ամենակարևոր դրույթներից մեկը, որ պատմության իրական և իսկական կերտողը ժողովուրդն է, աշխատավոր մասսաները։

Ի տարբերություն բուրժուական հեղափոխության, սոցիալիստական հեղափոխության առանձնահատկություններից մեկն այն է, որ այն բանվոր դասակարգի շուրջն է համախմբում բազմամիլիոն աշխատավոր մասսաներ՝ սոցիալիզմ կառուցելու համար։ Այդ իմաստով Հոկտեմբերյան հեղափոխությունը համաշխարհային պատմության մեջ ամենախոր հեղաշրջումն է։ Հենց դա նշանակում է, որ սոցիալիստական հեղափոխության շնորհիվ նոր կյանքի կերտման համար պատմական ասպարեզ են դուրս գալիս ժողովրդական լայն զանգվածները։

## 2.

Վ. Ի. Լենինը շեշտում է, որ հենց 1917 թվականի Հոկտեմբերից սկսվեց մարդկային պատմության մեջ մի նոր դարաշրջան, ժողովրդական մասսաների ինքնուրույն գիտակցական ստեղծագործական դարաշրջանը։ Դա մեր ժողովրդի գիտակցական ստեղծագործության երկրորդ էտապն է՝ սոցիալիզմի կառուցման էտապը։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ նախկինում, երբ ժողովրդական մասսաները տիրող դասակարգերի կողմից հեռու էին պահվում քաղաքական, կուլտուրական կյանքից, պատմությունը կարող էր միայն սողալ սոսկալի դանդաղկոտությամբ։ Իսկ այժմ, Հոկտեմբերից հետո, երբ միլիոնավոր մասսաներ ձեռնամուխ են եղել գիտակցորեն նոր աշխարհ կառուցելուն, հասարակությունը, նրա քաղաքական, տնտեսական, սոցիալական, կուլտուրական և գիտա-տեխնիկական բնագավառները սկսել են զարգանալ աննախընթաց տեմպերով։

Հասարակության պատմության այդպիսի արմատական շրջադարձի պատճառը սոցիալիստական սիստեմի առավելություններն են, հատկապես սոցիալիստական սեփականության ձևը։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, որը տիրապետում է բոլոր անտագոնիստական ֆորմացիաներում, անջատում է մարդկանց միմյանցից, հասարակությունը բաժանում է հակադիր դասակարգերի, անհատներին հակադրում է միմյանց, ստի-



պելով նրանց մտածել միայն իրենց սեփական շահերի մասին։ Այս պայմաններում մարդիկ արտադրում են նյութական բարիքներ, կերտում պատմությունը, չունենալով ընդհանուր նպատակ և ձգտումներ։ Ավելին, մասնավոր սեփականությունը զրկում է մարդկանց իրենց իսկ արտադրական գործունեության հասարակական հետևանքների նախատեսման հնարավորությունից։

Բոլորովին այլ սոցիալական հետևանքների է հանգեցնում սոցիալիստական սեփականությունը։ Այդ մասին իր ժամանակ Էնգելսը գրել է. «Հասարակական արտադրության միմիայն գիտակցական կազմակերպումը՝ պլանաչափ արտադրությամբ ու պլանաչափ բաշխմամբ՝ կարող է մարդկանց բարձրացնել այլ կենդանիների նկատմամբ հասարակական տեսակետից ճիշտ այնպես, ինչպես որ սպեցիֆիկ բիոլոգիական տեսակետից նրանց բարձրացրեց արտադրությունն առհասարակ։ Պատմական զարգացումն այդպիսի կազմակերպումը դարձնում է օրեցօր ավելի ու ավելի անհրաժեշտ և օրեցօր ավելի ու ավելի հնարավոր։ Դրանից կսկսի թվարկությունը պատմական նոր դարաշրջանի...» (Բնության դիալեկտիկա, էջ 22)։ Էնգելսի այս խոսքերը լիովին արդարացան մեծ Հոկտեմբերից հետո մեր երկրում։ Սոցիալիզմը հանդիսացավ մի այնպիսի հասարակարգ, որն ստեղծվում է գիտակցականորեն, կազմակերպված, պլանաչափ։ Հասարակական կյանքի բոլոր կողմերի այդպիսի գիտակցական կազմակերպումը հիմնականում վերջ է դնում հասարակության զարգացման տարերայնությանը։

Պարզ է, որ այդ խնդիրը միանգամից չի լուծվել մեր երկրում։ Այն լուծվել է սոցիալիզմի համար մղվող երկար տարիների պայքարով։ Լենինը, խոսելով նոր հասարակական հարաբերությունների ձևավորման համար մղվող պայքարի մասին, գրել է, որ «հենց այդ պայքարը սոցիալիստական գիտակցականության համաշխարհային պատմական նշանակություն ունեցող մեծագույն պայքարն է ընդդեմ բուրժուական-անարխիստական տարերայնության» (Երկեր, հատ. 27, էջ 303)։

Սոցիալիզմի համար մղվող պայքարում մասսաները համոզվում էին, որ նրանք աշխատում են իրենց համար, իրենց հասարակության համար։ Դրանում էր ամենից առաջ արտահայտվում մարդկանց նոր գիտակցությունը, նոր վերաբերմունքը աշխատանքի, հասարակության, իրենց պարտքի նկատմամբ։ Այդ նոր գիտակցությունը ծնում է մասսաների ակտիվության բազմապիսի ձևեր։ Դրանց թվին են պատկանում, օրինակ, առաջին կոմունիստական շաբաթօրյակները (1919 թ.), հարվածային բրիգադները (1929 թ.), արտադրության նորարարների մասսայական շարժումը (1935 թ.), կոմունիստական աշխատանքի շարժումը մեր օրերում և այլն, և այլն։

Եթե մի հետադարձ հայացք գցենք առաջին հնգամյակների վրա, ապա հեշտությամբ կարող ենք համոզվել այն բանում, որ մեր կուսակցությունը, սոցիալիստական շինարարության այս կամ այն հարցը լուծելիս, հենվում էր սովետական մարդկանց սոցիալական ակտիվության, ստեղծագործական նախաձեռնության, նրանց էնտուզիազմի վրա։ Սովետական ժողովուրդն առաջին հնգամյակների տարիներին դրսևորեց աշխատանքային և քաղաքական բացառիկ ակտիվություն։ Հենց այդ հանգամանքը վճռական նշանակություն ունեցավ այնպիսի խոշոր սոցիալ-տնտեսական խնդիրներ լուծելու համար, ինչպիսիք են երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, Սովետական Միությունը հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային երկիր դարձնելը։

Անցյալում կեղեքվող ու ճնշված ազգերը ձեռք բերին իրենց պետականությունը, դարձան զարգացած ինդուստրիալ-կոլտնտեսային հանրապետություններ։ Այդպիսիների թվին է պատկանում Սովետական Հայաստանը, որն անցյալում չունենալով արդյունաբերություն, սովետական կարգերի շնորհիվ դարձել է առաջադեմ արդյունաբերություն ունեցող երկիր, որի արտադրանքի մի մասը ուղարկվում է աշխարհի 70 երկրներ։

Սոցիալիզմի կառուցման փորձը համոզիչ կերպով հաստատեց Լենինի դրույթն այն մասին, որ «Մասսաների կենդանի ստեղծագործությունը—ահա նոր հասարակության հիմնական գործոնը... սոցիալիզմը չի ստեղծվում վերևից տրված ցուցումներով։ Կազյոննի-բյուրոկրատական ավտոմատիզմը նրա ոգուն խորթ է. կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է» (Երկեր, հատ. 26, էջ 343)։

Ի՞նչ է նշանակում լենինյան դրույթն այն մասին, թե սոցիալիզմը կառուցվում է գիտակցորեն, և ոչ թե տարերայնորեն։ Սա նշանակու՞մ է արդյոք, որ սոցիալիզմի ժամանակ (և կոմունիզմի) տարերայնությունը բոլորովին վերանում է[1]։

Նախ, Լենինի դրույթը նշանակում է, որ հասարակությունը ընդհանուր առմամբ իր գործունեության մեջ ղեկավարվում է միասնական գիտակցված նպատակով։ Մեր ժամանակ այդպիսի նպատակ է կոմունիզմի կառուցումը, որը շարադրված է կուսակցության ծրագրում։

Երկրորդ, դա նշանակում է, որ նոր կյանքի կառուցման ընդհանուր ծրագիրը կոնկրետացվում է ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ հանրապետությունների, հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների պլաններում։ Այդ իսկ պատճառով անգամ այն մարդիկ, որոնց համար կոմունիզմի կառուցումը դեռևս չի դարձել անձնական անմիջական նպատակ, աշխատելով գործարաններում, կոլտնտեսային դաշտերում, դրանով իսկ մասնակցում են կոմունիզմի մարմնացմանը, ենթարկվելով այն ընդհանուր գիտակցված նպատակին։

Ի վերջո, սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման պրոցեսի գիտական բնույթը դրսևորվում է նրանում, որ սովետական մարդկանց զգալի մասի համար նոր հասարակարգի կառուցումը դարձել է անձնական նպատակ։ Հենց դրա համար նրանք իրենց գործունեության յուրաքանչյուր քայլը ենթարկում են կոմունիզմի իդեալների իրականացմանը։ Սոցիալիստական երկրում աշխատավոր մարդն իրեն զգում է ոչ միայն որպես տեր գործարանում, կոլտնտեսությունում, սովխոզում, այլև որպես, Լենինի խոսքերով ասած, երկրի ներկայացուցիչ, որն իրեն պատասխանատու է զգում։

Այնուհետև Լենինը շեշտում է, որ միայն սոցիալիզմն աշխատավորների մեծ մասին հնարավորություն տվեց դրսևորելու իրեն, ծավալելու իր ունակությունները, հայտաբերելու տաղանդները, որոնք ժողովրդի մեջ անսպառ են և որոնց կապիտալիզմը ճզմել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով։ Մասսաների գիտակցական ստեղծագործական ակտիվությունը վճռական դեր է խաղում կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում։ Խոսելով նոր կյանքի կառուցման գիտակցական բնույթի մասին, հարկավոր է նկատի ունենալ, որ դա չի նշանակում, թե հասարա-

[1] Այդ հարցին պատասխանելիս մենք օգտվել ենք Վ. Ի. Պրիպիսնովի գրքից «Проблемы субъективного фактора в историческом материализме» Душанбе, 1966.



կության յուրաքանչյուր անդամ հասկանում է զարգացման օրինաչափությունները, անձամբ գիտակցաբար է կառուցում կոմունիստական հասարակարգը։ Եթե հասարակության բոլոր անդամներն այդպիսի գիտակցություն ունենային, ապա կուսակցությունը նոր մարդու, կոմունիզմ կառուցողի ձևավորման, նրա գիտակցության բարձրացման հարցն այնպիսի սրությամբ չէր դնի, ինչպես այն դրված է այժմ։ «Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում,—այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագ և հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները» (ՍՄԿԿ Ծրագիրը, էջ 140)։ Իհարկե, սոցիալիզմի օրոք, ինչպես կանխատեսում էր Էնգելսը, մարդկանց շրջապատող և մինչև այդ նրանց վրա իշխող կենսական պայմաններն են մարդկանց իշխանության և վերահսկողության տակ, որոնք առաջին անգամ դառնում են բնության իսկական և գիտակցական իշխողներն այն չափով, որչափով նրանք իրենց սեփական հասարակական հարաբերությունների տերն են դառնում (տե՛ս «Անտի Դյուրինգ», 1940, էջ 384)։

Այդ հրամայական փոփոխությունը, սակայն, չի նշանակում, թե սոցիալիստական հասարակությունում չկան տարերայնության էլեմենտներ։ Այդպիսիք կան, և դրանցից մի քանիսը կմնան նաև լիակատար կոմունիզմի օրոք։ Ընդ որում, պետք է շեշտել, որ տարերայնություն ասելով մենք չպետք է միշտ հասկանանք ինչ-որ անախորժ, միանգամայն անընդունելի, ոչնչացման ենթակա երևույթ։ Սոցիալիստական հասարակարգում գոյություն ունեն տարերայնության էլեմենտներ, որոնք վաղ թե ուշ անխուսափելիորեն գիտակցվում են հասարակության կողմից և հնարավորության սահմաններում ենթարկվում են պլանային սկզբունքին։ Որքան մարդիկ ավելի խոր են ճանաչում և գիտակցաբար օգտագործում սոցիալական օրենքները, մասնավորապես տնտեսական օրենքները, այնքան ավելի քիչ սխալներ են թույլ տալիս նրանք էկոնոմիկայի ղեկավարման գործում, հետևաբար, որքան քիչ են տարերայնության երևույթների դրսևորումները, այնքան ավելի քիչ է այդ տարրերի բացասական ազդեցությունը հասարակության կյանքի վրա։

Սակայն, չի կարելի կարծել, թե երբևէ կգա մի այնպիսի ժամանակ, երբ հասարակական զարգացման մեջ իսպառ և վերջնականապես կվերանա տարերայնությունը և կսկսվի համապարփակ գիտակցության դարաշրջանը։ Այդ բանը չի կարող լինել այն պատճառով, որ մարդիկ երբեք չեն կարողանա լրիվ, վերջնականապես ու բացարձակապես ճանաչել ամեն բան աշխարհում, դրանք ենթարկելով իրենց շահերին։ Մարդիկ շարունակ մոտենում են դրան։ Այդ պրոցեսը հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի աճման պրոցես է, ինչպես բնության ու հասարակության երևույթների ու օրինաչափությունների մասին մարդկային գիտելիքների խորացման, այնպես էլ ժողովրդական մասսաների՝ հասարակական առաջընթացն արագացնող բազմակողմանի գործունեության արդյունավետության բարձրացման պրոցես։ Դրա հետ մեկտեղ այդ պրոցեսը հասարակական կյանքի բոլոր կողմերի գիտական ղեկավարման մակարդակի ըստ ամենայնի բարձրացման պրոցես է։

## 3.

Սովետական ժողովրդի գիտակցական ստեղծագործության, ակտիվության երրորդ, ավելի բարձր էտապը համընկնում է սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանի հետ։ Այդ մի ժամանակաշրջան է, երբ կոմունիզմի կառուցման գիտակցական հիմնավորված գործունեության դերը ըստ ամենայնի աճում է։

Մեր կուսակցության ծրագրում շեշտվում է, որ սոցիալիզմի կառուցման պրոցեսում մասսաների գիտակցական, ստեղծագործական ակտիվության աճը սոցիալիզմի դարաշրջանի օրենքն է։ Այդ օրենքի գործողությունը վկայում է, որ կոմունիստական ֆորմացիայի հաստատման պրոցեսում անընդհատ աճում են մարդկանց սոցիալական ակտիվության դերն ու նշանակությունը։ Իհարկե, այդ աճը չի նշանակում թե իբր սոցիալիզմի օրոք կարելի է հաշվի չառնել օբյեկտիվ պայմաններն ու օրինաչափությունները, կարելի է գործել ըստ քմահաճույքների։ Ինչպես միշտ, այնպես էլ սոցիալիզմի օրոք, չի կարելի հաշվի չառնել օբյեկտիվ պայմաններն ու օրինաչափությունները, առավել ևս չի կարելի սոցիալական, քաղաքական, տնտեսական հարցերը լուծել ըստ սուբյեկտիվ հայեցողության։

Ամենից առաջ մի քանի խոսք այն մասին, թե ի՞նչ է նշանակում ժողովրդական մասսաների սոցիալական ակտիվության դերի հետագա աճը սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում։

Դրա էությունը կայանում է նրանում, որ աճում է օբյեկտիվ պրոցեսների միջնորդավորվածությունը սոցիալական ակտիվությամբ, ուժեղանում է պատմության օբյեկտիվ ընթացքի վրա մասսաների, կուսակցության, առանձին անհատների ակտիվ ներգործությունը, ուժեղանում է հասարակական զարգացման տեմպերի կախվածությունը մասսաների մեջ նոր գաղափարների տարածվածության, այդ մասսաների կազմակերպվածության աստիճանից։ Մարդկանց սոցիալական ակտիվության դերի հետագա աճը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում դրսևորվում է կոմունիստական կուսակցության, պետության գործունեության, մասսաների ստեղծագործության, հասարակական կազմակերպությունների դերի աճման մեջ։

Ժողովրդական մասսաների սոցիալական ակտիվության հետագա աճման օրենքը ոչ մի առնչություն չունի սուբյեկտիվիզմի հետ, հասարակության զարգացման մեջ օբյեկտիվ պայմանների և օրինաչափությունների որոշիչ դերի թերագնահատման հետ։ Ընդհակառակը, հասարակական օբյեկտիվ պրոցեսների վրա ժողովրդի սոցիալական ակտիվության ազդեցության խորությունն ու աստիճանը կախված են օբյեկտիվ օրինաչափությունների ճանաչման և օգտագործման խորությունից։

Այժմ տեսնենք, թե որոնք են ժողովրդական մասսաների սոցիալական ակտիվության աճման շարժառիթները, պատճառները սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում։ Այդպիսի պատճառների թիվը շատ է։ Մենք կանգ կառնենք միայն մի քանիսի վրա։

Ամենից առաջ պետք է շեշտել, որ սոցիալիստական կարգերի հաստատման հետ մեկտեղ արմատապես փոխվեց հասարակության զարգացման պրոցեսի բնույթը։ Սոցիալիզմի ժամանակ ևս իր էությամբ մնալով օբյեկտիվ, այդ պրոցեսը ընդունում է ավելի ու ավելի գիտակցական և պլանային բնույթ։ Հասարակական պրոցեսների տարերայնությունը, որը բնորոշ է նախորդ ֆոր-



մացիաներին, իր տեղը զիջում է գիտակցական զարգացմանը։ Սոցիալիստական արտադրաեղանակի բնույթն այնպիսին է, որ պահանջում է ամբողջ հասարակության, յուրաքանչյուր կոլեկտիվի ու անհատի ակտիվ, գիտակցական ու կազմակերպված գործունեություն։ Կոմունիզմը ժողովրդական լայն մասսաների ակտիվ, գիտակցական ու կազմակերպված գործունեությունն է։ Այդ նշանակում է, որ ներկայումս հասարակության զարգացումը առավել մեծ չափով է կախված պատմության սուբյեկտից՝ մարդուց, նրա ակտիվության, գիտակցության և կազմակերպվածության մակարդակից, կոմունիստական իդեալներին նրա նվիրվածությունից։

Այնուհետև, մասսաների սոցիալական ակտիվության աճը բացատրվում է նրանով, որ կոմունիստական ֆորմացիայի ձևավորման, հատկապես կոմունիզմի բարձր փուլին անցնելու ժամանակ անհամեմատ աճում են հասարակության զարգացման խնդիրներն ու դրանց բարդությունը, խնդիրներ, որոնք, մի կողմից, քաղաքական և կազմակերպական ղեկավարման ավելի բարձր մակարդակ են պահանջում, իսկ մյուս կողմից՝ հասարակության յուրաքանչյուր անդամից պահանջում են բարձր ակտիվություն բոլոր բնագավառներում։

Մեր ժամանակաշրջանը ժողովրդի ստեղծագործության մեջ նոր, բնորոշ գծեր երևան բերեց։ Առաջին հերթին մեծացել է հասարակական-քաղաքական, տնտեսական ու կուլտուրական պրոբլեմների առավել ճիշտ լուծում գտնելու՝ ժողովրդի ձգտումը։ Այս ևս վկայում է հասարակության կյանքում ժողովրդական մասսաների ակտիվության դերի ու նշանակության օրինաչափ աճը։

Վերջապես, ի տարբերություն բոլոր նախորդ հասարակական ֆորմացիաների, նոր հասարակարգում ժողովրդական մասսաների և օբյեկտիվ պայմանների միջև չկա անտագոնիզմ, կոնֆլիկտ։ Պատմությունը ցույց է տվել, որ ժողովուրդը կարող է մաքսիմում էֆեկտիվ ներգործություն ունենալ հասարակական օբյեկտիվ պրոցեսների վրա այն դեպքում միայն, երբ նրա և այդ օբյեկտիվ պայմանների միջև չկա անտագոնիզմ։ Դա նշանակում է, որ նյութական և հոգևոր արտադրությունը ենթարկված է ժողովրդական մասսաների շահերին, որը մեծ չափով բարձրացնում է այդ մասսաների դերը պատմության մեջ։

Ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության անընդհատ աճի աղբյուրներից մեկը նրանց հասարակական, խմբային ու անհատական նյութական շահագրգռվածությունն է աշխատանքի արդյունքների նկատմամբ։ Որքան ակտիվ է յուրաքանչյուր անհատը, այնքան արագ է բարձրանում նրա նյութական բարեկեցությունը։ Սակայն յուրաքանչյուրի բարեկեցությունը կախված է ոչ միայն նրա, այդ անհատի աշխատանքի հաջողություններից, այլև տվյալ կոլեկտիվի հաջողություններից, ամբողջ արտադրությունից, հասարակության ակտիվությունից ընդհանրապես։ Դա բացատրվում է նրանով, որ յուրաքանչյուր աշխատավոր՝ հասարակության բոլոր հարստությունների կոլեկտիվ սեփականատեր է և, հետևապես, նրա աշխատանքը անբաժանելի է ամբողջ հասարակության աշխատանքից։

Կոմունիզմի կառուցման գործում ժողովրդի սոցիալական ակտիվության դերի աճն առաջին հերթին կոմունիստական կուսակցության՝ ժողովրդի առաջնորդի, ղեկավարի ու կազմակերպչի դերի բարձրացումն է, նրա գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործումը։ Այդ բացատրվում է ամենից առաջ նրանով, որ կուսակցությունը կոչված է մշակելու և կյանքում

կիրառելու այնպիսի քաղաքականություն, որը ճիշտ է արտացոլում օբյեկտիվ օրինաչափությունները և երկրի արմատական շահերը՝ զարգացման նոր պայմաններում։ Այդ նոր ուժով է դրսևորվում այժմ, երբ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումից հետո կուսակցությունը վերցրեց գիտության տվյալներին լիովին համապատասխան պրակտիկ միջոցառումներ հետևողականորեն մշակելու և իրականացնելու կայուն կուրս։

Կուսակցության դերի բարձրացումը պայմանավորված է նաև գիտական կոմունիզմի տեսության, նրա ստեղծագործական զարգացման ու պրոպագանդման աճով, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման և մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկները հաղթահարելու համար մղվող պայքարի անհրաժեշտությամբ։ Ժողովրդական մասսաների ստեղծագործական եռանդի հետագա զարգացման պարտադիր պայմանն է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «Մասսաներն անօգնական են, եթե նրանք բաժան-բաժան են, նրանք ուժեղ են, եթե միաձույլ են» (Երկեր, հատ. 26, էջ 417)։ Մասսաների միաձուլությունը, նրանց բազմակողմանի ակտիվությունն ու ստեղծագործությունը կերտվում են կուսակցության ճիշտ ղեկավարման միջոցով։ Կոմունիստական կուսակցությունը բոլոր ջանքերը գործադրում է, որպեսզի ապահովի առավել բարենպաստ պայմաններ սովետական յուրաքանչյուր մարդու գիտակցական ստեղծագործական հնարավորությունները դրսևորելու համար։

Մեծ Հոկտեմբերի առաջադեմ ազդեցությունը զգացվում է աշխարհի բոլոր մասերում։ Նրա գաղափարները պատմական ստեղծագործության են մղում աշխատավորների նորանոր խավեր։ Այդ գաղափարները նրանց համար ոչ միայն հեղափոխական ոգեշնչման աղբյուր, այլև նոր հասարակարգի հասնելու խորհրդանիշ են, հասարակարգ, դեպի որը տանում են պատմական առաջադիմության բոլոր ուղիները։





Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ. գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 26/X 1967 թ.։

ՎՖ 04231 Պատվեր 2313 Տիրաժ 9870 Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։